ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

84-8

8

ՕԳՈՍՏՈՍ

ԵՐԵՎԱՆ ● 1964

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8 ՕԳՈՍՏՈՍ · 1964

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 43-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

# Содержание







# ՎՃՌԱԿԱՆ ԲԵԿՈՒՄ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ

Սովետական մարդիկ հպարտության ու հիացմունքի կգացումով են հետադարձ հայացք գցում իրենց անցած ուղուն: Շատ բան է ստեղծված: Վեր են խոյացել նոր էլեկտրակայաններ, քիմիայի ու մետալուրգիայի նոր հսկաներ, հայտնաբերվել են նոր հզոր հանքավայրեր: Սքանչելի քաղաքներով ու ավաններով է կարդարվել հարազատ երկիրը: Այդ բոլորի մեջ մեծ է մեր շինարարների բաժինը, որոնք իրենց հայրենանվեր աշխատանքով արժանի ավանդ են մուծում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում:

Մեր արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ և երկաթուղային տրանսպորտում կատարած կապիտալ ներդրումների ծավալով Սովետական Միությունը մեծ չափով գերազանցել է ԱՄՆ-ին և կապիտալիստական մյուս երկըրներին: Բնակարանային շինարարության ծավալով ու տեմպերով մեր երկիրն աշխարհում գրավում է առաջին տեղը: Յուրաքանչյուր հազար բնակչի հաշվով մեզ մոտ երկու անգամ ավելի շատ բնակարան է կառուցվում, քան ԱՄՆ-ում ու Ֆրանսիայում և երկու անգամ ավելի, քան Անգլիայում ու Իտալիայում:

Դեպի կոմունիզմ կատարվող մեր առաջընթացի և սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման հաջողությունը մեծ չափով կախված է այն բանից, թե որքան կկարողանանք արագացնել, էժանացնել շինարարությունը, բարձրացնել նրա որակը, արդյունավետ ու խելացի կերպով օգտագործել կապիտալ ներդրումներն ու արտադրական ֆոնդերը, քիչ ծախսումներով առավելագույն արտադրանք ստանալ արտադրական կարողության մեկ միավորից:

Հայրենիքը պանծալի գործերով են շենացնում նաև Սովետական Հայաստանի շինարարները: Մեր ռեսպուբլիկան վեր է ածվել շինարարական մեծ հրապարակի: Խստաշունչ լեռներում ստեղծվել են գունավոր մետալուրգիայի և մեծ քիմիայի ժամանակակից ձեռնարկություններ, ջրապուրկ շրջաններում անց են կացվել ոռոգիչ ջրանցքներ, աճել են նոր սովխոզներ, անճանաչելիորեն փոխվել են ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը:

Միայն վերջին մեկուկես տարում ռեսպուբլիկայում շահագործման են հանձնըվել 532 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, դպրոցների, հիվանդանոցների, կուլտուր-լուսավորական հիմնարկների նոր շենքեր: Գործարկվել են ավելի քան 30 արդյունաբերական ձեռնարկություններ ու արտադրամասեր: Միայն կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով շահագործման է հանձնվել 378 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն: Բարելավվել են շինարարական աշխատանքների նաև մյուս ցուցանիշները՝ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, իջել ինքնարժեքը և կրճատվել այդ աշխատանքների տևողությունը:

Ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները գերակատարեցին բնակելի մակերեսը շահագործման հանձնելու 1964 թվականի առաջին կիսամյակի պլանը: Կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով շահագործման է հանձնված 144 հազար քառակուսի մետր բնակելի մակերես, պլանով նախատեսված 135,9 հազար քառակուսի մետրի փոխարեն. անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ դա ավելի է 28 հազար քառակուսի մետրով:

Բարձր գնահատելով շինարարների աշխատանքը, միաժամանակ պետք է նշել, որ ռեսպուբլիկայի կապիտալ շինարարության բնագավառներում կան մի շարք լուրջ թերություններ: Շինարարական-մոնտաժային աշխատանքների տեմպերը դեռևս անբավարար են:

1963 թվականին ռեսպուբլիկայում շինարարական-մոնտաժային աշխատանքների պլանը կատարվեց 95,1 տոկոսով: Շարունակում է լրջորեն ետ մնալ արդյունաբերական շինարարությունը: Արտադրական նշանակություն ունեցող օբյեկտների գծով 1963 թվականին կապիտալ ներդրումները յուրացվել են 88,1, այդ թվում շինմոնտաժային աշխատանքի գծով՝ 88,2 տոկոսով:

Չնայած այն բանին, որ 1963 թվականին կապալային աշխատանքների պլանը ամբողջ ռեսպուբլիկայում կատարվեց 100,5 տոկոսով, շինարարական ու մոնտաժային կազմակերպություններից շատերը թերակատարեցին իրենց տարեկան ծրագիրը: Այդ առաջին հերթին հետևանք է այն բանի, որ էական թերություններ կան շինարարական-մոնտաժային կազմակերպությունների աշխատանքում, իսկ պատվիրատուները ժամանակին չեն ապահովում տեխնիկական դոկումենտացիան, սարքավորումը, հատուկ նյութեղենն ու ֆինանսավորումը:

Առաջվա նման ռեսպուբլիկայի կապիտալ շինարարության ետ մնալու գլխավոր պատճառներից մեկն այն է, որ պետշինն ու շինարարության մինիստրությունը բավարար միջոցներ չեն ձեռնարկում շինարարական արտադրության ինդուստրացման և աշխատանքի կազմակերպման պրոգրեսիվ մեթոդների արմատավորման համար:

Ճիշտ է, վերջին տարիներս ռեսպուբլիկայի շինարարական կազմակերպությունները որոշակի հաջողություններ են ձեռք բերել շինարարական պրոցեսների ինդուստրացման գործում, որի շնորհիվ հնարավորություն է ստեղծվել կապիտալ ներդրումների և նոր կարողությունների գործարկման ամենամյա աճի համար: Այսպես, ռեսպուբլիկայի շինարարության մինիստրությունը 1954 թվականին ուներ 20 միլիոն, 1960 թվականին՝ 93 միլիոն, 1963 թվականին՝ 139 միլիոն, իսկ 1964 թվականին՝ 174,6 միլիոն ռուբլու բեռնվածություն: 1954 թվականին մինիստրությունը շահագործման է հանձնել մոտ 66 հազար քառ. մետր բնակելի տարածություն, 1960 թվականին՝ 205 հազար, 1963 թվականին՝ 385 հազար քառ. մետր: 1964 թվականին նախատեսված է շահագործման հանձնել 471 հազար քառ. մետր բնակելի տարածություն: Հավաքովի երկաթբետոնի մասսայական կիրառման շնորհիվ խիստ բարձրացան շինարարության տեմպերը և կրճատվեցին նրա ավարտման ժամկետները: Հավաքովի երկաթբետոնի թողարկումն ավելացնելու շնորհիվ շինարարական հրապարակներն ըստ էության վեր են ածվել մոնտաժային հրապարակների՝ շենքերի պատրաստի տարրերն ու մասերը հավաքելու համար: Այդ հնարավորություն է տալիս խիստ կրճատելու շինարարության տևողության ժամկետները:

Այժմ շինարարների կարևորագույն խնդիրն է՝ փոխարինել հնացած կոնստրուկցիաները ավելի պրոգրեսիվ ու կատարյալ կոնստրուկցիաներով, միաժամանակ կրճատելով գործող տիպային նախագծերի թիվը, բարձրացնելով հարմարությունների մակարդակը, ինչպես նաև ապահովելով շենքերի ավելի արտահայտիչ ու բազմազան ճարտարապետական ձևավորումը:



Եղած տեխնիկան և Միության բնակարանաշինարարական կոմբինատների աշխատանքի փորձը թույլ են տալիս բնակարանային կառուցման աշխատատար պրոցեսների մոտ 70 տոկոսը կատարել գործարաններում, իսկ շինարարական հրապարակներում միայն հավաքել պատրաստի, լիովին մշակված կոնստրուկցիաները: Այս պայմաններում խիստ անհանդուրժելի է, որ շինանյութերի արդյունաբերության զարգացման համար հատկացված միջոցները շինարարության մինիստրության մեղքով պարբերաբար չեն յուրացվում:

Շինարարության տեխնիկական պրոգրեսի համար մեծ դեր է խաղում քիմիական արդյունաբերությունը, որով պայմանավորված է այսօրվա և վաղվա շինարարության զարգացումը: Ռեսպուբլիկայի ժողտնտխորհը արդեն որոշ աշխատանք կատարել է այդ ուղղությամբ: Շինարարության տեխնիկական պրոգրեսը շինարարների մեծ բանակի, գիտահետազոտական ու նախագծային ինստիտուտների, ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկությունների անհետաձգելի խնդիրն ու պատվի գործն է:

Շինարարական կազմակերպություններն անբավարար աշխատանք են կատարում կառույցներում եղած մեքենաները, մեխանիզմներն ու տրանսպորտային միջոցներն արդյունավետ օգտագործելու համար: Այսպես, հաշվի առնելով երկու հերթափոխի աշխատանքը, էքսկավատորների օգտագործումը կազմում է 45 տոկոս, բուլդոզերներինը՝ 44,2, աշտարակային կռունկներինը՝ 43,4 տոկոս: Ռեսպուբլիկայում շինարարության մինիստրության ոչ մի տրեստ չի հասել հողային աշխատանքների կոմպլեքսային մեքենայացման պլանավորման մակարդակին: Շինարարական մեքենաների ու մեխանիզմների ոչ ռացիոնալ օգտագործման հետևանքով մեծ թվով բանվորներ զբաղվել են աշխատատար պրոցեսներով և կառույցներում առաջացել է աշխատուժի պակաս: 1963 թվականին հողային աշխատանքների 23 տոկոսը կատարվել է ձեռքով:

Շինարարության մեջ հավաքովի երկաթբետոնի, նոր տեսակի նյութերի ու կոնստրուկցիաների լայն կիրառմամբ մեծ չափով բարձրացան կառուցվող շենքերի ամրությունն ու դիմացկունությունը: Սակայն հաճախ արդյունաբերական ու բնակելի շենքերը, կուլտուր-կենցաղային օբյեկտները շահագործման են հանձնվում պակասություններով և թերավարտ վիճակում: Տեխնիկական պայմանների կոպիտ խախտման և խոտանի փաստեր կան № 6 տրեստի, «Հայքիմշինի», «Բաշարանշինի» և այլ կազմակերպությունների աշխատանքում:

Շինարարության որակը կարելի է բարձրացնել միայն այն դեպքում, եթե պարտիական կազմակերպությունները մշտապես ուշադրություն դարձնեն այդ կարևոր պետական գործի վրա: Պետք է բարձրացնել պահանջկոտությունը կառուցողների և շինանյութերի արդյունաբերության աշխատողների նկատմամբ, աշխատավոր լայն մասսաներին մասնակից դարձնել որակի վերահսկողությանը, անհանդուրժողական մթնոլորտ ստեղծել այն անձանց նկատմամբ, որոնք մեղավոր են խոտանի և շինարարական աշխատանքների ցածր որակի համար:

Մի քանի շինարարական տրեստների պարտիական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները դեռևս վատ են պայքարում չարաշահումների ու նյութական արժեքների հափշտակումների դեմ: Դրա հետևանքով կզա-

ի վնաս են կրել «Շրջարդշին», «Ախթալաշին», № 5 տրեստները և այլն:

Ռեսպուբլիկայի պետպլանը, պետշինը, ժողտնտխորհը, կոմունալ տնտեսության մինիստրությունը և մյուս կազմակերպություններն անթույլատրելի կերպով ձգձգեցին շինարարական աշխատանքի տիտղոսացանկի կազմումը, կապալային կազմակերպությունների բեռնվածության սահմանումը և կառույցների ապահովումը նախագծային-տեխնիկական դոկումենտացիայով ու ֆինանսավորմամբ: Շինարարական-մոնտաժային տրեստներն ու վարչությունները ինչպես հարկն է չնախապատրաստվեցին ձմեռային պայմաններում աշխատանքն ապահովելու համար: Դրա հետևանքով կապիտալ ներդրումների 1964 թվականի վեց ամսվա պլանը ամբողջ ռեսպուբլիկայում կատարված է 75, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 80, բնակարանային շինարարությանը՝ 88,9 տոկոսով:

Խոսելով բնակարանային շինարարության մասին, հարկ է նշել, որ շինարարական կազմակերպությունները և աշխատավորների դեպուտատների քաղաքային սովետները պետք է մեծ ուշադրություն նվիրեն կոոպերատիվ բնակարանային շինարարության զարգացմանը: Այդ հարցի վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների սովետի որոշումն արժանացել է աշխատավորների հավանությանը: Այդ որոշման համաձայն կոոպերատիվ հիմունքներով բնակարանները կառուցում են պետական շինարարական կապալային կազմակերպությունները՝ գործող տիպային նախագծերով և պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվող բնակելի տների համար սահմանված ժամկետներում: Նման տների կառուցումը մտցվում է պետական պլանի մեջ:

Աշխատավորների ներհոսը բնակարանային-շինարարական կոոպերատիվներն զգալիորեն ուժեղացել է: Կոոպերատիվ շինարարության ծավալի մեծացման կապակցությամբ քաղաքային սովետների գործկոմները պետք է ավելի օպերատիվ լուծեն հողամասերի ընտրության, շինարարական հրապարակների յուրացման, տեխնիկական դոկումենտացիայի և շատ այլ հարցեր: Սակայն պետական այդ կարևոր գործում լուրջ թերություններ կան: Երևանի քաղսովետը մինչև այժմ չի լուծել շատ կոոպերատիվ տների կառուցման հետ կապված հարցը, որոնք ընթացիկ տարում պետք է շահագործման հանձնվեն:

Շինարարության մինիստրության առաջին հերթի 5-րդ տրեստի (կառավարիչ ընկ. Դրամփյան) և «Ախթալաշին» տրեստի (կառավարիչ ընկ. Թանյան) մեղքով այս տարի ռեսպուբլիկայում ետ է մնում դպրոցական շինարարությունը: Դպրոցաշինարարությունը համաժողովրդական գործ է: Անհրաժեշտ է, որ պարտիական, սովետական ու արհմիութենական օրգանները այդ գործը հսկողության տակ առնեն, հարկավոր է ամեն ինչ անել, որ դպրոցներն ու մյուս մանկական հիմնարկները ժամանակին պատրաստ լինեն երեխաներին ընդունելու:

Վերջին ժամանակներս զգալիորեն բարձրացել է ռեսպուբլիկայի կառույցների պարտիական կազմակերպությունների մարտունակությունը, ուժեղացել է կոմունիստների ազդեցությունն արտադրության մեջ: Ամենուրեք նկատվում է ստեղծագործական նախաձեռնության աճ, զգացվում է ավելի մեծ հոգատարություն տնտեսական հարցերի նկատմամբ: Պարտիական ակտիվիստները, ագիտատորները, արտադրության առաջավորները ներկայումս ավելի շատ են անձնական օրինակներ տալիս: Անհրաժեշտ է ապահովել բոլոր կոմունիստների ավանգարդային դերը շինարարության մեջ:

Պարտիական կազմակերպությունները կոչված են բարձրացնելու շինարարության ղեկավարման մակարդակը, հաստատակամորեն բարելավելու կազմակերպչական աշխատանքը կառույցներում ու ձեռնարկություններում, մոբիլիզացնելու կոլեկտիվների ուժերը՝ կապիտալ շինարարության պլանը հաջողությամբ կատարելու համար: Ջանք չպետք է խնայել մինչև տարվա վերջը նախատեսված օբյեկտները գործարկելու համար:



ՀԿՊ Կենտկոմի նախագահությունը, քննարկելով կապիտալ շինարարության վիճակը ռեսպուբլիկայում, բացահայտեց եղած թերություններն ու դրանց պատճառները, կոնկրետ միջոցառումներ նշեց Հայկական ՍՍՌ 1964 թվականի կապիտալ շինարարության պլանի կատարումն ապահովելու համար:

Ռեսպուբլիկայի պետշինը, շինարարության մինիստրությունը, շինարարական և մոնտաժային տրեստներն ու վարչությունները տարվա մնացած ժամանակաշրջանում պետք է իրենց ջանքերը կենտրոնացնեն վճռական կառույցներում, կոնկրետ միջոցառումներ մշակեն ու իրականացնեն կառուցվող յուրաքանչյուր օբյեկտի գծով: Կատարել արտադրական կարողությունների, բնակելի տների և կուլտուր-կենցաղային օբյեկտների գործարկման 1964 թվականի առաջադրանքները —այս է շինարարների գլխավոր խնդիրը:

Այդ խնդրի հաջող լուծման համար առկա են բոլոր հնարավորությունները: Հարկ է միայն հմտորեն կազմակերպել գործը, ճիշտ բաշխել ուժերը, թույլ չտալ նյութատեխնիկական ռեսուրսների փոշիացում, հոգատար լինել մարդկանց նկատմամբ, բավարարել նրանց կուլտուր-կենցաղային պահանջմունքները:

ՍՍՌՄ վեցերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում տված իր զեկուցման մեջ անդրադառնալով կապիտալ շինարարության հարցին, ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասաց, որ պարտիական և պետական օրգաններն ու կազմակերպությունները պետք է «...ամենայն պատասխանատվությամբ ձեռնամուխ լինեն յուրաքանչյուր օբյեկտի պլանի կատարմանը, ավելի արագորեն գործարկեն և յուրացնեն նոր ձեռնարկությունների կարողությունները: Կոմունիստների, կոմերիտականների, այն բոլոր մարդկանց պատվի գործն է, որոնց աշխատանքից կախված է շինարարության պլանների կատարումը, ամեն ինչ անել պարտիայի և կառավարության կողմից առաջադրվող խնդիրները իրագործելու համար: Հարկավոր է ոչ թե որոնել պլանը չկատարելը արդարացնելու պատճառներ, այլ հաղթահարել խոչընդոտները և ապահովել կապիտալ շինարարության ծրագրի կատարումը»:

Տարակույս չկա, որ ռեսպուբլիկայի շինարարները կանեն այն ամենը, ինչ անհրաժեշտ է իրենց առջև ծառացած խնդիրները լուծելու համար: Նրանք դրանով իսկ իրենց արժանի ավանդը կմուծեն մեր երկրում կոմունիստական հասարակարգ կառուցելու գործում:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՊԱՅՔԱՐԸ ՍՈՑԻԱԼ-ՇՈՎԻՆԻԶՄԻ ԵՎ ՑԵՆՏՐԻԶՄԻ ԴԵՄ

Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Պատմական գիտությունների թեկնածու

1914 թվականի օգոստոսին բռնկված առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմը սկզբից ևեթ իր ոլորտի մեջ առավ աշխարհի գրեթե բոլոր խոշորագույն պետությունները։ Միլիոնավոր մարդիկ ուղարկվեցին ռազմաճակատ՝ հանուն իմպերիալիստական բուրժուազիայի շահերի իրար փոխադարձաբար բնաջնջելու։ Պատերազմի խրամատներում զոհվում էր մեծ մասամբ այդ երկրների երիտասարդությունը։ Ավերվում էին ճարտարապետության հնամյա հուշարձանները, պայթեցվում էին ֆաբրիկաներն ու գործարանները, հանքերն ու կամուրջները, ոտնատակ էին արվում արտերը, հրի ճարակ էին դառնում քաղաքներն ու գյուղերը։ Պատմության մեջ դեռ չէր եղել այդպիսի մեծ ծավալ ընդունած պատերազմ։ Դեռևս երբեք այնպիսի ցնցումներ չէին ապրել նրանք, ովքեր հավատում էին մարդկության առաջադիմության և հումանիզմի «անսասան» սկզբունքներին, համաշխարհային կուլտուրայի բարձր արժեքներին։

Սակայն բուրժուական աշխարհի «մեծ մտածողները» չկարողացան տեսնել այդ արհավիրքից փրկվելու ուղիները։ Այդ բանը տեսնելու համար հարկավոր էր գիտական-մարքսիստական վերլուծության ենթարկել պատերազմ հարուցող պատճառները, հարկավոր էր գիտենալ ո՛չ միայն այն, ինչ տեղի էր ունենում այսօր, այլև կարողանալ կանխատեսել վաղվա դեպքերը։

Պատերազմի խոր վերլուծությունը Վ. Ի. Լենինը տվեց իր մի շարք պատմական աշխատություններում։

Վ. Ի. Լենինը գիտականորեն ապացուցեց, որ պատերազմն առաջացել է կապիտալիստական երկրների անհաշտելի շահերի ու անտեսական քաղաքական անհամաչափ զարգացման հետևանքով՝ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի պայմաններում։ Հետագա իրադարձությունները լիովին հաստատեցին պատերազմի լենինյան վերլուծության գիտական հիմնավորվածությունը։

Պատերազմի առաջին իսկ օրերից II ինտերնացիոնալի սոցիալ-դեմոկրատական պարտիաներն անցան իրենց իմպերիալիստական կառավարությունների կողմը, կոխոտեցին միջազգային պրոլետարական համերաշխության դրոշը, դավաճանեցին բանվոր դասակարգի գործին և սկսեցին բացահայտորեն սոցիալ-շովինիզմ քարոզել։

1914 թվականի օգոստոսի 4-ին գերմանական սոցիալ-դեմոկրատները ռայխստագի նիստում քվեարկեցին իմպերիալիստական պատերազմը վարելու համար իրենց կառավարությանը վարկեր տրամադրելու օգտին։ Այդ նույն բանն արեցին սոցիալիստները Ֆրանսիայում և Բելգիայում, բանվորական պարտիան՝ Անգլիայում, մենշևիկներն ու էսեռները Ռուսաստանում և այլն։ II ինտերնացիոնալի ականավոր գործիչները՝ Մ. Սամբան, Ժ. Գեդը, Է. Վանդերվելդեն, մտան բուրժուական կառավարությունների կազմի մեջ։ II ինտերնացիոնալը խայտառակ կերպով վերջ տվեց իր գոյությանը։

II ինտերնացիոնալի պարտիաները, այդ թվում մենշևիկներն ու էսեռները, այլ վերաբերմունք չէին կարող ունենալ իմպերիալիստական պատերազմի նկատմամբ։ Այդ դիրքը տրամաբանորեն բխում էր նրանց օպորտունիստական բնույթից։ Օպորտունիզմը վերջիվերջո պետք է վերաճեր սոցիալ-շովինիզմի։ Եվ այն իսկապես վերաճեց դրան։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ Արևմտյան Եվրոպայում բուրժուական և ազգային ռևոլյուցիաների ավարտման և սոցիալիստական ռևոլյուցիաների սկզբնավորման դարաշրջանի օբյեկտիվ պայմաններն «առաջացրել և սնուցել էին օպորտունիզմը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 320)։

Ռուսաստանի մանրբուրժուական պարտիաները՝ մենշևիկներն ու էսեռները, իմպերիալիստական պատերազմի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցում հետևեցին իրենց արևմտաեվրոպական համախոհներին՝ II ինտերնացիոնալի օպորտունիստներին։ Նրանք անվերապահ անցան ռուսական իմպերիալիստական բուրժուազիայի կողմը և, քողարկվելով սոցիալիզմի դրոշով, սկսեցին «դասակարգային հաշտություն» քարոզել պրոլետարիատի և բուրժուազիայի միջև։ Նրանք ռուսական իմպերիալիստական բուրժուազիային ամեն կերպ օգնում էին՝ խաբելու բանվոր դասակարգին և նրանից թաքցնելու պատերազմի թալանչիական բնույթը։ Մենշևիկներն ու էսեռները ողջունեցին II ինտերնացիոնալի լիդերների մասնակցությունը բուրժուական կառավարություններում։ Մենշևիկյան և էսեռական մամուլը գովաբանում էր արևմտաեվրոպական սոցիալ-շովինիստներին, որոնք ամբողջապես համերաշխ էին գործում իրենց երկրների իմպերիալիստական բուրժուազիայի հետ։

Սոցիալ-դեմոկրատական պարտիաների մեծամասնության բռնած շովինիստական դիրքի հետևանքով բանվորական շարժումը պատերազմի հենց սկզբից ըստ էության արդեն գլխատվել էր։ Ուստի, զարմանալի չէ, որ պատերազմող տերությունների բուրժուազիան պլանավորում էր բանվոր դասակարգին ենթարկել իր գաղափարական և քաղաքական ազդեցությանը։

Վ. Ի. Լենինի ղեկավարած բոլշևիկյան պարտիան, ի տարբերություն II ինտերնացիոնալի պարտիաների, մինչև վերջ հավատարիմ մնաց պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ Բոլշևիկները հանդիսացան սոցիալ-շովինիզմի դեմ մղած պայքարի և ամբողջ աշխարհի աշխատավորության ինտերնացիոնալ համախմբման կազմակերպիչներն ու ներշնչողները։ Մասսաների մեջ տարած իրենց եռանդուն գործունեության շնորհիվ, նրանք կարողացան խանգարել բուրժուազիայի պլանների իրականացմանը և Ռուսաստանի բանվոր դասակարգին տարան գիտակից ու կազմակերպված ռևոլյուցիոն շարժման ուղիով։

Պատերազմի տարիներին բոլշևիկյան պարտիան իր ամբողջ գործունեության հիմքում դրել էր պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում Վ. Ի. Լենինի մշակած տեսությունն ու տակտիկան։

Երբ սկսվեց պատերազմը, Վ. Ի. Լենինը գտնվում էր Գալիցիայում (Պորոնինո)։ Այդտեղից էր նա ղեկավարում Ռուսաստանի պրոլետարիատի ռևոլյուցիոն ելույթները։ Հենց այդտեղ էլ Վլադիմիր Իլյիչը պատերազմի առաջին իսկ օրերից սկսեց աշխատել բոլշևիկյան պարտիայի կենտրոնական օրգան Սոցիալ-դեմոկրատ թերթը վերահրատարակելու ուղղությամբ։ Սակայն նրա այդ մտահղացումը չիրականացավ, որովհետև օգոստոսի սկզբներին նրան կալանեցին և նստեցրին Նովի Տարգի (Գալիցիա) բանտը։ Օգոստոսի երկրորդ կեսին Վ. Ի. Լենինին թույլատրեցին Ավստրո-Հունգարիայից մեկնել Շվեյցարիա, ուր նա ժամանեց դեկտեմբերի սկզբներին։

1914 թվականի սեպտեմբերի 5-ի երեկոյան Վլադիմիր Իլյիչը ժամանեց Բեռն և հաջորդ օրը հրավիրեց այդտեղ գտնվող բոլշևիկների խորհրդակցություն։ Այդտեղ նա հանդես եկավ «Ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիայի խնդիրները եվրոպական պատերազմում» զեկուցումով։

Այդ զեկուցման թեզիսները բոլշևիկյան պարտիայի Կենտկոմին հիմք ծառայեցին այն մանիֆեստի համար, որ գրեց Վ. Ի. Լենինը սեպտեմբերի վերջերին «Պատերազմը և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան» խորագրով։ Այդ մանիֆեստում Վ. Ի. Լենինը հստակ կերպով ձևակերպեց պարտիայի առաջիկա խնդիրները, այն է՝ նպաստել ցարական միապետության պարտությանը, իմպերիալիստական պատերազմը վերածել քաղաքացիական պատերազմի, անողոք պայքարել սոցիալ-շովինիզմի և նրա տարատեսակությունը հանդիսացող ցենտրիզմի դեմ, ստեղծել III Ինտերնացիոնալ։

Սոցիալ-շովինիզմի դեմ մղած սուր և անհաշտ պայքարում Վ. Ի. Լենինը և բոլշևիկները խորապես գիտակցում էին տպագիր օրգան ունենալու խոշորագույն նշանակությունը։ Ահա թե ինչու Վ. Ի. Լենինը Շվեյցարիայում ակտիվ կերպով ձեռնամուխ եղավ «դժվարագույն գործին»՝ բոլշևիկյան հրատարակությունների կազմակերպման այնքան հրատապ գործին։

1914 թվականի նոյեմբերի 1-ին, գրեթե մեկ տարվա ընդմիջումից հետո, Ժնևում լույս տեսավ Սոցիալ-դեմոկրատ թերթի № 33-ը, որտեղ հրապարակվեցին Վ. Ի. Լենինի գրած «Պատերազմը և Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիան» վերնագրով ՌՍԴԲՊ Կենտկոմի մանիֆեստը և «Սոցիալիստական ինտերնացիոնալի դրությունը և խնդիրները» հոդվածը։ Հենց այդ նույն համարում զետեղված էր բոլշևիկյան ֆրակցիայի պատասխանը բելգիական բանվորական պարտիայի ղեկավար, II Ինտերնացիոնալի նախագահ Էմիլ Վանդերվելդեի նամակին։ Վերջինս, լինելով թունդ սոցիալ-շովինիստ, մի հատուկ նամակով դիմել էր Պետական դումայի երկու սոցիալ դեմոկրատական ֆրակցիաներին, կոչ անելով նրանց աջակցել ցարական կառավարությանը՝ պայքարելու պրուսական յունկերության դեմ։

1914 թվականի սեպտեմբերի 30-ին ֆիննական Նեյվոլա գյուղում Պետական դումայի բոլշևիկյան ֆրակցիան քննարկեց և ընդունեց «Է. Վանդերվելդեին» պատասխանը, որը և հրապարակվեց Սոցիալ-դեմոկրատում ՌՍԴԲՊ Կենտկոմի ստորագրությամբ։

ՌՍԴԲՊ Կենտկոմը սոցիալ-շովինիստ Վանդերվելդեին ուղարկած իր պատասխանում ամենայն վճռականությամբ հայտարարում էր, որ Ռուսաստանի



պրոլետարիատը ոչ մի դեպքում չի կարող որևէ հաշտություն կնքել ցարական կառավարության հետ և առավել ևս որևէ աջակցություն ցույց տալ նրան։ «Այստեղ խոսք անգամ չի կարող լինել որևէ լոյալության մասին, ասվում էր այդ պատասխանում։— Ընդհակառակը, մենք մեր անհետաձգելի խնդիրն ենք համարում ամենաանհաշտ պայքար մղել նրա (ցարական կառավարության— Բ. Ս.) դեմ»։

Վանդերվելդեի նամակին պատասխան ուղարկեցին նաև մենշևիկ լիկվիդատորները։ Լիովին համերաշխ լինելով բելգիացի սոցիալիստ մինիստրի նամակի սոցիալ-շովինիստական ոգուն, մենշևիկները բացեիբաց գրում էին իրենց պատասխանում. «Մենք հայտարարում ենք Ձեզ, որ Ռուսաստանում մեր գործունեության մեջ մենք չենք հականերգործում պատերազմին» (Սոցիալ-դեմոկրատ, № 34, 1914 թ.)։

Պատերազմի պայմաններում բոլշևիկները զրկված էին համառուսաստանյան կոնֆերանս կամ համագումար հրավիրելու հնարավորությունից։ Ուստի որոշվեց պարտիայի հրատապ խնդիրները քննարկելու համար Շվեյցարիայում հրավիրել արտասահմանի բոլշևիկյան սեկցիաների կոնֆերանս։ Այդ կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1915 թվականի փետրվարին Բեռնում, խիստ կարևոր նշանակություն ունեցավ սոցիալ-շովինիզմի դեմ մղած պայքարում։ Կոնֆերանսի որոշումներում, որ գրել էր Վ. Ի. Լենինը, մատնանշվում էին իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու կոնկրետ ուղիները։ «Քաղաքացիական պատերազմը,— ասվում էր կոնֆերանսի բանաձևում,— դեպի որը կոչ է անում ռևոլյուցիոն սոցիալ-դեմոկրատիան ներկա դարաշրջանում, այդ մի կռիվ է, որ պրոլետարիատը զենքը ձեռքին մղում է ընդդեմ բուրժուազիայի՝ կապիտալիստական առաջավոր երկրներում կապիտալիստների դասակարգը ունեզրկելու համար, Ռուսաստանում դեմոկրատական ռևոլյուցիա (դեմոկրատական ռեսպուբլիկա, 8-ժամյա բանվորական օր, կալվածատիրական հողերի բռնագրավում) իրականացնելու, ընդհանրապես միապետական հետամնաց երկրներում ռեսպուբլիկա հաստատելու համար և այլն» (ՍՄԿՊ-ն բանաձևերում, 1953 թ., մ. 1, էջ 327)։

Կոնֆերանսը մերկացրեց բուրժուազիայի առաջ քաշած և ամեն երանգի սոցիալ-շովինիստների պաշտպանած՝ «հայրենիքի պաշտպանության» կեղծ լոզունգը։ Կոնֆերանսը մատնանշեց, որ հայրենիքի պաշտպանության, թշնամու հակահարձակմանը դիմադրելու, պաշտպանողական պատերազմ մղելու վերաբերյալ ֆրազները երկու կողմից էլ ներկայացնում էին ամենախայտառակ խաբեություն։

Կոնֆերանսն առանձնապես շեշտեց բոլշևիկյան պարտիայի հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին։ «Այժմ, ավելի քան երբևէ,— ասվում էր կոնֆերանսի բանաձևում,— ճշմարիտ են «կոմունիստական մանիֆեստի» խոսքերը, որ «բանվորները հայրենիք չունեն»։ Միայն բուրժուազիայի դեմ մղվող՝ պրոլետարիատի ինտերնացիոնալ պայքարը կարող է պաշտպանել նրա նվաճումները և ճնշված մասսաների համար դուռ բանալ դեպի լավագույն ապագան»։

Վերլուծելով իմպերիալիստական պատերազմի նկատմամբ միջազգային սոցիալ-դեմոկրատիայի դրսևորած վերաբերմունքը, Վ. Ի. Լենինը հանգեց այն եզրակացության, որ նրա մեջ գոյացել է երեք հոսանք՝ բացահայտ շովինիստական, ցենտրիստական և հետևողական ռևոլյուցիոն, ինտերնացիոնալ

հոսանք, որին գլխավորում է մեր պարտիան։ Վ. Ի. Լենինը սոցիալ-շովինիստական վերնախավին անվանեց «մի բուռ ծայրահեղ սրիկաներ», «դահիճներ, որոնք գտնվում էին միապետության և կոնտրռևոլյուցիոն բուրժուազիայի ծառայության մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 373—374)։

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ սոցիալ-շովինիզմը և օպորտունիզմը ունեն միևնույն տնտեսական հիմքը և միևնույն քաղաքական բովանդակությունը։ Սոցիալ-շովինիզմը ոչ այլ ինչ է, եթե ոչ ավարտուն օպորտունիզմ։ «Միևնույն քաղաքական գաղափարները։ Տակտիկայի միևնույն քաղաքական բովանդակությունը։ Սոցիալ-շովինիզմն ուղղակի շարունակությունն ու ավարտումն է միլլերանականության, բեռնշտայնականության, անգլիական բանվորական լիբերալ քաղաքականության, նրանց գումարն է, նրանց հանրագումարը, նրանց արդյունքը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 563)։

Սոցիալ-շովինիզմի դեմ մղած պայքարը Վ. Ի. Լենինը համարում էր բոլշևիկյան պարտիայի և միջազգային բանվորական շարժման մեջ գործող բոլոր ռևոլյուցիոն մարքսիստների առաջնահերթ խնդիրը։ Մասնավորապես, ամենագլխավոր խնդիրներից մեկն էր «հայրենիքի պաշտպանության» լոզունգի մերկացումը։ Դրա համար որպես տեսական հիմք ծառայեց լենինյան այն դրույթը, որ իմպերիալիստական պատերազմի պայմաններում դասակարգային պայքարը պետք է ավելի սրվի և ուժեղանա և ոչ թե մարի, կամ դադարի։ Այդ իսկ պատճառով յուրաքանչյուր ինտերնացիոնալիստ ռևոլյուցիոների սրբազան պարտքն է նպաստել «իր» իմպերիալիստական կառավարության պարտությանը, իմպերիալիստական պատերազմի վերածմանը քաղաքացիական պատերազմի։

«Պարտության» լոզունգը, ինչպես ասում էր Վ. Ի. Լենինը, ինչ-որ ինքնուրույն լոզունգ չէ։ Այն չի կարելի անջատել «քաղաքացիական պատերազմի» լոզունգից։ «Իր» իմպերիալիստական կառավարության պարտության լոզունգը Վ. Ի. Լենինն առաջ էր քաշում որպես ինտերնացիոնալ լոզունգ, որը հրամայաբար դրվում է բոլոր իմպերիալիստական տերությունների պրոլետարների առաջ։

Ամբողջ միջազգային բանվորական շարժման մեջ մեծ վտանգ էին ներկայացնում նաև ցենտրիստները, որոնց դեմ Վ. Ի. Լենինը անհաշտ պայքար էր մղում դեռևս պատերազմից շատ առաջ։ Ցենտրիզմի գլխավոր «տեսաբանը» Կաուցկին էր։ Ռուսաստանում նրա հետևորդներն էին՝ Տրոցկին, Մարտովը, Աքսելրոդը։ Ցենտրիզմը միջազգային օպորտունիզմի մի տարատեսակությունն էր։ Ցենտրիստները բացահայտ սոցիալ-շովինիստներից տարբերվում էին միայն նրանով, որ պրոլետարիատի նկատմամբ կատարած իրենց դավաճանությունն սքողում էին ուլտրա «ձախ», կեղծ-ռևոլյուցիոն ճոճուն ֆրազներով։ Խոսքով նրանք քննադատում էին սոցիալ-շովինիստներին, ձևանում էին օպոզիցիա սոցիալ-շովինիզմի նկատմամբ, ջատագովում էին ինտերնացիոնալիզմը, իսկ իրականում սոցիալ-շովինիստների հետ համընթաց էին գնում բանվոր դասակարգին խաբելու գործում, քարոզում էին «դասակարգային հաշտություն» երկրի ներսում և պայքար էին մղում ռևոլյուցիոն բանվորական շարժման դեմ։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ բանվորական շարժման համար ցենտրիզմը շատ ավելի վտանգավոր է, քան բացահայտ օպորտունիզմը։ Ուստի նա բոլոր ռևոլյուցիոն մարքսիստներին կոչ էր անում ամենավճռական պայքար մղել ցենտրիզմի դեմ։ Ցենտրիզմի գլխավոր տեսաբան



Կաուցկուն նա անվանեց մի մարդ, որը «մարքսիզմի պոռնկացման գործում ցույց է տվել իրեն որպես առաջնակարգ կեղծավոր ու վիրտուոզ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 321)։

Վ. Ի. Լենինը մինչև վերջ մերկացրեց ցենտրիստների կեղծ մարքսիզմը և «ռևոլյուցիոն» ֆրազները։ «III ինտերնացիոնալի խնդիրների մասին» հոդվածում Վ. Ի. Լենինը շատ հետաքրքրական մեջբերումներ է կատարում ֆրանսիական բուրժուական թերթերից, որոնք բավական դիպուկ բնութագրել էին ցենտրիստների քաղաքական դեմքը։ «Այդ Վանդերվելդեներն ունեն դեմքի ջղաձգումներ։ Ինչպես որ ջղաձգումով տառապողները չեն կարողանում երկու խոսք ասել առանց դեմքի մկանների տարօրինակ ցնցման, այնպես էլ վանդերվելդեները չեն կարող քաղաքական ելույթ ունենալ, առանց թութակի պես կրկնելու ինտերնացիոնալիզմ, սոցիալիզմ, բանվորների միջազգային համերաշխություն, պրոլետարիատի ռևոլյուցիա և այլ բառերը։ Թող կրկնեն, ինչքան սրտները կուզի, խորհրդավոր ֆորմուլներ, միայն թե նրանք օգնեին բանվորներին մոլորեցնելու և ծառայություն մատուցեին մեզ, կապիտալիստներիս, իմպերիալիստական պատերազմ մղելու և բանվորներին ստրկացնելու համար»։ Բերելով վերոհիշյալ սպանիչ բնութագիրը, որը սոցիալ-շովինիստներին լիովին մերկացնում է որպես իմպերիալիստական բուրժուազիայի սպասավորների, Վ. Ի. Լենինը նշում է. «Անգլիական ու ֆրանսիական բուրժուաները երբեմն շատ խելացի են լինում և գերազանցորեն գնահատում են «Բեռնի» ինտերնացիոնալի լակեյական դերը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 29, էջ 623)։

Վ. Ի. Լենինը ոչ պակաս վճռականությամբ մերկացրեց ռուսական ցենտրիստներին Տրոցկու գլխավորությամբ, որը իմպերիալիզմի, պատերազմի, հաշտության ու ռևոլյուցիայի բոլոր կարևորագույն հարցերում Լենինին հակադիր դիրքերի վրա էր կանգնած։ Տրոցկիստները առաջ էին քաշել «ո՛չ հաղթանակ, ո՛չ էլ պարտություն» լոզունգը, որն իրականում նշանակում էր հաշտություն ցարիզմի հետ։ Վ. Ի. Լենինը գտնում էր, որ այդ լոզունգի կողմնակիցները իմպերիալիստական կառավարությունների կողմնակիցներն են և պրոլետարական քաղաքականության թշնամիները։

Վ. Ի. Լենինը ո՛չ միայն զգուշացնում էր պարտիական աշխատողներին սոցիալ-շովինիստների հետ միավորվելու որևէ փորձնական հնարավորությունից, այլև ամենավճռական կերպով պահանջում էր բանվորական պարտիաներն անհապաղ ու անվերապահ կերպով անջատել օպորտունիստներից։ «Հաշտվողականությունը և միասնացումը,—գրում է Վ. Ի. Լենինը,—Ռուսաստանի բանվորական պարտիայի համար ամենավնասակար բանն է, ո՛չ միայն ապուշություն է, այլև պարտիայի կործանում» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 247)։ Վ. Ի. Լենինը բոլշևիկներին սովորեցնում էր միասնություն հաստատել միայն այն մարդկանց ու խմբերի հետ, որոնք հետևողական ռևոլյուցիոն ինտերնացիոնալիստական գիծ են վարում բանվորական շարժման մեջ։

Երբ Վ. Ի. Լենինն ամենախիստ կերպով դատապարտեց իմպերիալիստական պատերազմում «հայրենիքի պաշտպանության» լոզունգը, ամեն երանգի սոցիալ-շովինիստները շարանենգ կամպանիա սկսեցին Լենինի դեմ, նրան մեղադրելով «հակահայրենասիրության» մեջ։ Այս կապակցությամբ Վ. Ի. Լենինը 1916 թվականի դեկտեմբերին գրում էր Ինեսա Արմանդին. «Ահա իմ ճակատագիրը։ Մի մարտական կամպանիա մյուսի հետևից— ընդդեմ քաղաքական հիմարությունների, գռեհկությունների, օպորտունիզմի և այլն։

Եվ դա 1893 թվականից։ Եվ գռեհիկների ատելություն այդ պատճառով։ Դե, իսկ ես, այնուամենայնիվ, սույն ճակատագիրը չէի փոխի գռեհիկների հետ «հաշտությամբ»» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 35, էջ 276)։ Վ. Ի. Լենինը առաջարկում էր չսահմանափակվել սոցիալ-շովինիստների դեմ տեսական բանակռիվ մղելով, նրանց դավաճանական քաղաքականությունը մամուլում և ժողովներում մերկացնելով և այլն։ Նա վճռականորեն պահանջում էր սոցիալ-շովինիստների պարագլուխներին լիովին մեկուսացնել մասսաներից, զրկել նրանց ղեկավար պոստերից։

«Ինչպես բուրժուազիան չի մեռնի, մինչև նրան չտապալեն,— գրում էր Վ. Ի. Լենինը,— այնպես էլ այն հոսանքը, որը սնվում և պաշտպանվում է բուրժուազիայի կողմից, որն արտահայտում է բուրժուազիայի հետ դաշինքի մեջ մտած ինտելիգենտների փոքրիկ խմբի և բանվոր դասակարգի արիստոկրատիայի շահերը, չի մեռնի, եթե նրան «չսպանեն», այսինքն չտապալեն, չզրկեն ամեն մի ազդեցությունից՝ սոցիալիստական պրոլետարիատի նկատմամբ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 451)։

Հետևողական ռևոլյուցիոն պայքար մղելով սոցիալ-շովինիզմի և ցենտրիզմի դեմ, Վ. Ի. Լենինը դրա հետ մեկտեղ մեծ աշխատանք կատարեց բոլոր ինտերնացիոնալիստական ուժերին համախմբելու և նոր, իսկական ռևոլյուցիոն ինտերնացիոնալ ստեղծելու համար։

Ինտերնացիոնալիստական ուժերի համախմբմանը մեծապես նպաստեց 1915 թվականի սեպտեմբերին գումարված Ցիմերվալդյան կոնֆերանսը։ Այնտեղ բավական սուր պայքար ծավալվեց Վ. Ի. Լենինի գլխավորած ռևոլյուցիոն ինտերնացիոնալիստների և աջ կաուցկիականների միջև, որոնք քանակապես գերակշռում էին կոնֆերանսում։ Կաուցկիականները ժխտում էին II Ինտերնացիոնալի կրախի առկայությունը և հանդես էին գալիս լենինյան այն դրույթի դեմ, որը պահանջում էր կապերը լիովին խզել սոցիալ-շովինիստների հետ։ Այնուամենայնիվ մանիֆեստի քննարկման ժամանակ Վ. Ի. Լենինին հաջողվեց մի շարք մարքսիստական կետեր մտցնել նրա մեջ։ Այսպես, օրինակ, մանիֆեստը համաշխարհային պատերազմը որակեց որպես իմպերիալիստական, դատապարտեց II Ինտերնացիոնալի լիդերների մասնակցությունը բուրժուական կառավարություններում և Եվրոպայի պրոլետարիատին կոչ արեց հանդես գալ պատերազմի դեմ, հանուն դեմոկրատական հաշտության։ Վ. Ի. Լենինը քննադատում էր կոնֆերանսի մանիֆեստը անհետևողականության համար, բայց և այնպես նա և նրա կողմնակիցները քվեարկեցին դրա օգտին, քանի որ «այդ մանիֆեստը մի քայլ առաջ է անում դեպի իսկական պայքարը օպորտունիզմի դեմ, դեպի կապերի խզումն ու պառակտումը նրա հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 21, էջ 492)։

Այդ կոնֆերանսի ամենակարևոր արդյունքներից մեկն այն էր, որ Վ. Ի. Լենինին հաջողվեց ստեղծել ռևոլյուցիոն ինտերնացիոնալիստական ուժերի միջազգային միավորում՝ ձախ ցիմերվալդականների խումբը։

Ցիմերվալդյան կոնֆերանսից հետո Վ. Ի. Լենինը ավելի ուժեղ պայքար ծավալեց սոցիալ-շովինիզմի և ցենտրիզմի դեմ։ Պատերազմի դեմ ծավալված ինտերնացիոնալ շարժումն սկսեց ավելի արագ թափով զարգանալ։ Այդ մասին է վկայում սոցիալիստների Կինտալի միջազգային կոնֆերանսը, որը Վ. Ի. Լենինն անվանել է երկրորդ ցիմերվալդյան կոնֆերանս։ Այն գումարվեց 1916



թվականի ապրիլին։ Իսկ մինչ այդ գրեթե բոլոր երկրներում ստեղծվել էին ինտերնացիոնալիստների ձախ խմբեր։

Կոնֆերանսում ընդունված մանիֆեստը, չնայած այն բանին, որ նա չէր բովանդակում Վ. Ի. Լենինի հիմնական լոզունգները պատերազմի հարցում, այնուամենայնիվ մի քայլ էր դեպի բոլոր ինտերնացիոնալիստների համախմբումը։ Գնահատելով Կինտալի կոնֆերանսի և նրա ընդունած մանիֆեստի նշանակությունը, Վ. Ի. Լենինը գրում էր. «Ընդհանուր առմամբ դա, այնուամենայնիվ, չնայած բազմաթիվ թերություններին, մի քայլ է դեպի խզումը սոցիալ-հայրենասերների հետ» (II Լենինյան ժողովածու, էջ 267)։

Ռևոլյուցիոն, ինտերնացիոնալիստական ուժերի համախմբման, սոցիալ-դավաճանների դեմ անողոք պայքար կազմակերպելու ուղղությամբ Վ. Ի. Լենինի եռանդուն գործունեությունը, պատերազմի, հաշտության և ռևոլյուցիայի հարցերի վերաբերյալ նրա մեծարժեք աշխատությունները վիթխարի նշանակություն ունեցան պրոլետարիատի ռևոլյուցիոն դաստիարակության գործում։ Պատերազմի տարիներին Վ. Ի. Լենինի գաղափարական ազդեցության ներքո աճեցին ու ամրապնդվեցին բանվորական շարժման այն ռևոլյուցիոն ինտերնացիոնալիստական խմբերը, որոնք հետագայում հիմք դրեցին կոմունիստական պարտիաներին Գերմանիայում, Ֆրանսիայում, Իտալիայում, Անգլիայում և մյուս երկրներում։ «...Լենինի երկերը, բոլշևիկյան պարտիայի փաստաթղթերը,— գրում է Պալմիրո Տոլյատին,— որոնվում էին, ձեռքից-ձեռք էին անցնում ամենուրեք, դրանց սպասում էին բուռն անհամբերությամբ, դրանք թարգմանում էին, դրանք կարդում էին կոլեկտիվ կերպով, քննարկում էին, պարզաբանում, տարածում գործարաններում»։

Միջազգային պրոլետարիատի մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի ռևոլյուցիոն գործունեությունն առանձնապես մեծ նշանակություն ունեցավ Ռուսաստանի համար։ Ղեկավարվելով լենինյան դրույթներով ու տակտիկական լոզունգներով՝ Ռուսաստանի բոլշևիկները բարձր պարզեցին ինտերնացիոնալիզմի և պրոլետարական ռևոլյուցիայի դրոշը։ Նրանք լուրջ պարտության մատնեցին ռուսական սոցիալ-շովինիստներին՝ մենշևիկներին, էսեռներին և տրոցկիստներին, Ռուսաստանի բանվորական շարժումը ազատեցին օպորտունիզմի գաղափարական ազդեցությունից, որը հսկայական նշանակություն ունեցավ 1917 թվականի հոկտեմբերին տարած հաղթանակի համար։

Վ. Ի. Լենինը հետագայում հետևյալ կերպ է գնահատել սոցիալ-շովինիզմի դեմ մղած պայքարի նշանակությունը Ռուսաստանի համար։ «Իսկ եթե բոլշևիզմը կարողացավ հաղթել 1917—1920 թվականներին, ապա այդ հաղթանակի հիմնական պատճառներից մեկն այն է, որ բոլշևիզմը դեռևս 1914 թվականի վերջերից անխնա մերկացնում էր սոցիալ-շովինիզմի և «կաուցկիականության»... նողկալիությունը, գարշելիությունը և ստորությունը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 15)։

Մեր օրերում մարքս-լենինյան պարտիաները, կենսագործելով Իլյիչի պատգամները, անդուլ պայքար են մղում ամեն գույնի ռևիզիոնիստների ու պառակտիչների դեմ հանուն միջազգային բանվորական շարժման միասնության։ Համաշխարհային բուրժուազիան և ռեակցիայի ուժերը այժմ ոչ պակաս մոլեգնությամբ են պայքարում կոմունիստական շարժման դեմ, որպիսի մոլեգնությամբ նրանք իր ժամանակին պայքարում էին Վ. Ի. Լենինի և բոլշևիկների դեմ։ Այդ հանգամանքն ամբողջ աշխարհի կոմունիստներին պարտավո-

րեցնում է ավելի սերտ համախմբել իրենց շարքերը, պայքարել ներկայիս պառակտիչների քայքայիչ գործունեության դեմ՝ խաղաղության և սոցիալիզմի լիակատար հաղթանակն ամբողջ աշխարհում ապահովելու համար։

Սակայն կոմունիստների ուժերի միասնությանը մեր օրերում սպառնում է Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարների քայքայիչ ու պառակտիչ գործունեությունը։ Նրանք ամեն կերպ ճգնում են սասանել ու պառակտել միջազգային կոմունիստական շարժումը։ Չին ղեկավարներն իրենց հակամարքսիստական և պառակտիչ գործունեությունը սքողում են կեղծ մարքսիստական, ուլտրաձախ ֆրազներով։ Մերթ-մերթ նրանց շրթներից դուրս են գալիս միասնության և համախմբման, իմպերիալիզմի դեմ պայքարելու վերաբերյալ «ձախ» լոզունգներ։ Այդ տեսակետից նրանք ընթանում են տրոցկիստների հետքերով, որոնք, ինչպես բազմիցս նշել է Վ. Ի. Լենինը, ամենից ավելի շատ էին բղավում միասնության մասին, իսկ իրականում իրենց պահում էին բոլոր ֆրակցիոներներից ավելի վատ ձևով։ Եվ, պատահական չէ, որ կոմունիստական ու բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի խորհրդակցությունում ՉԿՊ-ի ներկայացուցիչներն ամեն կերպ դիմադրում էին միջազգային կոմունիստական շարժման շարքերում ֆրակցիոն գործունեություն չթույլատրելու վերաբերյալ խորհրդակցության հայտարարության մեջ հիշատակություն անելու դեմ։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է կոմունիստական և բանվորական պարտիաների միջազգային կարգապահության ամրապնդման անհրաժեշտությունը։ Ընդ որում նա պարզաբանում էր, որ կոմունիստների միջազգային կարգապահությունն ինչ-որ մեկի հրամանները կուրորեն կատարելը չէ, այլ ամբողջ միջազգային կոմունիստական շարժման հանդեպ իր ունեցած ինտերնացիոնալ պարտքի գիտակից ու հոժարակամ կատարելը։ Բայց չին ղեկավարներն ամբողջովին ոտնահարում են լենինյան այդ սկզբունքը։

ՉԿՊ ղեկավարներն իրենց պառակտիչ գործունեությամբ հակադրվում են համաշխարհային կոմունիստական շարժման գլխավոր գծին։ Ուստի և ամբողջ աշխարհի կոմունիստական պարտիաների առջև ամենայն սրությամբ ծառացած է մարքսիզմ-լենինիզմը չին ռևիզիոնիստների աղավաղումներից պաշտպանելու խնդիրը։ Այդ խնդրի լուծման ասպարեզում, միջազգային կոմունիստական շարժման սերտ համախմբման համար մղած պայքարում ՍՄԿՊ-ն աղնվորեն և անբասիր կերպով կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը ամբողջ աշխարհի կոմունիստական շարժման հանդեպ։ «Համաշխարհային կոմունիզմի շարքերի միասնությունը,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— մեր պարտիայի սրբության սրբոցն է, և մենք մեր ուժերը չենք խնայի այն ամրապնդելու համար»։

---

# ԱԶԳԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄՆ ՈՒ ՄԵՐՁԵՑՈՒՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆ Է*

Մ. ՄԵԼԻՔՅԱՆ



Ազգային հարաբերությունների զարգացումը հասարակության կոմունիստական վերափոխման կարևոր կողմերից մեկն է և հենց դրանով է բացատրվում նրա շուրջն առաջացած լայն հետաքրքրությունը. վերջին երեք տարում միայն ՍՍՌՄ-ում հրապարակվել են ազգային հարցին նվիրված մոտ 400 գիրք և ամսագրային հոդված։ Դրանց ճնշող մեծամասնությունը քննարկում է սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում ազգային հարաբերությունների և բուն իսկ ազգերի, որպես մարդկանց պատմական ընդհանրությունների, զարգացման օրինաչափությունները։ Հարցի բոլոր հետազոտողները հանգում են այն եզրակացության, որ ազգերը, կազմավորվելով կապիտալիստական հասարակարգում, գոյություն ունեն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ամբողջ շրջանում և կանհետանան միայն համաշխարհային մասշտաբով կոմունիզմի վերջնական հաղթանակից հետո։ Միահամուռ է նաև այն կարծիքը, որ սոցիալիստական հասարակարգում ազգերը ենթարկվում են արմատական վերափոխման, և նրանց զարգացման օրինաչափությունն արտահայտվում է երկու փոխպայմանավորված տենդենցների՝ ծաղկման և մերձեցման տենդենցների գործողության մեջ։ Այս եզրակացությունները լիովին համընկնում են ՍՄԿՊ ծրագրում ազգային հարաբերությունների զարգացման բնագավառում առաջադրված հիմնական դրույթների հետ։

Սակայն մի հարցում վերջին շրջանում դրսևորվել է որոշ տարակարծություն։ Դա սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում ազգային հատկանիշների ըմբռնման հարցն է։ Հետազոտողների ճնշող մեծամասնությունն այն կարծիքին է, որ ազգային հատկանիշները, կամ որ նույնն է՝ ազգային տարբերությունները սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ամբողջ շրջանում պահպանվում են և միաժամանակ լուրջ փոփոխություններ են կրում. նրանք գնալով մերձենում, ավելի ու ավելի ընդհանուր կողմեր են ձեռք բերում, սակայն դեռևս չեն կորցնում իրենց նշանակությունը որպես ազգի բնորոշ կողմեր։ Այդ տեսակետն արտահայտված է ինչպես ՍՄԿՊ ծրագրում, այնպես էլ Մ. Դ. Կամարիի, Մ. Ս. Ջունուսովի, Դ. Ի. Չեսնոկովի, Յու. Դ. Դեշերիևի, Մ. Վ. Չեկալինի, Վ. Ալեքսեևի, Պ. Կապիրինի և շատ ուրիշների աշխատություններում։

---

* Հրապարակելով սույն հոդվածը, խմբագրությունն առաջիկայում կանդրադառնա այս հարցին։

Դրա կողքին առանձին հեղինակներ այն կարծիքն են արտահայտում, որ
արդեն սոցիալիզմի կառուցման պրոցեսում ազգային մի շարք բնորոշ հատ-
կանիշներ՝ տնտեսական կյանքի, տերիտորիայի և հոգեբանական կազմի
ընդհանրությունները «մարում» են, վերանում, որ «Սովետական սոցիա-
լիստական պետության այժմյան ազգերի մոտ ամբողջապես պահպանվել է
միայն ազգային լեզվի ընդհանրությունը, որն, անկասկած, գոյություն կու-
նենա դեռևս շատ երկար ժամանակ»: Այս տեսակետը, որի հիմնական դրույթ-
ները հարցադրման ձևով արտահայտվել են «Вопросы истории» ամսագրի
1961 թ. 12-րդ համարում, սոցիալիզմի ժամանակ ազգային տարբերություն-
ները հանգեցնում է սոսկ լեզվի տարբերության, իսկ մյուս հատկանիշների
մերձեցումը դիտում որպես դրանց արդեն իսկ ավարտված համաձուլում:
Նման ըմբռնմանն ընդհուպ մոտենում է միութենական ռեսպուբլիկաների
ապազգայնացման մասին Պ. Գ. Սեմյոնովի տեսակետը (տե՛ս «Советское
государство и право», № 12, 1961):

«Լենինյան ուղիով» ամսագրում Ա. Եղիազարյանի՝ մտքերի փոխանա-
կության կարգով հրապարակված հոդվածը (տե՛ս № 9, 1963) նպատակ էր
դնում բացահայտել վերջին տեսակետի անհամապատասխանությունն իրական
կյանքին, հիմնավորելով այն միտքը, որ ազգային հատկանիշները, չնայած
նրանց կրած փոփոխություններին, սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին
անցման շրջանում պահպանվում ու կարևոր դեր են խաղում:

Առարկող հոդվածով հանդես եկած Հ. Աղաջանյանը (տե՛ս «Լենինյան
ուղիով № 3, 1964) իր վրա վերցրեց ազգի երեք հատկանիշների մարման
նշված դրույթների հիմնավորումը, քանի որ, ինչպես ինքն է նշում, դրանց
հեղինակը «սահմանափակվել է սոսկ ընդհանուր հարցադրումով»:

Կարիք չկա կրկնելու Հ. Աղաջանյանի փաստարկումները, մանավանդ,
եթե նկատի ունենանք, որ դրանք ապացուցում են ոչ թե նրա թեզերը, այլ
ճիշտ հակառակը, այն, որ «սոցիալիստական ազգերը գոյություն ունեն իրենց
ազգային տարբերություններով» (տե՛ս հոդվածի վերջը): Սակայն նրա հիմ-
նական հարցադրումներն, օգտագործելով իր իսկ արտահայտությունը, «հիմ-
նովին առարկելու» անհրաժեշտություն են ծնում:

Մի ժամանակ տիրապետող էր այն կարծիքը, թե ազգի մարքսիստական
ըմբռնումը կապված է սոսկ Ստալինի անվան հետ, որ մարքսիզմ-լենինիզմի
կլասիկներն արտահայտել են առանձին մտքեր, բայց չեն տվել ազգի ըմբռնու-
մը, բուրժուական և սոցիալիստական ազգերի հասկացությունը: Հ. Աղաջան-
յանը նույն միտքն է պաշտպանում... ձևականորեն քննադատելով Ստալինին:
Հոդվածի սկզբում նա, համաձայնելով Ա. Եղիազարյանի հետ, գրում է. «Որ
ազգի 4 հատկանիշների գաղափարը դեռևս մինչև Ստալինը պաշտպանել են
Լենինը և նրա համախոհները՝ կասկածից դուրս է» («Լենինյան ուղիով», № 3,
1964, էջ 106): Ասված է պարզ և որոշակի: Բայց ահա մի քանի տող հետո
Հ. Աղաջանյանը 180 աստիճան շրջադարձ է կատարում և հայտարարում.
«Այսպիսով, բուրժուական ազգի հատկանիշների ֆորմուլան պատկանում է Ստա-
լինին. պաշտպանել այդ հատկանիշներն իրենց ամբողջության մեջ, պարզա-
պես նշանակում է պաշտպանել ստալինյան ֆորմուլան» (նույն տեղում):

Տարօրինա՜կ տրամաբանություն: Եթե դրանով ղեկավարվենք, ապա
պետք է հրաժարվենք մարքսիզմի մի շարք հիմնական դրույթներից, որովհետև



դրանց մասին խոսել է Ստալինը և նկատի չունենանք, որ դրանց մասին Ստա-
լինից շատ առաջ խոսել են մարքսիզմի կլասիկները:

Մենք չենք ուզում չարաշահել ընթերցողների համբերությունը և կրկնել
ո՛չ մարքսիզմի կլասիկների ասույթները, ո՛չ էլ Ստ. Շահումյանի հայտնի
բնութագրումը, որի մեջ Ստալինի «Մարքսիզմը և ազգային հարցը» աշխա-
տությունը գրվելուց 7 տարի առաջ որոշակիորեն նշված է ազգի հատկանիշ-
ների ամբողջությունը: Բայց, քանի որ Հ. Աղաջանյանը ժխտում է ազգի հատ-
կանիշների ամբողջությունն ընդհանրապես, հռչակելով այն «ստալինյան ֆոր-
մուլա», կարիք կա, ըստ երևույթին, անդրադառնալու ազգի մարքսիստական
ըմբռնման հարցին:

Ազգը, ինչպես և մարդկանց մյուս պատմական ընդհանրությունները,
բարդ հասարակական երևույթ է: Նա հանդես է գալիս մարդկության զարգաց-
ման մի որոշակի շրջանում (կապիտալիզմի ծագման ժամանակ): Նրա պատ-
մական հիմքն ազգությունն է (ռուսերեն՝ народность, կամ Հ. Աղաջանյանի
արտահայտությամբ՝ ժողովուրդը), որին հատուկ են և՛ լեզվական, և՛ տերի-
տորիալ, և՛ հոգեբանական ընդհանրությունը:

Ազգային ընդհանրությունն ունի երկու փոխկապակցված կողմեր: Մի
կողմից, նա սոցիալ-տնտեսական, հոգևոր երևույթ է և բնութագրվում է տի-
րապետող արտադրական հարաբերություններով, սոցիալական (դասակարգա-
յին) կազմով, քաղաքական կարգով և հոգևոր կերպարով (գաղափարախոսու-
թյամբ, բարոյական, գեղագիտական և այլ ըմբռնումներով): Մյուս կողմից,
նա բնական-պատմական երևույթ է և բնութագրվում է ընդհանուր լեզվով,
տերիտորիալ-տնտեսական կապերի ընդհանրությամբ, հոգեբանական կազմի
ընդհանրությամբ, քիչ թե շատ ընդհանուր ծագումով:

Ինչպես ցույց են տվել մարքսիզմի կլասիկները, սոցիալ-տնտեսական և
հոգևոր կյանքի կապիտալիստական ընդհանրությունն ազգության բնական-
պատմական կողմերը միավորում է ամբողջության մեջ, այն դարձնում ժա-
մանակակից ազգ, այսինքն՝ բնութագրում որպես բուրժուական, կամ, ինչպես
Վ. Ի. Լենինն էր ասում, կապիտալիստական ազգ:

Հասարակության սոցիալիստական վերափոխումը հանգեցնում է ազգի
սոցիալ-տնտեսական և հոգևոր բնույթի փոփոխմանը: Նշանակում է սոցիա-
լիստական հասարակարգում ազգերն ընդունում են սոցիալիստական բնույթ
կամ, որ նույնն է, բուրժուական ազգերը վերափոխվում են սոցիալիստական
ազգերի:

Ազգերի զարգացման այս օրինաչափությունը նշել են դեռևս Կ. Մարքսն
ու Ֆ. Էնգելսը: Դրանք շատ հայտնի դրույթներ են, սակայն 30-ական թվա-
կաններից սկսած ճիշտ չէին մեկնաբանվում, որովհետև տիրապետող էր այն
կարծիքը, թե ազգերի սոցիալիստական վերափոխման հարցն առաջ է քաշել
Ստալինը:

«Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» մեջ Կ. Մարքսն ու Ֆ. Էնգել-
սը ուղղակի նշում են, որ պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության
նվաճումը նրա բարձրացումն է «ազգի առաջատար դասակարգի դրությանը»,
նրա կազմավորումն է «որպես ազգ»: Սա հենց պրոլետարական, այսինքն՝
սոցիալիստական ազգի գաղափարն է: Ընդամին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը
նշում են, որ սոցիալիստական հասարակարգում անհետանում են ո՛չ թե ազ-
գերը, այլ ազգերի կղզիացածությունն ու հակադրությունը, քանի որ «ինչ չա-

փով որ ոչնչացվելու է մի անհատի շահագործումը մյուսի կողմից, այն չափով էլ ոչնչացվելու է մի ազգի շահագործումը մյուսի կողմից։

Ազգերի ներսում եղած դասակարգերի անտագոնիզմի հետ միասին կվերանան նաև թշնամական հարաբերությունները ազգերի միջև» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր երկու հատորով, հ. 1, էջ 34)։

Ուրեմն, աներկբա է, որ Մարքսն ու Էնգելսը Ստալինից ավելի քան կես դար առաջ խոսել են սոցիալիզմի ժամանակ ազգերի պահպանման և նրանց սոցիալիստական վերափոխման մասին, դրա հիմքը տեսնելով ազգերի սոցիալական և հոգևոր կյանքի արմատական վերափոխման մեջ։ Նույնը նկատի ուներ Վ. Ի. Լենինը, երբ դեռևս 1916 թվականին գործածում էր «սոցիալիստական ազգ» արտահայտությունը։

Իր «Ազգային հարցը և լենինիզմը» հոդվածում Ստալինն ըստ էության կրկնեց այս դրույթները, առանց, սակայն, նշելու, որ իրենից առաջ մարքսիզմի կլասիկներն արդեն կանխատեսել են այդ։ Ընդսմին նա թույլ տվեց այնպիսի երկիմաստ արտահայտություններ, ինչպես «բուրժուական ազգերի փլատակների վրա նոր, սոցիալիստական ազգերի կազմավորում», «հին ազգերի լիկվիդացում» և այլն։ Նման բան կարելի էր ասել միայն այն դեպքում, եթե բուրժուական ազգը բաղկացած լիներ սոսկ բուրժուաներից ու կալվածատերերից, այնինչ, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «ազգ նշանակում է՝ բուրժուազիա պրոլետարիատի հետ միասին» (Երկեր, հ. 29, էջ 198)։ Ընդ որում աշխատավորները բուրժուական ազգի 9/10 մասն են կազմում։ Այդ դեպքում ինչպես կարելի է խոսել այդ ազգի «փլատակների» մասին։ Ճիշտ կլիներ խոսել ազգի բուրժուական բնույթի վերափոխման մասին։

Կյանքը ցույց տվեց մարքսիզմ-լենինիզմի կլասիկների կանխատեսման ճշմարտությունը։ Սոցիալիզմի կառուցման ընթացքում ազգերը ոչ թե «փլատակների» վերածվեցին, «լիկվիդացվեցին», այլ վերափոխվեց նրանց սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքը։ Ռուսները, ուկրաինացիները, վրացիները, հայերը և մյուս ազգերը չվերացան, չփոխարինվեցին այլ ազգերով, այլ, պահպանելով ու զարգացնելով իրենց բնական-պատմական ընդհանրությունները, դարձան ավելի միաձույլ, ավելի բարձր զարգացած ազգեր։ Ավելին, սոցիալիզմի կառուցման շնորհիվ մի շարք ազգություններ կոնսոլիդացվեցին որպես սոցիալիստական ազգեր, շրջանցելով ազգի բուրժուական աստիճանը (միջինասիական ազգերը)։

Այս բոլորից հետևում է, որ ազգի հատկանիշների մարման տեսակետը հակասում է իրական կյանքին։

Մի կարևոր կողմ ևս։ Այդ տեսակետի կողմնակիցները, խոսելով սոցիալիստական ազգերի մասին, նկատի ունեն միայն և միայն Սովետական Միության ազգերը, լռելյայն անցնելով այն փաստի կողքով, որ սոցիալիստական ազգեր գոյություն ունեն նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մյուս երկրներում։ Ընդ որում որոշ երկրներում սոցիալիստական և բուրժուական ազգերի հակադրությունը չափազանց ակնառու է։ Ո՞րն է, օրինակ, գերմանական սոցիալիստական և բուրժուական ազգերի տարբերությունը։ Այն, որ Արևմտյան Գերմանիայում տնտեսական ընդհանրության հիմքը կապիտալիստական արտադրական հարաբերություններն են, սոցիալական կազմը բնորոշվում է հակադիր դասակարգերի առկայությամբ, քաղաքական կարգը բուրժուական է, հոգևոր կերպարի մեջ տիրապետող են բուրժուական գաղա-



փարախոսությունն ու բարոյականությունը, բուրժուազիայի ձգտումներն ու գաղափարները։ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում տնտեսական ընդհանրության հիմքը սոցիալիստական արտադրական հարաբերություններն են, սոցիալական կազմը բնորոշվում է անտագոնիստական դասակարգերի բացակայությամբ, քաղաքական կարգը սոցիալիստական է, տիրապետող են պրոլետարական գաղափարախոսությունն ու բարոյականությունը։ Կարելի՞ է արդյոք ասել, որ գերմանական սոցիալիստական ազգը բնորոշվում է միայն լեզվական ընդհանրությամբ, որ նրա մյուս հատկանիշներն արդեն մարում են։ Իհարկե, ոչ, որովհետև այդ կլինի անհեթեթություն։ Այն, ինչպես և մյուս սոցիալիստական ազգերն, ունի և՛ տերիտորիայի, և՛ տնտեսական կյանքի, և՛ հոգեբանական կազմի, և՛, այս կամ այն չափով, էթնիկական ընդհանրություն։

Ուրեմն, դուրս է գալիս, որ այդ հատկանիշները մարում են միայն ՍՍՌՄ կազմում գտնվող ազգերի մոտ։ Դուրս է գալիս, որ սոցիալիզմի սիստեմի մյուս ազգերն ունեն բոլոր հատկանիշները, իսկ ՍՍՌՄ-ում այդ հատկանիշները վերանում են, ստեղծվում է սոսկ տարբեր լեզուներով խոսող մարդկանց ընդհանրություն։ Սա ո՛չ միայն չի համապատասխանում իրականությանը, այլև, ինչպես վերջում ցույց կտանք, քաղաքական տեսակետից վտանգավոր երևակայություն է։

Սոցիալիզմի կառուցման ընթացքում ՍՍՌՄ-ում կազմավորվել է մարդկանց նոր պատմական ընդհանրություն՝ սովետական ժողովուրդը։ Դա նոր տիպի ընդհանրություն է, որի նմանը պատմությանը նախկինում հայտնի չի եղել։ Դա տարբեր ազգերին պատկանող, այսինքն՝ տարբեր լեզուներով խոսող, տնտեսական կյանքի, տերիտորիայի, հոգեբանական կազմի, կուլտուրայի և այս կամ այն չափով էթնիկական ընդհանրությամբ կապված մարդկային խմբերի միավորումն է սոցիալ-տնտեսական ու հոգևոր կյանքի ընդհանրությամբ, որին աստիճանաբար միանալու են բոլոր սոցիալիստական ազգերը։ Դա բազմազգ, ինտերնացիոնալ միավորում է, որի մեջ օրգանապես զուգակցվում են ազգայինն ու միջազգայինը, ուր գոյություն ունի սոցիալ-քաղաքական շահերի ու ձգտումների, գաղափարական ու բարոյական ըմբռնումների միասնություն։ Այդ միասնությունը հնարավորություն է տալիս ապահովել նրա մեջ մտնող բազմաթիվ ազգերի ո՛չ միայն համերաշխությունը, եղբայրական բարեկամությունը, այլև նրանց առանձնահատուկ գծերի, նրանց հատկանիշների օրըստօրե աճող մերձեցումը։

Արդյոք այս բոլորի հիման վրա կարելի՞ է համաձայնել այն պնդման հետ, թե իբր այժմ սովետական ազգերը տարբերվում են միայն լեզուներով, որ նրանց բնական-պատմական հատկանիշներն արդեն մարել են։

Սկսենք լեզվի հարցից։ Ազգային լեզուն, որպես մարդկանց հաղորդակցության միջոց, պայմանավորված է այդ լեզվով խոսող մարդկանց տնտեսական, տերիտորիալ, կուլտուրական, կենցաղային և այլ կապերով։ Առանց այս հիմքի տվյալ ազգային լեզուն շատ արագ փոխարինվում է մի այլ ազգային լեզվով։ Դրա վճռական ապացույցը որևէ ազգի զանգվածի մեջ ապրող ազգային փոքրամասնություններն են, որոնք տնտեսապես կապվելով տվյալ ազգի անդամների հետ, ապրելով մի տերիտորիայում, ունենալով միասնական կենցաղային, կուլտուրական և այլ կապեր և, այս կամ այն չափով էթնիկապես միավորվելով (խառն ամուսնություններ), մի քանի սերնդի ընթաց-

քում ասիմիլացվում են, կորցնում իրենց մայրենի լեզուն։ Սա օրինաչափ բնական պրոցես է, որը տեղի է ունենում յուրաքանչյուր խոշոր արդյունաբերական կամ կուլտուրական կենտրոնում, ուր տարբեր ազգերի ներկայացուցիչներ ձուլվում են տվյալ կենտրոնի հիմնական բնակչությունը կազմող ազգի մեջ։

Այդ երևույթը, ինչպես բազմիցս նշել է Վ. Ի. Լենինը, բնորոշ է արդեն հասուն և սոցիալիստական փոխարկման նախօրյակին գտնվող կապիտալիզմին։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ ԱՄՆ-ը մի աղաց է, որը միախառնում ու ձուլում է այնտեղ գաղթած բոլոր ազգերի ներկայացուցիչներին, որ նույնը տեղի է ունենում ամեն մի խոշոր քաղաքում՝ Փարիզում, Լոնդոնում և այլուր։ Եվ սա միանգամայն օրինաչափ է։ Բայց մի՞թե դրա հիման վրա կարելի է պնդել, թե կապիտալիզմի ժամանակ եվրոպական ազգերը, օրինակ, անգլիացիները, գերմանացիները, ֆրանսիացիները, շվեդները, իտալացիները, իռլանդացիները և այլն ասիմիլացվում են մյուս ազգերի մեջ, վերանում որպես ինքնուրույն ազգեր։ Ոչ մի դեպքում։ Եվ Վ. Ի. Լենինը նշում էր հենց այն, որ այդ ազգերի որոշակի հատվածներ ձուլվում, ասիմիլացվում են իրենց մայր երկրից դուրս այն ժամանակ, երբ կորցնում են տնտեսական, տերիտորիալ, կուլտուրական և այլ կապերը մայր ազգի հետ, բայց իրենց երկրում նրանք իրենք են ասիմիլացնում ուրիշ ազգերի հատվածներին։

Համանման պրոցես ընթանում է նաև մեր երկրում։ Ազգերի հատվածներն իրենց ազգային տերիտորիայից դուրս, եթե նրանք չեն կազմում զգալի կոմպակտ ամբողջություն, ըստ էության տեղում ապրող մյուս ազգերից տարբերվում են միայն լեզվով ու հոգեբանությամբ և դա էլ արագ կորցնում ու ասիմիլացվում են՝ ոմանք ավելի, ոմանք պակաս չափով։ Ինչպես ցույց ենք տվել մի հոդվածում (տե՛ս «Լենինյան ուղիով», № 2, 1964), սոցիալիզմի պայմաններում դա միանգամայն կամավոր, մասնակի և քիչ թե շատ փոխադարձ ասիմիլյացիա, ձուլում է։ Բայց այդ նշանակո՞ւմ է, որ մեր երկրի ազգերը՝ ռուսները, ուկրաինացիները, վրացիները, մոլդավանները, ադրբեջանցիները, ուզբեկները, հայերը և այլն իրենց հիմնական զանգվածով ասիմիլացվում են։ Նրանք ոչ թե ասիմիլացվում, ձուլվում են, այլ խիստ արագ աճում են։ Ըստ մարդահամարների տվյալների սովետական իշխանության տարիներին այդ աճը 21—85 տոկոս է կազմում։

Օրինական հարց է ծագում. եթե այդ ազգերը տարբերվեին սոսկ լեզունեrով, նրանք կաճեի՞ն, թե կնվազեին։ Իհարկե, կնվազեին։

Մեր երկրի ժողովուրդների ազգային ընդհանրության աննախընթաց զարգացումն ու ծաղկումը, նրանց հետագա կոնսոլիդացումը որպես ազգեր, ինչպես և նրանց անխախտ մերձեցումը մեր պարտիայի լենինյան ազգային քաղաքականության խոշորագույն հաղթանակն է։ Մինչև սոցիալիստական կարգերի հաստատումը մեր երկրի մի շարք ազգություններ աստիճանաբար ասիմիլացվում ու վերանում էին (բաշկիրները, բուրյաթները, յակուտները և ուրիշներ)։ Միայն սոցիալիզմը նրանց տվեց ազգային զարգացման անկաշկանդ հնարավորություններ հենց նրանով, որ տվեց ազգային պետականություն, ազգային տնտեսական ու կուլտուրական կյանք ստեղծելու հնարավորություն, միասնական տերիտորիայի վրա համախմբվելու և կոնսոլիդացվելու հնարավորություն։

Այսպիսով, ակնհայտ է, որ սոցիալիզմի պայմաններում ազգային հատ-



կանիշների գոյությունը կասկածի տակ դնելու ոչ մի հիմք չկա։ Սակայն ոչ պակաս խոշոր սխալ կլիներ ժխտել սոցիալիզմի հետևանքով այդ հատկանիշների մեջ կատարված փոփոխությունները, նրանց «մոդիֆիկացիան»։ Սոցիալիզմի պայմաններում այդ հատկանիշները զարգանում, ծաղկում և միաժամանակ մոտենում են. սա է նրանց զարգացման հիմնական օրինաչափությունը։

Քննարկենք տվյալ ազգի անդամների միջև գոյություն ունեցող տնտեսական կապի հարցը։ Կապիտալիզմի ժամանակ այդ կապն ստեղծվում է բուրժուական արտադրական հարաբերությունների հիման վրա և, ինչպես Վ. Ի. Լենինն է նշել, արտահայտվում է միևնույն լեզվով խոսող արտադրողի և սպառողի սերտ կապի, մի լեզվով խոսող մարդկանցով բնակեցված տերիտորիաները մի պետության մեջ միավորելու, ազգային շուկայի ստեղծման մեջ։ Այսպիսով, ազգի տնտեսական կյանքի ընդհանրության բնորոշ գիծը տվյալ տերիտորիայի վրա ապրող և մի լեզվով խոսող մարդկանց տնտեսական սերտ կապն է։ Այդ կապն ստեղծվում է արդեն կապիտալիզմի ժամանակ։ Իսկ սոցիալիզմի, այսինքն՝ արտադրողական ուժերի զարգացման տեսակետից ավելի բարձր հասարակարգի պայմաններում այդ կապը թուլանո՞ւմ է, թե զարգանում, ամրանում։ Անկասկած, իրականությունից տեղյակ ոչ մի մարդ չի պնդի, թե այդ կապերը թուլանում են։ Այդ դեպքում ինչո՞ւ առանձին հեղինակներ խոսում են ազգային տնտեսական կապի մարման, այսինքն՝ թուլացման, անհետացման, վերացման մասին։ Ըստ երևույթին այդ հեղինակները մի ինչ-որ վատ բան են տեսնում տնտեսական կապերը սոցիալիզմի ժամանակ ազգային կապեր դիտելու մեջ և տեսնում են միայն ընդհանուրը, միութենականը, ժխտելով առանձինը, ազգայինը, որի ընդհանրացումն է միութենական տնտեսական կապը։

Երևույթի նման բաժանումը ճիշտ չէ։ Այն, ինչ մեր երկրում հանդես է գալիս որպես ազգային, միաժամանակ նաև միջազգային է, միութենական, մյուս կողմից էլ միութենականը դրսևորվում է ազգայինի մեջ, նրա միջոցով։ Սովետական Միության բնակչության տնտեսական սերտ կապը միաժամանակ և տվյալ լեզվով խոսող ու որոշակի ազգային միավորման մեջ ապրող մարդկանց տնտեսական սերտ կապն է միմյանց հետ։ Ոչ ոք չի կարող ժխտել մեր ազգային ռեսպուբլիկաների տնտեսական ընդհանրությունը, տնտեսական ամբողջություն լինելը։

Սոցիալիզմի ժամանակ տնտեսական կյանքի ընդհանրությունը նոր, ավելի բարձր հիմքեր ունի. այն զուրկ է ներքին և արտաքին անտագոնիզմից (սոցիալիզմի սիստեմի շրջանակներում), որովհետև հասարակական արտադրությունն ուղեկցվում է հանրային սպառումով, հետևաբար ազգայինն ու միջազգայինը տնտեսության մեջ ոչ թե հակադրվում են, այլ օրգանապես զուգորդվում։ Նշանակում է տնտեսական կյանքի ընդհանրությունը հանդես է գալիս որպես տնտեսական կապակցվածություն և՛ տվյալ առանձինի (ազգի) անդամների համար, և՛ ընդհանուրի (միության, սոցիալիզմի ողջ սիստեմի) համար։

Ուրեմն, սոցիալիզմի և կոմունիզմի ժամանակ էլ քանի դեռ ազգերը պահպանվում են, նույն լեզվով խոսող և միասնական տերիտորիայի վրա ապրող մարդկանց տնտեսական կապը մնում է որպես ազգի գոյության պայման և դրա հետ միասին այն ավելի ու ավելի համընդհանրական կողմեր է ձեռք բերում։ Ազգերի տնտեսական կյանքի զարգացում և նրանց մերձեցում, ազգա-

յինի ու միջազգայինի ավելի ու ավելի սերտ զուգակցում— այս է կոմունիզմի օրինաչափությունը։ Դրա համար էլ ՍՄԿՊ ծրագիրը նշում է, որ սոցիալիզմից կոմունիզմին անցման ժամանակաշրջանում պարտիան իր առաջ խնդիր է դնում «տնտեսական ասպարեզում այսուհետև էլ վարել սովետական ռեսպուբլիկաների տնտեսության համակողմանի զարգացման գիծ. ապահովել արտադրության ռացիոնալ տեղաբաշխում և բնական հարստությունների պլանաչափ շահագործում, կատարելագործել ռեսպուբլիկաների միջև աշխատանքի սոցիալիստական բաժանումը, միավորելով և համաձայնեցնելով նրանց աշխատանքային ջանքերը, ճիշտ զուգակցելով ամբողջ պետության շահերը յուրաքանչյուր ռեսպուբլիկայի շահերի հետ» (ՍՄԿՊ ծրագիրը, Հայպետհրատ, 1961, էջ 136—137)։

Թվում է, թե հետագա մեկնաբանություններն արդեն ավելորդ են։

Անցնենք տերիտորիայի ընդհանրության հատկանիշին։ Այդ ընդհանրության արմատները շատ խորն են. կան ժողովուրդներ, որոնք տվյալ որոշակի տերիտորիայի վրա կոմպակտ զանգվածով ապրում են դարեր և հազարամյակներ։ Ուրեմն դա, մի կողմից, բնական-պատմական երևույթ է, որը հանդես է գալիս բուրժուական ազգի կազմավորումից շատ առաջ։ Մյուս կողմից, ամեն մի հասարակական-տնտեսական ֆորմացիայում տերիտորիայի ընդհանրությունը տարբեր սոցիալ-տնտեսական բնույթ է ստանում։ Կապիտալիզմի ժամանակ ազգային տերիտորիան, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, որպես կանոն միավորվում է ազգային բուրժուական պետության սահմաններում, որի ներսում նա տիրապետող դասակարգերի մասնավոր սեփականությունն է։ Այսպիսով, տերիտորիան կապիտալիզմի ժամանակ իր պատմական բնույթով և ըստ բնակվածության համազգային է, իսկ ըստ կոնկրետ պատկանելության՝ մասնավոր։ Իսկ բազմազգ բուրժուական պետության մեջ, ինչպես, օրինակ, նախկին ռուսական կայսրությունում, տերիտորիան սոսկ մի ազգի՝ տիրապետող ազգի իշխող դասակարգերի պետական սեփականությունն էր։ Մյուս ազգերը այդ պետության մեջ օտարածիններ էին հռչակված, իսկ նրանց ազգային տերիտորիաները մասնատված էին ցարական վարչական միավորումների միջև։ Ուրեմն կարելի է ասել, որ բուրժուական հասարակարգում այլ ազգի տիրապետության տակ գտնվող ազգերի ինչպես քաղաքական, այնպես էլ տնտեսական ու տերիտորիալ ընդհանրությունն արհեստականորեն սահմանափակված է։

Սոցիալիզմի ժամանակ տերիտորիան չի կորցնում իր ազգային բնույթը, քանի որ ազգերի հիմնական զանգվածներն ապրում են իրենց պատմական տերիտորիայի վրա։ Ավելին, սոցիալիզմը հնարավորություն է ստեղծում մի ամբողջության մեջ պետականորեն միավորելու ազգի նախկինում մասնատված տերիտորիան։ Հիշենք թեկուզ միջինասիական ազգերի տերիտորիաների ճշգրտումը, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Մոլդավիայի տերիտորիաների վերամիավորումը, լեհական հողերի վերամիավորումը։ Ինչո՞ւ հեռու գնանք. ՍՍՌՄ-ում ազգային պետականության միավորումների գոյությունը սոցիալիզմի պայմաններում ազգերի տերիտորիալ ընդհանրության պահպանման և զարգացման ամենազորեղ ապացույցն է։ Հ. Աղաջանյանի դատողությունները այս հարցի շուրջը հիմնավոր չեն, իսկ նրա այն հայտարարությունը, թե ՍՍՌՄ-ում տերիտորիան «չի բաժանվում ըստ ազգությունների, այլ կազմում է նրանց անբաժանելի սեփականությունը», ճիշտ չէ։ ՍՍՌՄ տերիտորիան և՛



ընդհանուր է, և՛ ազգային։ Ընդ որում Հ. Աղաջանյանը «մոռացել է» այն կարևոր հանգամանքը, որ մեր երկիրը Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միություն է, նրանց կամավոր միավորումը, որ կա ՍՍՌՄ կոնստիտուցիա և, որ ՍՍՌՄ կազմի մեջ մտնող յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկա իրավունք ունի տերիտորիապես դուրս գալու Միությունից, որ նրա տերիտորիան առանց նրա համաձայնության փոփոխել չի կարելի։

Մյուս կողմից, տերիտորիան մասնավոր սեփականությունից վերածվել է համաժողովրդական սեփականության և դարձել է համամիութենական տերիտորիա, որի ներսում պետական սահմանները կորցրել են իրենց նախկին մեկուսացնող-անջատող բնույթը։ Նրանք որոշվում են ազգերի փոխադարձ համաձայնությամբ, ելնելով տնտեսական, կուլտուրական, ինչպես և էթնիկական նպատակահարմարությունից։

Այսպիսով, սոցիալիզմին և սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանին բնորոշ է ոչ թե ազգի տերիտորիալ ընդհանրության մարում, վերացում, այլ տերիտորիայի սոցիալ-տնտեսական բնույթի վերափոխման հիման վրա ազգայինի և միջազգայինի (միութենականի) օրգանական զուգակցում, ինտերնացիոնալ պետականության ամրապնդման հետ միասին ազգային պետականության ձևերի հետագա կատարելագործում։

ՍՍՌՄ-ում ազգային ռեսպուբլիկաների միջև տերիտորիալ անանցանելի պատնեշներ չկան։ Ավելին, տնտեսական կապերի հետագա միասնականացումը, սակավաբնակ տերիտորիաների (Սիբիր, Ղազախստան) ինտերնացիոնալ յուրացումը, կադրերի փոխանակությունը ռեսպուբլիկաների բնակչության ազգային կազմի որոշ փոփոխությունների է հանգեցնում։ Սակայն այդ փոփոխություններն այնքան զգալի չեն, որ հիմք տան խոսելու միութենական ռեսպուբլիկաների «ապազգայնացման» մասին, ինչպես այդ անում է Պ. Գ. Սեմյոնովը (տե՛ս «Советское государство и право», № 12, 1961)։ Ինչպես նշել է Ն. Ս. Խրուշչովը, համաշխարհային մասշտաբով կոմունիզմի հաղթանակից հետո պետական սահմանները կմահանան, սակայն որոշ ժամանակ դեռ կմնան ազգագրական սահմանները, որոնք «կարձանագրեն այս կամ այն ժողովրդի կամ ազգության պատմականորեն կազմավորված տեղաբաշխումը» («Мир без оружия—мир без войны», հատ. 1, էջ 181)։

Սոցիալիստական ազգերի տնտեսական կյանքի և տերիտորիայի ընդհանրության հատկանիշների մարման թեզի պաշտպանի դերում հանդես եկող Հ. Աղաջանյանն իր հոդվածի մեջ պնդում է նաև հակառակը. «Սովետական ազգերն ունեն իրենց տերիտորիան և տնտեսական կյանքը։ Սրանք կազմում են Սովետական Միության տերիտորիայի և տնտեսական կյանքի ընդհանրության անբաժանելի մասերը, որոնք ունեն իրենց ազգային առանձնահատկությունները,— գրում է նա (տե՛ս, նշված հոդվածը, էջ 109)։ Հոդվածից կարելի է բերել բազմաթիվ պնդումներ, որոնք նրա հիմնական թեզի հակառակն են ապացուցում։ Սա հետևանք է, ըստ երևույթին, այն բանի, որ և՛ Հ. Աղաջանյանը, և՛ սոցիալիստական ազգերի հատկանիշների մարման տեսակետի մյուս բոլոր կողմնակիցներն այդ հատկանիշների սոցիալ-տնտեսական բնույթի փոփոխությունը, նրանց մերձեցումը նույնացնում են մարման, անհետացման հետ։ Բայց այդ արտառոց տրամաբանություն է։ Եթե այդպես տրամաբանենք հետևողականորեն, ապա պետք է հայտարարենք, որ սովետական ազգերի լեզուներն էլ են «մարել», չէ՞ որ առաջ նրանք սպասարկում էին հակամարտ

դասակարգերին, իրար էին կապում կապիտալիստներին ու բանվորներին՝ բուրժուական կուլտուրայի արտահայտման միջոց էին, իսկ այժմ իրար են կապում միայն աշխատավորներին, սոցիալիստական կուլտուրայի արտահայտման միջոց են և այլն: Նույն տրամաբանությամբ պետք է ասել, որ ազգերն էլ «մարել», վերացել են, որովհետև նրանք լուրջ փոփոխության են ենթարկվել:

Այս նույն վերացական, իրականությունից չբխող տրամաբանությամբ է դրվում նաև ազգերի հոգեբանական կազմի (հոգեկան կերտվածքի) հարցը: Շատ հեղինակների նման Հ. Աղաջանյանն էլ հոգեբանական կազմը նույնացնում է հոգևոր կերպարի հետ: Այնինչ սրանք, թեև շատ սերտ առնչվող, սակայն տարբեր բաներ են:

Հոգևոր կերպարն, ինչպես արդեն նշել ենք, իր մեջ ներառնում է ամբողջ հասարակական գիտակցությունը՝ քաղաքական, բարոյական և այլ ըմբռնումները, գաղափարախոսությունը: Այն՝ իր ամբողջության մեջ որոշվում է տիրապետող արտադրական հարաբերություններով և դրա համար էլ բուրժուական հասարակության մեջ անտագոնիստական բնույթ ունի: Բուրժուական ազգերի հոգևոր կերպարը բնութագրվում է այդ հակադրությամբ (երկու ազգ միևնույն ազգի մեջ, երկու կուլտուրա՝ յուրաքանչյուր ազգային կուլտուրայի մեջ, բուրժուական և պրոլետարական բարոյականություն, բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ և այլն):

Սոցիալիզմի ժամանակ սոցիալ-տնտեսական վերափոխումների հետևանքով ազգի հոգևոր կերպարը ձեռք է բերում միասնություն, այն բնութագրվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմով, կոմունիստական բարոյականությամբ, գիտական-մատերիալիստական աշխարհայացքով, միասնական քաղաքական հայացքներով և այլն: Հակամարտության հաղթահարումը հանգեցնում է բոլոր ազգերի ընդհանրական հոգևոր կերպարի՝ քաղաքական, բարոյական և այլ միասնական ըմբռնումների ու ձգտումների, միասնական սոցիալիստական կուլտուրայի և կենցաղի ընդհանրական գծերի ստեղծման:

Սովետական բոլոր մարդկանց հոգևոր կերպարն իր հիմնական կողմերով արդեն միասնական է: Սակայն դրա կողքին կամ, ավելի ճիշտ, դրա հետ միասին ամեն մի սոցիալիստական ազգի կուլտուրան ու կենցաղը որոշ յուրահատկություններ ունեն: Դա արտահայտվում է և՛ լեզվի կառուցվածքի մեջ, և՛ գրականության, կերպարվեստի, ճարտարապետության ոճային ու այլ յուրահատկությունների մեջ (կոլորիտի, մեղեդիների յուրահատկության և այլն), և՛ կենցաղային սովորույթների ու տրադիցիաների մեջ: Իհարկե, կուլտուրայի ու կենցաղի էությունը միասնական է, բայց այն ազգային է դառնում հենց այդ յուրահատկությունների շնորհիվ: Հայկական և ադրբեջանական երաժշտությունը, օրինակ, իրար շատ մոտ են, բայց նրանցից յուրաքանչյուրն ունի իր յուրատիպությունը, որով մենք նրանց տարբերում ենք: Հայկական ճարտարապետությունը շատ ընդհանուր գծեր ունի մյուս ազգերի ճարտարապետության հետ, բայց և ունի իր ոճական յուրահատկությունը, որով հենց այն հայկական է և ոչ այլ: Ահա այս յուրահատկությունների դրսևորման ամբողջությունն է կազմում հոգեբանական կազմը, որն ստեղծվում է երկարատև պատմական զարգացման ընթացքում և ամեն մի ֆորմացիայում այս կամ այն չափով փոփոխվում՝ տնտեսական, տերիտորիալ, հոգևոր գործոնների փոփոխման հիման վրա: Ընդ որում հոգեբանական կազմի որոշ բաղադրիչներ՝ կենցաղային սովորույթները, բարքերը և տրադիցիաները փոփոխվում են համե-



մատաբար արագ, իսկ կուլտուրայի յուրատիպությունը պահպանվում է և դեռ կպահպանվի, քանի պահպանվում են ազգերը:

Սակայն հոգեբանական կազմի, ինչպես և ազգի մյուս հատկանիշների պահպանումը սոցիալիզմի ժամանակ ամենևին էլ չի նշանակում նրանց հետագա մեկուսացում, տարբերությունների խորացում: Ճիշտ հակառակը. նրանք գնալով ավելի ու ավելի են մերձենում, տարբեր ազգերի կուլտուրաների և՛ ոճի, և՛ ձևերի մեջ ավելի ու ավելի շատ ընդհանրական կողմեր են առաջանում: Դրա համար էլ մի ազգի կուլտուրան մյուսի համար այլևս օտարոտի, խորթ չի թվում, այլ ընկալվում է որպես հարազատ: Դրան նպաստում է միասնական կենցաղի, միասնական սովորույթների ու տրադիցիաների ստեղծումը: Ինչպես նշում է ՍՄԿՊ ծրագիրը, «Սոցիալիստական ազգերի զարգացման պատմական փորձը ցույց է տալիս, որ ազգային ձևերը չեն քարանում, այլ կերպարանափոխվում, կատարելագործվում և մերձենում են միմյանց, ազատվելով հնացած այն ամենից, ինչը հակասում է կյանքի նոր պայմաններին» և, այնուհետև. «պաշտպանելով յուրաքանչյուր ժողովրդի առաջադիմական տրադիցիաները, դրանք դարձնելով սովետական բոլոր մարդկանց սեփականությունը, պարտիան ըստ ամենայնի կզարգացնի կոմունիզմ կառուցողների նոր, բոլոր ազգերի համար միասնական ռևոլյուցիոն տրադիցիաներ»:

Ամփոփենք: Սոցիալիզմի ժամանակ ազգերի զարգացման վերլուծությունն ակնհայտ է դարձնում ազգային հատկանիշների մարման տեսակետի վաղաժամությունը: Ազգերը հեռավոր ապագայում կձուլվեն, դեպի այդ է տանում զարգացման ընդհանրական տենդենցը, ազգերի կյանքի բոլոր կողմերի միասնականացման ծայր առած պրոցեսը: Սակայն այն, ինչ այժմ հեռավոր հնարավորություն է, չի կարելի ներկայացնել որպես իրականություն: Տեսականորեն այդ դիալեկտիկան ձևականորեն կիրառելու արդյունք է, իրականության ոչ ճիշտ ընդհանրացում, որը նրա հեղինակների կամքից անկախ, զենք է տալիս սոցիալիզմի թշնամիների ձեռքը: Սոցիալիզմի թշնամիները, աղավաղելով մեր իրականությունը, այժմ ճգնում են ապացուցել, որ ՍՍՌՄ-ում ազգերը զուրկ են տնտեսական, տերիտորիալ, քաղաքական ինքնուրույնությունից, որ ՍՍՌՄ-ում «ազգայինը չկա, կա ինտերնացիոնալիզմը միայն»:

Մեր պարտիայի լենինյան ազգային քաղաքականության կիրառման կարևորագույն արդյունքներից մեկը, սոցիալիզմի կառուցման կարևորագույն հետևանքներից մեկն ազգերի և ազգային կյանքի ազատ, անկաշկանդ զարգացումն ու ազգերի աննախընթաց մերձեցումն է, ազգերի կյանքի բոլոր կողմերի ծաղկումն ու նրանց ինտերնացիոնալ միասնության հետագա ամրապնդումը: Ինչպես նշում է Ն. Ս. Խրուշչովը, սոցիալիզմի պայմաններում տեղի է ունենում յուրաքանչյուր ազգի բուռն և համակողմանի զարգացում, ընդլայնվում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների իրավունքները, և, մյուս կողմից, պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի տակ տեղի է ունենում սոցիալիստական ազգերի ավելի ու ավելի մերձեցում, ուժեղանում է նրանց փոխազդեցությունն ու փոխհարստացումը: Ո՛չ թե ազգային կյանքի կարևորագույն կողմերի մարում ու վերացում, ա՛յլ նրանց կյանքի բոլոր կողմերի զարգացում և անշեղ մերձեցում, փոխազդեցություն և փոխհարստացում— սա է սոցիալիզմի և սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում ազգերի զարգացման ճշմարիտ օրինաչափությունը:



# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՆՀԱՇՏԵԼԻ ԵՆ

Խ. ԵՐԻՑՅԱՆ

*Այն պահից, երբ Մարքսը և Էնգելսը «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» առաջին անգամ շարադրեցին գիտական կոմունիզմի հիմունքները, երբ աշխարհով մեկ հռչակվեց կապիտալիզմի կործանման և կոմունիստական հասարակարգի հաստատման պատմական անխուսափելիությունը, կատաղի պայքար սկսվեց կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև։*

*Մարքսիզմի երևան գալը իսկական ռևոլյուցիա էր։ «Գիտական մտքի մեծագույն նվաճումը,— գրում է Վ. Ի. Լենինը,— հանդիսացավ Մարքսի* պատմական մատերիալիզմը։ *Պատմության ու քաղաքականության մասին գոյություն ունեցող հայացքներում մինչ այդ տիրող քաոսն ու կամայականությունը փոխարինվեցին զարմանալի ամբողջական և ներդաշնակ գիտական թեորիայով, որը ցույց է տալիս, թե ինչպես հասարակական կյանքի մի կացութաձևից, արտադրողական ուժերի աճման հետևանքով, զարգանում է մյուսը, ավելի բարձրը...» (հ. 19, էջ 5)։*

*Հանդիսանալով հասարակության առաջավոր ուժի՝ բանվոր դասակարգի աշխարհայացքը, նրա արմատական շահերի արտահայտիչը, մարքսիզմը անհաշտ պայքար հայտարարեց կապիտալիզմին ու նրա գաղափարական սկզբունքներին։ Իր ծագման օրից իսկ նա հռչակեց, որ ինքը որոշակիորեն կանգնած է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերի պաշտպանության դիրքերում, իր առջև նպատակ է դնում ոչնչացնել հին, կապիտալիստական հասարակարգը և ստեղծել նոր, սոցիալիստական հասարակարգ։*

*Այսպիսով, կապիտալիզմը, որ դեռ նոր էր դուրս եկել ֆեոդալիզմի ընդերքից, իր զարգացման արշալույսին լսեց իր մահվան դատավճիռը և դեմուդեմ կանգնեց մի այնպիսի հզոր ուժի, ինչպիսին բանվոր դասակարգն էր՝ իր առաջավոր, աշխարհը ռևոլյուցիոն ձևով վերափոխող ուսմունքով։*

*Այն ժամանակաշրջանի բոլոր ռեակցիոն ուժերը, բուրժուական գիտնականները գործի դրին գրպարտանքի ու հալածանքի միջոցները՝ կասեցնելու միլիոնավոր աշխատավոր մարդկանց հույզերն ու խոհերն արտահայտող մարքսիստական գաղափարների տարածումն աշխարհում։ Նրանց այդ ջանքերը, սակայն, իզուր անցան։ Մահու և կենաց այդ պայքարում բուրժուական գաղափարախոսությունը քայլ առ քայլ զիջում էր իր դիրքերը, իսկ*



*կոմունիստական գաղափարախոսությունն ավելի ու ավելի էր ընդլայնում իր ազդեցության ոլորտը։*

***

*Սոցիալիզմի և կապիտալիզմի միջև պայքարը ծավալվում է հասարակական կյանքի բոլոր ուղղություններով. այն ընդգրկում է թե՛ տնտեսական, թե՝ քաղաքական և թե՛ գաղափարական բնագավառը։ Այդ առումով էլ տարբեր է նրա բնույթը, և այն տարբեր ոլորտներում ունի իր առանձնահատկությունները։ Եթե տնտեսական բնագավառում, օրինակ, այդ պայքարը կարող է ընդունել և ընդունում է երկու սիստեմների խաղաղ մրցության բնույթ, որը բխում է որոշակի օբյեկտիվ պայմաններից, ապա գաղափարական ասպարեզում չի կարող լինել խաղաղ գոյակցություն։ Խաղաղ գոյակցության մեթոդները, որոնք կիրառելի են էկոնոմիկայի և քաղաքականության ասպարեզում, չեն կարող կիրառվել գաղափարական պայքարում։ Անշուշտ, գաղափարական պայքարը դրսևորվում է չափազանց բարդ ձևերով և այն չի ընդունում փոխադարձ զիջումներ, համաձայնություններ։ Ոչ մի կոմպրոմիս չի կարող լինել կոմունիստական ու բուրժուական գաղափարախոսությունների միջև, նրանք անհաշտելի են։ Ինչպես երբեք չի կարելի վերացնել թշնամի դասակարգերի անտագոնիզմը և հաշտեցնել դրանք, այնպես էլ անհնարին է միմյանց հակադիր, տարբեր դասակարգերի շահերն արտահայտող գաղափարների խաղաղ գոյակցությունը։*

*Արդի էպոխայում իդեոլոգիան կարող է լինել կամ սոցիալիստական, կամ բուրժուական. «Բուրժուակա՞ն, թե սոցիալիստական իդեոլոգիա։ Միջինը,— գրում է Վ. Ի. Լենինը,— չկա այստեղ (որովհետև մարդկությունը ոչ մի «երրորդ» իդեոլոգիա չի ստեղծել, բացի դրանից, դասակարգային հակասություններից ծվատվող հասարակության մեջ առհասարակ չի էլ կարող լինել երբեք արտադասակարգային կամ վերդասակարգային իդեոլոգիա)։ Ուստի սոցիալիստական իդեոլոգիայի* ամեն մի *նվաստացում,* ամեն մի հեռացում նրանից՝ *ինքնին նշանակում է բուրժուական իդեոլոգիայի ուժեղացում» (հ. 5, էջ 507)։*

*Գաղափարական պայքարը դասակարգային պայքար է, որի հետևում կանգնած են միմյանց հակադիր դասակարգեր։ Ներկա ժամանակաշրջանում այդ պայքարն ստանում է առանձնահատուկ նշանակություն։ Իմպերիալիզմի գաղափարախոսությունը հակակոմունիզմն է, միլիոնավոր աշխատավորների դաժան կեղեքման ու հարստահարման, պատերազմների ու ագրեսիայի արդարացման գաղափարախոսությունը, որի հիմնական նպատակն է փրկել կործանման եզրին հասած կապիտալիզմը։*

*Կոմունիստական գաղափարախոսության արմատական տարբերությունը բուրժուական գաղափարախոսությունից բացառում է նրանց խաղաղ գոյակցությունը։ Սակայն այդ ռեալ իրականությանը հակառակ, բուրժուական գիտնականները ջանում են ապացուցել գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության հնարավորությունը։ Նրանք գտնում են, որ տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունն անկարելի է առանց բուրժուական գաղափարախոսության նկատմամբ հանդուրժողական, հաշտվողական վերաբերմունքի, որ հակադիր գաղափարական հայացքների խա-*

ղաղ գոյակցությունն արդեն ռեալ փաստ է կապիտալի երկրներում: Դրանով բուրժուական գաղափարախոսներն իրականում հետապնդում են միայն մի նպատակ. խանգարել առաջավոր մարդկության մտքի տիրակալը դարձած մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների լայն տարածմանն աշխարհում, թուլացնել պայքարը բուրժուական ռեակցիոն գաղափարների դեմ, հեռու պահել աշխատավորներին դասակարգային պայքարից:

Իրենց իսկական նպատակները թաքցնելու համար բուրժուազիայի իդեոլոգները հայտարարում են, թե իբր բուրժուական պետություններն ու պարտիաները չեն միջամտում հասարակության հոգևոր կյանքին, իբր հասարակական գիտությունները անգամ չեն ենթարկվում պարտիականության ազդեցությանը: Ակնհայտ է, որ նրանք շատ նուրբ ձևով քարոզում են Վ. Ի. Լենինի կողմից վաղուց քննադատված ու հերքված գաղափարախոսության անպարտիականության հակամարքսիստական դրույթը:

Այն ժամանակից, երբ հասարակության մեջ հանդես եկան տարբեր դասակարգային իդեաներ, ոչ մի դասակարգ չի պայքարել ու հաղթանակել առանց նախօրոք մտածված պարտիական ծրագրի: Այդ առումով, անշուշտ, բացառություն չէ նաև բուրժուական դասակարգը, որը միշտ չէ, որ թաքցրել է իր գաղափարների պարտիականությունը: Երբ բուրժուազիան պայքարի էր դուրս եկել ֆեոդալիզմի դեմ, չէր թաքցնում իր նպատակները ժողովրդից, և նրա գաղափարախոսները հաճախ էին կոչ անում պայքարել ֆեոդալական արիստոկրատիայի գաղափարախոսության դեմ:

Իսկ ինչո՞ւ է այժմ բուրժուազիան թաքցնում իր նպատակները: Որովհետև նա դարձել է ռեակցիոն ուժ, նա չի կարող պաշտպանել դասակարգային պայքարի գաղափարը, ուստի նրա իդեական պաշտպաններն ամեն կերպ ուզում են ապացուցել, որ կապիտալիստական հասարակարգում դասակարգային շահերը ներդաշնակ են և քարոզում են բուրժուական գիտության, արվեստի և գրականության անպարտիականություն: Բայց դրանք միայն վտանգավոր շաղակրատանք են, իրականում բուրժուազիան չի հրաժարվում իր պարտիական սկզբունքներից: Նրա գաղափարները, արվեստը և գրականությունը ենթարկվում են ռեակցիոն քաղաքականությանը, պաշտպանում շահագործողների շահերը:

Բուրժուական և կոմունիստական գաղափարախոսությունների միջև մղվող երկարատև պայքարի պատմությունն ապացուցում է լենինյան այն մտքի ճշմարտությունը, որ միայն ռևոլյուցիոն դասակարգերն ու պարտիաներն են բացահայտ հանդես գալիս և մինչև վերջ պաշտպանում գաղափարախոսության պարտիականությունը: Եվ հակառակը, գաղափարների ապադասակարգային կամ վերդասակարգային բնույթը քարոզում են ռեակցիոն, մեռնող դասակարգերն ու պարտիաները:

Իմպերիալիզմի գազանային էությունը քողարկելու նպատակով նրա հոգևոր պաշտպանները ձգտում են ամեն կերպ վարկաբեկել կոմունիզմը, նսեմացնել նրա գաղափարներն ու սկզբունքները աշխատավոր մասսաների աչքում: Հակակոմունիզմը դարձել է իմպերիալիզմի գաղափարական զենքը: Այն տարածվում է պրոպագանդայի բոլոր միջոցներով: Թերթերը, ամսագրերը բուրժուական սոցիոլոգների, փիլիսոփաների, տնտեսագետների մտացածին աշխատությունները հեղեղում են գրական շուկան: Բուրժուական պրո-



պագանդան հակակոմունիզմի գաղափարներով թունավորում է երիտասարդության գիտակցությունը:

Ամերիկայի Միացյալ Նահանգների միջնակարգ դպրոցներում տասնյակ հազարավոր ուսուցիչներ հակակոմունիզմ են ներարկում աշակերտությանը: Այդ երկրի բուհերում հակակոմունիստական իդեաներ են սերմանում ուսանող երիտասարդության մեջ, այսպես կոչված «քաղաքական գիտությունների» ամբիոնների 5 հազար դասախոսներ: Ամերիկյան պրոպագանդայի շտաբում՝ ինֆորմացիոն գործակալությունում, աշխատում են 12 հազար պրոպագանդիստներ: Գործակալությունն ունի 239 բաժանմունք՝ 105 երկրներում, «Ամերիկայի ձայն» ռադիոկայանը՝ 87 հզոր ռադիոընդունիչներով. նա կազմակերպում է կինոսպասարկում 98 երկրներում, ունի նաև 176 գրադարան 80 երկրներում և այլն: Բուրժուական ապրելակերպի մասին ակտիվ պրոպագանդա են մղում արտասահման մեկնող կոնգրեսմենները, այսպես կոչված, «խաղաղության կոնգրեսի» շահամոլները, ժուռնալիստները և արտասահմանյան համալսարաններում սովորող ամերիկյան ուսանողները:

Իհարկե, այժմ, երբ գաղափարական պայքարի կենտրոնական հարցն այն է, թե ո՞ր հասարակական-քաղաքական կարգը՝ սոցիալի՞զմը, թե՞ կապիտալիզմն է ավելի լավ պայմաններ ստեղծում մարդկանց նյութական և հոգևոր պահանջմունքների բավարարման համար, ո՞ր կարգն է ստեղծում իսկական ազատություն անհատի զարգացման համար և մարդկությանը տանում ճիշտ ուղիով, և երբ այդ հարցը կյանքը լուծում է հօգուտ սոցիալիզմի, բուրժուական գաղափարախոսները կաշվից դուրս են գալիս՝ արդարացնելու իր դարն ապրած իրականությունը: Տեսնելով իրենց պրոպագանդայի անհաջողությունը, տնտեսական ոլորտում կապիտալիզմի «առավելությունները» ապացուցելու ապարդյուն ճիգերը, նրանք ասպարեզ են քաշել այլ պրոբլեմներ և ջանում են ապացուցել, թե կապիտալիզմը ստեղծել է լայն դեմոկրատիա և անհատի ազատության ավելի լավ պայմաններ, քան սոցիալիզմը: Այլ կերպ նրանք չեն էլ կարող վարվել, որովհետև սոցիալիզմի համաշխարհային-պատմական հաղթանակները ստիպեցին ամենաթունդ թերահավատներին, սոցիալիզմի թշնամիներին անգամ ճանաչելու նրա ուժն ու ճշմարտացիությունը, հրաժարվելու Սովետական Միության «կուլտուրական և տնտեսական անհաղթահարելի հետամնացության» մասին հորինած իրենց առասպելներից:

Իմպերիալիզմի քիչ թե շատ խելամիտ գաղափարախոսներից շատերը խոստովանում են, որ սովետներն ապրում են վիթխարի պրոգրես: Բուրժուական թեորիական մտքի ճանաչված ներկայացուցիչներից մեկը՝ Ջոն Գոլբրեյտը, դեռ 1962 թվականի հոկտեմբերին «Ատլանտիկ» ամսագրում զետեղված իր հոդվածում գրել է. «Ազատ ձեռնարկության սիստեմի (այսինքն՝ կապիտալիզմի) ամենահամոզված կողմնակիցը նույնիսկ ստիպված է համաձայնել այն բանի հետ, որ սովետները սոցիալիզմի օրոք հասել են զգալի պրոգրեսի»: Թեկուզ շատ ժլատ, բայց այս խոսքերը վկայում են, որ կապիտալիզմի գաղափարական պաշտպաններն ստիպված են հաշվի նստել ռեալ իրականության հետ: Նրանք չեն կարող միայն գովերգել կապիտալիզմը, ինչպես անցյալում: Այժմ այնքան էլ հեշտ չէ այդ անել: Չէ՞ որ կապիտալիզմի պատմությունը թալանի, մարդկային արժանապատվության ոտնահարման, աշխատավոր մարդու ստորացման ու անխնա կեղեքման պատմություն

է։ Փորձելով հեռանալ այդ ամենից, կապիտալիզմի ջատագովները պնդում են, որ այժմյան կապիտալիզմը բոլորովին էլ նման չէ Մարքսի պատկերած կապիտալիզմին։ Նրանք առաջ են քաշում այն թեզը, թե իբր հասարակական զարգացումն այժմ ընթանում է ոչ թե սոցիալիզմի, կոմունիզմի, այլ ուրիշ, այսպես կոչված՝ «նոր կապիտալիզմի» ուղիով։ Ուոլտեր Լիպմանը և մյուսները ամերիկյան կապիտալիզմը համարում են «ապագայի ալիքը», որը կընդգրկի ամբողջ աշխարհը։ «Նոր կապիտալիզմի» հասարակարգը, ըստ նրանց, կապահովի զարգացման «կայուն և բարձր» տեմպեր, կոչնչացնի կապիտալիզմի հակասությունները և իբր թե նրա նպատակը ոչ թե շահույթ ձեռք բերելն է, այլ «ժողովրդական պահանջմունքների բարձր մակարդակի» ապահովումը։

Որքան էլ գովերգեն կապիտալիզմը, նրա պաշտպաններն անզոր են ժխտելու այն ռեալ իրականությունը, որ կապիտալիզմը դժբախտություն է մարդկության համար։ Դրա պատճառով ստեղծված սովի, աղքատության և թշվառության ճիրաններում տառապում են հարյուր միլիոնավոր մարդիկ։ Նույնիսկ կապիտալիզմի ամենազարգացած երկրում՝ Ամերիկայում, տասնյակ միլիոններ աղքատության են մատնված։

Այս ամենն անտեսում են կոմունիզմի գաղափարական թշնամիները և իրենց տեսական «նորարարությամբ» փորձում ապացուցել այն, ինչ հնարավոր չէ ապացուցել։ Այժմյան կապիտալիզմը ներկայացնելով որպես մարդկությանը դեպի պրոգրես տանող հասարակարգ, նրանք ցանկանում են մոլորության մեջ գցել դեռևս կապիտալի լծի տակ հեծող աշխատավորական զանգվածներին, ամրապնդել իմպերիալիզմի հիմքերը։ Բուրժուական գաղափարախոսների այն պնդումները, սակայն, թե կապիտալիզմն է, որ ստեղծում է «բարենպաստ մթնոլորտ» մարդկանց ազատության, դեմոկրատիայի համար, հերքվում են անմիջապես, երբ դիմում ենք փաստերին։ Անհրաժեշտություն չհամարելով այստեղ խոսել մարդկանց հոգևոր պահանջմունքների բավարարման, անհատի բազմակողմանի զարգացման համար սոցիալիզմի ստեղծած պայմանների մասին, վերլուծենք մի շարք փաստեր ու տվյալներ, որոնք լիովին հաստատում են բուրժուական գաղափարախոսության և նրա պրոպագանդիստների սնանկությունը։ Վկայակոչում ենք հենց այն փաստերը, որոնք դուրս են գալիս կապիտալիստական աշխարհում ապրող գրողների, գիտնականների, հրապարակախոսների գրչի տակից։

«Կոռուպցիայի հասարակություն», այսպես է անվանում Ամերիկայի Միացյալ Նահանգները հայտնի հրապարակախոս Ֆրեդ Կուկը իր նույնանուն գրքում, ուր բերված փաստերն արտահայտում են Ամերիկայի բուրժուական հասարակարգի խոր ճգնաժամը։ Այստեղ բարձր իդեաները փոխարինվում են էգոիստական շահախնդրությամբ, համոզվածությունը, հավատը և ազնվությունը զոհաբերվում են «դեղին սատանային», որի վրա հիմնված է ամերիկյան ապրելակերպը։

Ամերիկյան ապրելակերպը քննադատել է ո՛չ միայն Ֆրեդ Կուկը։ Բուրժուական մի շարք նշանավոր գիտնականներն անգամ չեն կարողանում հաշտվել այն բանի հետ, որ Ամերիկայում, որտեղ խիստ շատ են խոսում ազատության, դեմոկրատիայի մասին, արվում է ամեն ինչ անհատի և հասարակության արժանապատվությունը ոտնահարելու համար։ Այս առումով չի կարելի չհիշատակել անգլիական հայտնի փիլիսոփա Բերտրան Ռասելի



«Վաշինգտոն պոստ» թերթին գրած նամակը, որտեղ նա զայրույթով է խոսում այն մասին, որ Ամերիկայում հետապնդվում են պրոգրեսիվ կազմակերպությունները։ «Այդ ի՞նչ հասարակարգ է,— գրում է նա,— որը հայտարարում է, թե հոգում է ընդհանուրի և անհատի պաշտպանության մասին, բայց միաժամանակ պատրաստակամություն է հայտնում ոչնչացնելու մի քանի հարյուր միլիոն մարդ։ Հասարակարգը, որը շատ հանգիստ մտածում է այդպիսի սպանդանոցի մասին, այն հասարակարգն է, որտեղ ատում են անհատի ազատությունը, մարդու արժանիքը։ Պատահական և զարմանալի չէ, որ այդպիսի հասարակարգը հարձակվում է նրանց վրա, ովքեր դեմ են մասսայական սպանության, և որոնց նա ցանկանում է վարկաբեկել ու ոչնչացնել։ Ես խոսում եմ Ամերիկայի Միացյալ Նահանգների մասին»։ Վերջում Ռասելը, դիմելով Ամերիկայի կառավարողներին, հարցնում է՝ թե գաղտնի ոստիկանությունը, վարձու գործակալների ինստիտուտը, քայքայիչ կազմակերպությունները, քաղաքական հայացքները հետաքննող հանձնաժողովները, մի՞թե համատեղելի են անհատի և հասարակության ազատության հետ, որի մասին նրանք անվերջ թմբկահարում են։

Ամերիկյան մեկ ուրիշ հայտնի գրող, հրապարակախոս Վենս Պակկարդը իր, այսպես կոչված, «Մերկ հասարակություն» գրքում, որը պատրաստվում է տպագրության, ցույց է տալիս, որ «ազատ աշխարհի» ծանր, հեղձուցիչ մթնոլորտը՝ հետաքննչական վիթխարի ապարատը, տեխնիկայի նորագույն միջոցներով մարդկանց յուրաքանչյուր քայլի հետապնդումը, որ լրտեսությունը դարձել են ամերիկյան ապրելակերպի անխուսափելի ուղեկիցները։ Պակկարդի գրքի I գլխում բերվում են չափազանց հետաքրքրական փաստեր ու տվյալներ, որոնք լիովին հերքում են «անհատի ազատության», «դեմոկրատիայի», «կապիտալիստական դրախտի» մասին բուրժուական պրոպագանդիստների հորինած առասպելներն ու անհիմն գովաբանությունները։ Տանը, աշխատանքում, խանութում, դպրոցում, ամենուրեք, մարդը մշտապես զգում է իր անձնականին միջամտող ծանր թաթը։ Երկրում վխտում են գաղտնի գործակալները, մարդուն հետևում են լրտեսող էլեկտրական աչքերը, թաքնըված մագնիտաֆոնները գրի են առնում նրա յուրաքանչյուր բառը, նրան լսում են քողարկված ռադիոընդունիչները, պատկերահանում գաղտնի հեռուստացույցները և այլն։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում և Արևմտյան Եվրոպայի շատ երկրներում տարեցտարի ուժեղանում են մարդուն հետապնդելու և հսկելու միջոցառումները։ Համաձայն Պակկարդի տվյալների, սրանից մի քանի տարի առաջ, քաղաքացիների չեզոքությունն ու անվտանգությունը որոշելու նպատակով Ամերիկայի պետական անվտանգության օրգանների կողմից ստուգման ենթարկվեցին 13,5 միլիոն ամերիկացի. պետական ծառայության մեջ աշխատում են 25 հազար պրոֆեսիոնալ քննիչներ, չհաշված հետախուզության և լրտեսության ապարատի աշխատակիցները։ Սակայն ֆեդերալ քննիչները, նշում է Պակկարդը, մի կաթիլ են ծովում նրանց նկատմամբ, ովքեր իրենց ապրուստը վաստակում են ուրիշների անձնական կյանքին հետևելով և լրտեսելով։ Երկրի մասնավոր լրտեսական գործակալություններում, կորպորացիաներում, տեղական իշխանությունների օրգաններում, քաղաքներում և նահանգներում հաշվվում են հարյուր հազարավոր քննիչներ ու

լրտեսներ։ Ամերիկայում լրտեսական ապարատը այնքան է կատարելագործվել, որ կարելի է 2 ժամում 50 դոլար վարձատրությամբ իմանալ այս կամ այն մարդու մասին սպառիչ տեղեկություններ։ Փորձելով իր վրա և համոզվելով դրանում, ինքը Պակկարդը զգացել է վախի և սարսափի ահավոր ծանրություն։

Ինչպես Ֆրեդ Կուկը, այնպես էլ Ռասելն ու Պակկարդը կոմունիստներ չեն և ոչ էլ կոմունիստական հայացքներ են քարոզում։ Բայց նրանք արդարացիորեն քննադատում են ամերիկյան ապրելակերպը, բացահայտում կապիտալիզմի նողկալի էությունը, անհատի համար նրա ստեղծած դժոխային, բանտային պայմանները։

Իմպերիալիզմը բացառում է անհատի, հասարակության ազատությունը։ Կապիտալի երկրներում ազատությունը վայելում են նրանք, որոնց ձեռքում են միլիոններին անխղճորեն շահագործելու միջոցները, պետական ապարատը՝ ազատությունը և դեմոկրատիան ճնշելու գործիքը։

Սակայն բուրժուական գաղափարախոսությունը ոչնչի առաջ կանգ չի առնում սքողելու կապիտալիստական հասարակարգի դժոխային էությունը, զրպարտելու և սևացնելու սոցիալիստական հասարակարգը, որը միայն ստեղծում է բոլոր պայմաններն անհատի, հասարակության բազմակողմանի զարգացման համար։

Բուրժուական պրոպագանդիստները ծիծաղելի վիճակի մեջ են ընկնում, երբ դիմում են նման մեքենայություններին։ Չէ որ քաղաքականությունը հասկացող, կյանքը ճանաչող ամեն մի մարդ կարող է հարցնել, թե ինչպե՞ս սոցիալիզմ կառուցողները (ըստ նրանց «անազատ աշխարհի» մարդիկ) էկոնոմիկայի, կուլտուրայի ու գիտության ասպարեզում հասան աշխարհ զարմացնող հաջողությունների, ինչո՞վ բացատրել սոցիալիստական սիստեմի հզոր և անարգել առաջընթացը։ Այդ հարցերի պատասխանը միայն մեկը կարող է լինել. սոցիալիզմի և կապիտալիզմի մրցության ընթացքում վերջինս տանուլ է տալիս, որովհետև կապիտալիզմի շրջանակներն արդեն չափազանց նեղ են հասարակական-նյութական ու հոգևոր ուժերի, ինչպես և անհատի զարգացման համար։



Հավատարիմ մնալով մարքսիզմ-լենինիզմին, մեր պարտիան պաշտպանում է իր գաղափարական աշխատանքի մարտական, հարձակողական բնույթը, բացահայտում մեռնող կապիտալի աշխարհի պաշտպանների ամեն տեսակ կեղծիքն ու խաբեությունները, անաղարտ պահում կոմունիստական գաղափարախոսությունը՝ մեր աշխարհայացքին խորթ զանազան հոսանքների վնասակար ազդեցությունից։ Բուրժուական գաղափարախոսության դեմ իր պայքարում, ինչպես նշվեց վերևում, սոցիալիստական գաղափարախոսությունը ելնում է այն սկզբունքից, որ գաղափարական ասպարեզում չի կարելի անել ոչ մի զիջում, իսկ զիջել գաղափարական ասպարեզում, նշանակում է կորցնել զարգացման հեռանկարը և հրաժարվել կոմունիզմի համար մղվող պայքարից։

Սովետական ժողովրդի վճռական հաջողությունները կոմունիստական շինարարության գործում, բոլոր սոցիալիստական երկրների վիթխարի նվաճումները ստեղծել են աշխարհում դասակարգային ուժերի նոր հարաբերակցություն։ Իմպերիալիզմը չի կարող սոցիալիզմին հաղթել ռազմական ճանապարհով և երկու սիստեմների տնտեսական մրցության պայմաններում աստիճանաբար զիջում է իր դիրքերը։ Չհրաժարվելով սոցիալիզմի դեմ պայքարի մյուս միջոցներից, իմպերիալիստական երկրների ղեկավար շրջաններն այժմ մեծ գումարներ են ծախսում սոցիալիստական երկրների դեմ գաղափարական դիվերսիա կազմակերպելու համար։

Կոմունիզմի դեմ կազմակերպված գաղափարական արշավը հանդիպում է աշխարհի ավելի քան 40 միլիոնանոց կոմունիստների հզոր բանակի դիմադրությանն ու եռանդուն պայքարին։ Մարքս-լենինյան գաղափարներն ունեն ավելի պարարտ հող, հզոր սոցիալական հիմք, որը մշտապես հարստանում է։ Արդի բանվոր դասակարգը այն չէ, ինչ նախկինում։ Եթե XIX դարի առաջին կեսին՝ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստի» երևան գալու նախօրյակին, արդյունաբերական պրոլետարիատը 10 միլիոնից չէր անցնում, ապա այժմ աշխատանքի համաշխարհային բանակում հաշվվում են 500 միլիոնից ոչ պակաս բանվորներ ու ծառայողներ։ Աշխարհի գրեթե բոլոր երկրներում կա բանվոր դասակարգ, որը զարգանում և ավելի ամրակուռ է դառնում։ Օրեցօր աճում է միջազգային բանվորական և կոմունիստական շարժումը, թեժանում են դասակարգային մարտերը կապիտալի երկրներում, ուժեղանում է խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարը։

Եվ վերջապես, մեռնող կապիտալիզմի դեմ կանգնած է հզոր ու անպարտելի սոցիալիստական լագերը։

Աշխարհում անշեղորեն բարձրացող նոր հասարակարգը իր ճանապարհին հաղթահարում է ամեն մի խոչընդոտ և հաջողությամբ առաջ մղելով սոցիալիզմի, կոմունիզմի արդարացի, սրբազան գործը՝ արագացնում է մեռնող կապիտալիզմի և նրա գաղափարական սկզբունքների վերջնական կործանումը։



# ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Հ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

*Արդի ռեակցիոն բուրժուազիայի գաղափարախոսության և քաղաքականության մեջ գլխավորը հակակոմունիզմն է, որը երևան է գալիս տարբեր ձևերով, մե՛րթ սոցիալիստական հասարակարգը զրպարտելու, մե՛րթ սոցիալիստական պետությունների և կոմունիստական պարտիաների քաղաքականությունն ու նպատակները կեղծելու, մե՛րթ առհասարակ գիտական կոմունիզմի և մարքսիզմ-լենինիզմի գաղափարները խեղաթյուրելու և բազմաթիվ այլ ձևերով: Կոմունիզմի դեմ մղած իր պայքարում բուրժուական գաղափարախոսությունը միշտ էլ առաջնորդվում է ծայրահեղ դասակարգային էգոիզմով: Բացահայտելով բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժման և նրա գաղափարախոսության դեմ բուրժուազիայի մղած պայքարի հիմնական բովանդակությունը, Ֆ. Էնգելսը գրում էր. «Էգոիզմը ժամանակակից հասարակության և ժամանակակից մարդու՝ իրեն գիտակցած էությունն է, այն վերջինը, ինչ ժամանակակից հասարակությունը կարող է ասել մեր դեմ, ամեն մի տեսության գագաթնակետը գոյություն ունեցող տխմարության շրջանակներում» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. XXI, էջ 6):*

*Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանում, երբ կոմունիզմն այլևս մի խումբ մարդկանց երազանքը չէ, կամ վերացական ինչ-որ ուսմունք, այլ այնպիսի հզորագոր գիտական տեսություն, որը հաջողությամբ իրականացվում է երկրագնդի 1/4 մասում և, վերջապես, այն դարաշրջանում, երբ գիտական կոմունիզմը հաղթականորեն իր համար ճանապարհ է հարթում նաև մյուս երկրներում, վերոհիշյալ էգոիզմը գնալով ավելի այլանդակ ձևեր և ավելի ագրեսիվ բնույթ է ձեռք բերում:*

*Հարկավ, բանն այն է, որ ո՛չ բուրժուազիան, ո՛չ էլ նրա «հանճարեղ» գաղափարախոսները չեն կարող կասեցնել մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ պրոցեսը: Հենց այդ պատճառով էլ կապիտալիզմի պաշտպաններն ամեն կերպ աղավաղում կամ լկտիաբար զրպարտում են գիտական կոմունիզմի տեսությունը, նրա ստեղծագործական պրակտիկան, սոցիալիստական երկրների հասարակական սիստեմն ու նրանց խնդիրները: Խոսքով նրանցից ոմանք դեմ չեն սոցիալիզմի գաղափարին: Նրանք ասում են, որ սոցիալիզմի գաղափարն իրականություն է, որ «դա բարոյական բարձր*



*պահանջ է, առանց որի մարդկության ազնվացումն անհնար է»: Հակակոմունիզմի քարոզիչները չեն կարող հաշվի չառնել այն փաստը, որ մեր օրերում մարդկության բացարձակ մեծամասնությունը սոցիալիզմի կողմն է, որ սոցիալիզմի իրականացման հարցում շահագրգռված են ինչպես բանվորներն ու գյուղացիները, այնպես էլ աշխատավորական ինտելիգենցիան և քաղաքի մանր արտադրողները, որովհետև միայն սոցիալիզմը կարող է նրանց ազատագրել կապիտալիստական շահագործումից և ստրկացումից: Հակակոմունիզմի դրոշակակիրները հարկադրված են ընդունել այդ փաստը: Սակայն, ներքուստ ատելով սոցիալիզմը, նրանք միաժամանակ սարսափում են նրանից, ուստի սոցիալիզմի և նրա ազնիվ խնդիրների մասին նրանք խոսում են միայն այն նպատակով, որ ժխտեն կամ վարկաբեկեն դրանք: Դաշնակցության «տեսաբաններից» մեկը՝ Ռ. Դարբինյանը գրում է. «Ընկերավարության մեջ գնահատելին մեզ համար ուտոպիան է, ընկերային արդարության ձգտումը» («Հայրենիք», 1923, № 5, էջ 91): Այսպիսով, նա ըստ էության ժխտում է սոցիալիզմի պրակտիկան, նրա իրականացումը: Ուտոպիան մարդկանց մոլորեցնելու, բանվոր դասակարգին պայքարից շեղելու լավագույն միջոց է, այդ պատճառով էլ Դարբինյանը կողմնակից է ուտոպիային և դեմ է գիտական կոմունիզմին: Հիմնավորելով իր «տեսությունը», նա գրում է. «Ուտոպիա մը կրնա շատ օգտակար ըլլալ, երբ անով ներշնչվածը գիտե, որ ան ուտոպիա է: Բայց երբ ուտոպիան կներկայացվի, կամ կյուրացվի իբրև անպայման գիտություն և անոր թելադրությունները իբրև անհերքելի և անփոփոխելի օրենքներ, այն ատեն ան կդառնա հասարակական ահավոր չարիքներու և աղետներու պատճառ» (նույն տեղը):*

*Բայց ինչո՞ւ է այդպիսի տագնապահար վայնասուն բարձրացնում հեղինակը: Եթե սոցիալիզմի գաղափարը ազնիվ է և, ինչպես ասում է ինքը՝ Դարբինյանը, «մարդկության ազնվացման» լավագույն միջոցն է, ապա ինչպե՞ս կարող է նրա պրակտիկ իրականացումը դառնալ «ահավոր չարիքներու ու աղետներու պատճառ»: Չէ՞ որ յուրաքանչյուր գաղափարի իսկական էությունը և մարդու համար այդ գաղափարի նշանակությունը բացահայտվում է միայն նրա գործնական կիրառման պրոցեսում: Օգտակա՞ր է արդյոք այս կամ այն ուտոպիան: Միայն պրակտիկան կարող է պատասխանել այդ հարցին: Երբ ուտոպիան միանում է պրակտիկայի հետ և ստուգվում պրակտիկայով, նա արդեն դառնում է գիտական տեսություն, այսինքն՝ մի զենք մարդու ձեռքին՝ առաջադրված նպատակներին հասնելու համար: Օրինակ, հանրահայտ է, որ Սեն Սիմոնի սոցիալիզմը ուտոպիստական է, բայց երբ այն մարքսիստորեն վերամշակված միացավ բանվորական շարժման հետ, դարձավ հասարակության ռևոլյուցիոն վերափոխման գիտական տեսություն: Եվ մի՞թե դա վնաս բերեց մարդկությանը: Իհարկե, ոչ:*

*Իսկ ի՞նչ է տվել սոցիալիզմը մարդկությանը վերջին հիսուն տարում: Այն Ռուսաստանում վերացրեց ցարիզմը, որն ամեն մի պրոգրեսի ոխերիմ թշնամին էր: Նա ամենադեմոկրատական իրավակարգ ստեղծեց երկրում և լայն ճանապարհներ բացեց գիտական մտքի անընդհատ զարգացման առաջ: Չէ որ փաստ է, որ երկրի առաջին արհեստական արբանյակն ստեղծվել է ոչ թե որևէ կապիտալիստական երկրում, այլ Սովետական Միությունում, սոցիալիզմի երկրում: Աշխարհի առաջին տիեզերագնացը սովետական քաղաքացի էր: Նույնպես Սովետական Միության քաղաքացի է տիեզերքում թռիչք*

կատարած առաջին կինը։ Սոցիալիզմը, ջախջախելով շատ ժողովուրդների ստրկացման շղթաները, իսկական ազատություն բերեց նրանց։ Մի՞թե Դարբինյանը կարող է ժխտել այն ակնհայտ փաստը, որ հայերը ֆիզիկական ոչնչացումից փրկվել են և լիակատար ազատություն են ձեռք բերել միայն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ։ Սոցիալիզմը վերջ դրեց անգլո-ամերիկյան իմպերիալիստների գաղութային տիրապետությանը Չինաստանում։ Նա ազատություն տվեց Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի և դեմոկրատական մյուս երկրների բանվորներին ու գյուղացիներին։ Այդ երկրների ժողովուրդները հնարավորություն ստացան կանգնելու մեր դարաշրջանի ամենաառաջավոր ազգերի շարքում։

Անժխտելի փաստ է նաև այն, որ արդի քաղաքակրթությունը ֆաշիստական բարբարոսների ձեռքով կործանվելու վտանգից փրկվեց միայն առաջին սոցիալիստական ռեսպուբլիկայի՝ Սովետական Միության ջանքերով։ Սոցիալիզմը երկրագնդի մեկ քառորդ մասում վերջ դրեց մարդու շահագործմանը մարդու կողմից և դրանով իսկ բոլոր մարդկանց ամենագործնական կերպով ցույց տվեց, թե ինչ ճանապարհներով կարելի է ոչնչացնել ամեն տեսակ ստրկացում և ձեռք բերել ազատություն։ Մի՞թե գաղութատիրության դեմ իրենց մղած պայքարում Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդները չեն հենվում սոցիալիստական լագերի ուժի վրա և անշահախնդիր օգնություն ստանում սոցիալիզմի երկրներից։ Առանց այդ ուժի և առանց այդ օգնության ոչ մի խոսք չի կարող լինել համաշխարհային գաղութային սիստեմի կործանման մասին։

Ահա թե ինչ է տվել սոցիալիզմը մարդկությանը։ Կարելի՞ է այդ ամենը չարիք կամ աղետ համարել մարդու համար։ Եթե այո, ապա այն ժամանակ ի՞նչն է բարին։ Մի գուցե բարի է համարվում քրդերի բնաջնջումը այն բանի համար, որ նրանք ազգային ինքնորոշման են ձգտում, կամ թե ազգային-ազատագրական շարժման դաժան ճնշումը Անգոլայում, մասսայական գործազրկությունը և քաղաքացիական իրավունքների սահմանափակումը կապիտալիզմի երկրներում։ Միայն իրենց մարդկային կերպարանքը կորցրածները կարող են համաձայնել Դարբինյանի այն մտքին, թե սոցիալիզմը «ահավոր չարիքներու ու աղետներու պատճառ» է։ Ո՛չ, մարդկության համար ահավոր չարիք է ոչ թե սոցիալիզմը, այլ կապիտալիզմը՝ իր մարդատյաց կարգերով։ Սոցիալիզմը մարդուն ամեն տեսակ ճնշումից ազատագրելու միակ ուղին է։ Եվ գնալով սոցիալիզմի գաղափարը ո՛չ միայն համակում է նորանոր հոծ բազմությունների, այլ գործնականորեն իրականացվում է կյանքում, ամբողջ ժողովուրդներ թևակոխում են սոցիալիզմի կառուցման ուղին, դրանով իսկ ապացուցելով, որ սոցիալիզմը ոչ թե ուտոպիա է, այլ գիտություն։

Ռ. Դարբինյանը գտնում է, թե «ցնորք է սոցիալիզմը գիտություն դարձնելու ձգտումը» («Հայրենիք», 1923, № 8, էջ 128)։ Սակայն այդ դրույթը արդեն հերքված է կյանքի կողմից, որովհետև սոցիալիզմն արդեն գիտություն է։ Այն գիտություն է դարձել դեռ այն պահից, երբ միացավ բանվորական շարժման հետ, այսինքն՝ անցյալ դարի 40-ական թվականներից։ Հանրահայտ է, որ ամեն մի ուսմունք դառնում է գիտություն, եթե այն ճիշտ է արտացոլում իրականությունը, սահմանում է որոշակի օրենքներ ու օրինաչափություններ և զբաղվում է գիտական կանխատեսությամբ։

Մարքսը վերջնականապես ապացուցեց, որ սոցիալիզմը ուսումնասիրում



է անդասակարգ հասարակական հարաբերությունների ստեղծման ու հաղթանակի ուղիներն ու միջոցները։ Նրա բացահայտած օրենքներն անդասակարգ հասարակության ստեղծման և կոմունիստական հարաբերությունների զարգացման օրենքներն են, իսկ նրա գիտական կանխատեսությունը բանվոր դասակարգի նպատակի բացահայտումը և սահմանումն է։ Հետևապես, դատարկաբանություն պետք է համարել վեճը այն բանի շուրջ, թե սոցիալիզմը գիտությո՞ւն է թե ոչ։ Այժմ հարցն այլ կերպ է դրված, այսինքն՝ թե այս կամ այն դասակարգի, հասարակական խմբի կամ անձնավորության համար որքան է ցանկալի հասարակական զարգացման այն գիտական պրոգնոզը, որ տվել է սոցիալիզմն՝ իբրև գիտություն։

Կապիտալիստական դասակարգը և նրա գաղափարախոսները չեն կարող հաշտվել սոցիալիզմի հետ։ Այդ բանում ոչ մի տարակարծություն չկա նրանց շարքերում։ Բայց երբ խոսք է լինում սոցիալիզմը ժխտելու եղանակների և բուրժուական իրավակարգը բարեփոխելու ձևերի մասին, հակակոմունիստները հանդես են գալիս տարբեր դիրքերից և տարբեր դեղատոմսեր են առաջարկում իրենց նպատակին հասնելու համար։ Օրինակ, դաշնակցական լիդեր Վ. Նավասարդյանը գտնում է, որ «իրենց էության մեջ որոշ ուղղումների ու սրբագրությունների պիտի ենթարկվեն... թե՛ մասնատիրական ու թե համայնատիրական սկզբունքները», «նրանք պետք է դադարեն բացարձակորեն հակամարտ հասկացություններ լինելուց» («Հայրենիք», 1923, № 4, էջ 59)։ Իսկ արդյոք հնարավո՞ր է դա։ Չէ՛ որ արտադրության միջոցների հանրային սեփականությունը հաստատվում է միայն մասնավոր սեփականության ոչնչացմամբ։

Կապիտալիզմը սոցիալիզմով «շտկելու» համար անհրաժեշտ է, որ նրանք չբացասեն մեկը մյուսին։ Իսկ այդ անհնար է։ Ուրեմն մնում է միայն մի ելք. ժխտել դրանցից մեկը։ Վ. Նավասարդյանը այդպես էլ անում է։ Նա ասում է, որ «սոցիալիզմը, իբրև մարդկային կենցաղաձևերից մեկը» մշտական լինել չի կարող, որովհետև անգամ եթե նա կենսագործվի, միևնույն է, նա ստիպված կլինի իր տեղը զիջել կապիտալիզմին։ Նա չի ցանկանում հաշտվել այն մտքի հետ, որ սոցիալիզմը ոչ թե մի խումբ մարդկանց սուբյեկտիվ ցանկությունն է, այլ մարդկային հասարակության օրինաչափ առաջընթացի անխուսափելի հետևանք, երբ այդ հասարակության զարգացման մի որոշ մակարդակի վրա արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը դառնում է անհնարին։ Կապիտալիզմին վերադառնալու համար կպահանջվի, որ արտադրողական ուժերը կրկին վերադառնան իրենց նախկին մակարդակին։ Այդ ևս անհնար է։ Բնական զարգացման ընթացքը միշտ էլ անկատարից տանում է դեպի կատարյալը և հակառակը լինել չի կարող։ Անգամ բռնի ուժը չի կարող փոխել այդ ընթացքը, որովհետև մեր օրերում սոցիալիզմի ուժն արդեն գերազանցում է կապիտալիզմի ուժին։

«Սոցիալիզմին կարելի է հավատալ,— գրում է Ռ. Դարբինյանը,—սոցիալիզմը կարելի է բաղձալ, կամենալ և ձգտել իրականացնել։ Բայց կարելի չէ գիտենալ, թե ինչպե՞ս, ի՞նչ միջոցով և պայմաններու մեջ, ե՞րբ և ո՞վ պիտի իրագործե սոցիալիզմը» («Հայրենիք», 1923, № 5, էջ 96)։

Իհարկե, փաստերի դիտավորյալ անտեսման դեպքում կարելի է ամեն ինչ ասել։ Սակայն դեռ «Կոմունիստական պարտիայի մանիֆեստում» հիմնավորապես ապացուցված է, որ սոցիալիզմը հատուկ տնտեսական ֆորմացիա է,

որը փոխարինելու է կապիտալիզմին որպես նրա զարգացման անխուսափելի հետևանք, որ սոցիալիզմը կարելի է կառուցել միայն պրոլետարիատի դիկտատուրայի առկայության դեպքում, և որ սոցիալիզմ կառուցողի դերում հանդես է գալիս բանվոր դասակարգը մյուս աշխատավորական մասսաների ակտիվ մասնակցությամբ։ Բացի այդ, սոցիալիզմն արդեն հաղթանակել է երկրագնդի մի զգալի մասում, այնպես որ Դարբինյանի վերոհիշյալ հարցերը միանգամայն անմիտ են։ Ինչպես մարքսիզմի տեսությունը, այնպես էլ մեր ժամանակների պրակտիկան վաղուց ի վեր սպառիչ պատասխան են տվել այդ հարցերին։

Գիտակցորեն անտեսելով փաստերը և հաճախ էլ խեղաթյուրելով դրանք, հակակոմունիզմի գաղափարախոսները ձգնում են անվստահություն սերմանել մարքսիզմի տեսության նկատմամբ, մասնավորապես, հասարակական վերափոխությունների հարցում նրա գիտական կանխատեսության նկատմամբ։ Ռ. Դարբինյանը հայտարարում է. «Մարդկային միտքը, որքան ալ հանճարեղ ըլլա, անզոր է ունեցած պաշարով ճշտորեն կանխատեսելու հասարակության հետագա զարգացման հարափոփոխ ընթացքը» (նույն տեղը, էջ 95)։

Եթե դա վերաբերում է բուրժուական մտքին, ապա այդ միանգամայն ճիշտ է։ Բուրժուական մտածողը, հիրավի, այսօր ոչ մի արժեքավոր բան չի կարող ասել հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքի մասին, քանի որ այդ ընթացքը և բուրժուազիայի հետապնդած նպատակները տրամագծորեն հակադիր են։ Այնպես որ կապիտալիստների համար օգտակար չէ այդ հակասության բացահայտումը։ Հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքը տանում է դեպի կոմունիզմի լիակատար ու վերջնական հաղթանակ ամբողջ աշխարհում, իսկ բուրժուազիայի ներկայացուցիչները հոգ են տանում իրենց դասակարգի տիրապետությունը հավերժացնելու համար։ Հետևապես, նրանք ի վիճակի չեն ոչ մի գիտական կանխատեսության։

Բոլորովին այլ դիրքերում է կանգնած բանվոր դասակարգի գաղափարախոսը։ Պատմության օբյեկտիվ ընթացքը և նրա դասակարգի հետապնդած նպատակները լիովին համընկնում են։ Այդ հանգամանքը նրան հնարավորություն է տալիս ճշգրիտ վերարտադրելու իրականությունը, ճանաչելու նրա օրինաչափությունները և վստահորեն ասելու, թե ուր է տանում զարգացումը։ Չէ որ փաստ է, որ Մարքսը հանճարեղ կերպով կանխորոշեց, որ բուրժուական հասարակության մեջ դասակարգային պայքարի սրումը անխուսափելիորեն կհանգեցնի պրոլետարիատի դիկտատուրային, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանին։

Այդ գիտական կանխատեսությունն արդեն իրականացել է երկրագնդի նշանակալից մասում։ Հետևապես, գիտական կանխատեսությունները միանգամայն հնարավոր են և առանց դրանց անհնար է ղեկավարել հասարակության առաջընթացը։

Մերժելով գիտական կանխատեսության հնարավորությունը, հակակոմունիզմի ներկայացուցիչներն իրենց սլաքներն ուղղում են ամենից առաջ շարժման անխուսափելիության, այսինքն՝ առաջադիմական ուժերի հաղթանակի անխուսափելիության սկզբունքի դեմ։ Հակակոմունիստներից մեկը՝ Ե. Խաթանասյանը, գրում է. «Գիտության բազում փորձերը և մարդու կենսափորձը ժխտում են առաջընթացի անխուսափելիությունը» («Բագին», 1963, № 1, էջ 63)։ Արդյոք ճի՞շտ միտք է դա։ Կենսաբանական գիտություններն ապացուցում են, որ միաբջիջ օրգանիզմների առաջանալուց հետո կենդանական աշխարհի զարգացումը մշտապես ընթացել և այժմ էլ շարունակում է ընթանալ պարզից դեպի բարդը, համեմատաբար անկատար օրգանիզմներից դեպի ավելի կատարյալները, օրինակ, կապկից դեպի մարդը։ Դարվինը նկատել է, որ առաջընթաց շարժման պրոցեսում պատահում է նաև հետընթաց շարժում, բայց այդ բանը միշտ էլ սահմանափակվում է կենդանու մի որևէ տեսակի մի ինչ-որ հեռավոր նախորդի այս կամ այն մասնակի հատկանիշի կրկնությամբ։ Օրինակ, պատահում է, որ ընտանի աղավնին ունենում է իր հեռավոր նախորդի գունավոր փետուրներ։ Սակայն դեռ չի արձանագրված ոչ մի փաստ, որով կարելի լինի ապացուցել, թե կենդանին վերադարձել է իր չզարգացած նախորդի վիճակին, թե, օրինակ, մարդը վերադարձել է կապկի վիճակին։ Այդ ամենը ապացուցում են, որ մարքսիստներն իրավացի են, որ առաջընթացն անխուսափելի է։

Ծնունդ առնելով հնի ընդերքում, նորն աստիճանաբար հասունանում է և ապա գրավում է հնի տեղը։ Այդպես են զարգացել ոչ միայն բույսերն ու կենդանիները, այլև մարդկային հասարակությունը։ Կապիտալիստները թափում էին ամեն ճիգ ու ջանք և անգամ դրակոնյան միջոցառումներ գործադրում բանվորների դեմ, որպեսզի սոցիալիզմը երբեք չհաղթանակի, բայց նրանց չհաջողվեց կանգնեցնել հասարակության բնական առաջընթացը ո՛չ 1917 թվականի հոկտեմբերին և ո՛չ էլ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ։ Սոցիալիզմն արդեն հաղթանակել է մի շարք երկրներում։

Այսպիսով, ինչպես գիտությունը, այնպես էլ մարդկանց կենսափորձը յուրաքանչյուր քայլափոխին հերքում են Խաթանասյանի «տեսությունը»։ Առաջավորը և նորը, հիրավի, անհաղթահարելի են։ Առաջընթաց շարժումը հակասությունների սրման և լուծման այն անընդհատ պրոցեսն է, որի ընթացքում հինը կործանվում ու ոչնչանում է և նրա տեղը գրավում է նորը, կենսունակը։ Այլ կերպ ասած, առաջընթաց շարժումը նորի և հնի մշտնջենական գոյակցության ժխտումն է։ «Ո՛չ»— ասում է Խաթանասյանը,— կա երկընտրանքի մեկ ուրիշ ուղի, հաշտության մի ապրելաձև ստեղծելու, ուր բացարձակ կոչված պայքարը դադարի և գոյանա մի համակեցություն...» (նույն տեղը)։ Բայց մի՞թե դա հնարավոր է։ Եթե ֆեոդալները չկարողացան խաղաղ համակեցություն հաստատել ստրկատերերի, իսկ կապիտալիստներն էլ ֆեոդալների հետ, չնայած որ նրանք բոլորն էլ շահագործողներ էին, հապա ինչպե՞ս կարող է բանվոր դասակարգը խաղաղ համակեցություն հաստատել կապիտալիստների հետ, երբ նա հանրային, սոցիալիստական սեփականության կողմնակից է, իսկ բուրժուազիան՝ մասնավոր սեփականության կողմնակից, երբ սոցիալիստական հասարակարգը կարելի է կառուցել միայն կապիտալիզմի ոչնչացման միջոցով։ Այդպես է ուսուցանում պատմությունը։

Հակակոմունիզմի պրոպագանդիստները չեն ցանկանում հաշվի առնել պատմությունը, կյանքի փաստերը, իրականության օբյեկտիվ օրենքները։ Նրանք ցանկանում են ամեն գնով կասեցնել հասարակության առաջընթացը դեպի սոցիալիզմ և փրկել կապիտալիզմը։ Այսպես, Ժ. Ա. Պապիկյանի կարծիքով «իմպերիալիստական դրամատիրությունը... սկսած է նկատելի չափով մը գործածել կարգ մը ընկերավարական զենքեր և արդիական միջոցներ» («Համաշխարհային արդիացում և բարեշրջում», 1935, Բեյրութ, էջ 62)։ Նա գտնում է, որ այդ միջոցները նպատակ ունեն ապահովելու «իմացական մըր-

ցակցության ավելի մեղմ ու ազնիվ ձևեր» (էջ 109)։ Իսկ ի՞նչ «ազնիվ ձևեր» կամ զենքեր են դրանք։ Բանից պարզվում է, որ դրանք այն հրանոթներն են, որոնք «կգործածվեն... ամբարտավան և անսաստող ազգերն ու դասակարգերը պատժելու համար» (էջ 164)։ Ասված է բավական պարզորոշ։ Այնինչի մասին մտածում է բուրժուական դիվանագետը, իր լեզվից թռցնում է բուն ռեակցիոները, որովհետև սա դիվանագիտության կարիք չի զգում։

Բայց արդյոք հրանոթները կարո՞ղ են փոխել հասարակության զարգացման օբյեկտիվ ընթացքը։ Իմպերիալիստական բուրժուազիան իր ամբողջ հույսերը դրել է այդ հրանոթների վրա, ուստի նա հրաժարվում է զինաթափումից, ատոմային և ջրածնային ռումբերը ոչնչացնելու, փոխադարձ չհարձակման պայմանագիր կնքելու սովետական առաջարկություններից։ Նա ամեն կերպ ճնշում է գաղութային ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը, ձգտելով կասեցնել սոցիալիզմի հաղթանակն ամենուր։

Սակայն դրանք զուր ջանքեր են։ Սոցիալիզմն արդեն համաշխարհային սիստեմ է, նրա կողմնակիցների թվում են ո՛չ միայն սոցիալիստական երկրների ժողովուրդները, այլև կապիտալիստական աշխարհի բանվորների ու աշխատավոր գյուղացիության, ինտելիգենցիայի, ինչպես նաև մանր արտադրողների ճնշող մեծամասնությունը։

Իմպերիալիզմի դեմ մեր օրերում հերոսական պայքար են մղում գաղութային և կիսագաղութային երկրների ստրկացված ժողովուրդները։ Հրանոթներով չի կարելի լռեցնել նրանց։ Նրանք բոլորն էլ ցանկանում են սոցիալիզմ, այնպիսի մի հասարակություն, որտեղ շահագործումից ու կեղեքումից ազատված մարդը կզբաղվի միայն ստեղծագործական աշխատանքով։

Անկարելի է կասեցնել այդ շարժումը՝ մարդկային հասարակության առաջընթացը դեպի կոմունիզմ։





# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՍՈՎԽՈԶՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ ԱՊԱՐԱՏԸ

Ե. ԱՍՅԱՏՐՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի քարտուղար, ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների սովետի պարտիական և պետական վերահսկողության կոմիտեի նախագահ

Վերջին տարիներս մեր պարտիան իրագործել է մի շարք կարևոր միջոցառումներ՝ գյուղատնտեսության ղեկավարումն արմատապես բարելավելու նպատակով։ Այդ գործում խոշոր դեր կատարեց և կյանքում իրեն արդարացրեց պարտիական կազմակերպությունների վերակառուցումը արտադրական սկզբունքով։ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի անցյալ տարվա դեկտեմբերյան և այս տարվա փետրվարյան պլենումների որոշումները մեծ խթան հանդիսացան գյուղատնտեսությունն ինտենսիվ վարելու համար։ Այդ որոշումները մեր կադրերին զինում են՝ նպատակասլաց ձևով օգտագործելու այն ռեզերվներն ու հնարավորությունները, որոնք ստեղծվում են քիմիական արդյունաբերության, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացիայի և ոռոգման սիստեմների զարգացման շնորհիվ։

Նշելով գյուղատնտեսության ինտենսիվացման ուղին՝ կոմունիստական պարտիան ու սովետական կառավարությունը զգալի միջոցներ են ներդնում գյուղատնտեսության արագ վերելքն ապահովելու համար։ Բավական է նշել, որ միայն արտադրական նպատակով երկրի գյուղատնտեսությանն այս տարի հատկացվել է 5 միլիարդ 400 միլիոն ռուբլի։

Գյուղատնտեսության արտադրությունը հաջող վարելու համար անհրաժեշտ է բանիմաց, կոնկրետ ղեկավարել այն, ճիշտ ընտրել և նպատակահարմար դասավորել կադրերը։ Այս մասին նշված է պարտիայի Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումներում, այդ հարցին բազմիցս անդրադարձել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը իր ելույթներում և գյուղատնտեսության զարգացման հարցերին վերաբերող իր նամակներում՝ հասցեագրված ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությանը։

Այս առնչությամբ պակաս կարևորություն չունի կոլտնտեսություններում և սովխոզներում արտադրության կառավարման սիստեմը բարելավելու հարցը։ ՍՄԿՊ Կենտկոմը բազմիցս մատնանշել է կառավարչական ապարատի կառուցվածքի բարելավման անհրաժեշտությունը, նկատի ունենալով վարչական և սպասարկող անձնակազմի զգալի կրճատումը և այդ ասպարեզում գո-

յություն ունեցող շռայլումների վերացումը։ Անդրադառնալով այդ հարցին, ընկեր Ն. Ս. Խրուշչովը գրում է. «Մեզ մոտ շատ է խոսվում վերակառուցման մասին, բայց պետք է արդեն խոսքից գործի անցնել։ Այժմ հարկավոր է արագացնել կոլտնտեսությունների և սովխոզների կառավարչական ապարատի կառուցվածքի մշակումը, մշակել հաշվառման սիստեմը այն հաշվով, որպեսզի պարզեցվի այդ ապարատը, նվազագույնի հասցվի հաշվային աշխատողների թիվը։ Պետք է այնպես անել, որպեսզի մշակվեն հաշվառման ավելի պարզ ձևեր։ Թերևս հարկավոր կլինի ստեղծել կոլտնտեսությունների և սովխոզների համար համապատասխան հաշվիչ մեքենաներ, սովորեցնել կադրերին, որպեսզի նրանք կարողանան աշխատել այդ հաշվիչ մեքենաների վրա։ Դա հնարավորություն կտա մինչև նվազագույնը կրճատելու այն հսկայական գրասենյակային ապարատը, որն այժմ աճել է կոլտնտեսություններում և սովխոզներում։ Հարկավոր է նվազագույնի հասցնել սովխոզների բաժանմունքների վարչական ապարատը, այնպես անել, որպեսզի տառացիորեն մնան միայն աշխատող մարդիկ, որոնք նյութական արժեքներ են ստեղծում, և ոչ թե հաշվառողներ, հաշվարարներ ու հաշվապահներ։ Դա՝ բյուրոկրատական կիտվածք է. հարկավոր է կրճատել և նվազագույնի հասցնել վարչա-կառավարչական ապարատը»։

Վարչա-կառավարչական և սպասարկման ապարատի կատարելագործման, կրճատման և էժանացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումները կատարելու նպատակով Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի պարտիական-պետական վերահսկողության կոմիտեն վերջերս ստուգեց ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների ու սովխոզների վարչական ապարատների վիճակը։ Այն հնարավորություն տվեց ի մի բերելու այդ ասպարեզում կուտակված դրական փորձը և, միաժամանակ, լուրջ թերություններ հայտաբերելու։

Ստուգումը նախապատրաստելու և կազմակերպված անցկացնելու համար հրավիրվեց գյուղական արտադրական վարչությունների արհմիութենական տեղական կոմիտեների նախագահների և ստուգման գործում ընդգրկված մասնագետների սեմինար-խորհրդակցություն։ Հրահանգչական խորհրդակցություններին մասնակցեցին նաև կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական-պետական վերահսկողությանը օժանդակող խմբերի նախագահները։

Կոլտնտեսություններն ու սովխոզները ստուգելու համար ստեղծվեցին ավելի քան 250 բրիգադա, որոնցում ընդգրկվեցին մինչև 2 հազար մարդ՝ կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների, պարտիական կոմիտեների աշխատողներ, գյուղատնտեսության մասնագետներ և պարտիական-պետական վերահսկողության օրգանների ակտիվիստներ։

Ստուգման արդյունքները հանրագումարի են բերել պարտիական կոմիտեները՝ պարտիական-պետական վերահսկողության կոմիտեների և կոլտնտեսային-սովխոզային արտադրական վարչությունների հետ միասին. յուրաքանչյուր տնտեսության համար նրանց մշակած կոնկրետ առաջարկությունները քննարկվել են կոլտնտեսականների ընդհանուր ժողովներում և սովխոզների տնտեսական ակտիվի նիստերում։

Ռեսպուբլիկայի շատ սովխոզներ ու կոլտնտեսություններ արդյունավետ մեծ աշխատանք կատարեցին տնտեսության կառավարման կառուցվածքը



պարզեցնելու և վարչա-կառավարչական ապարատի պահպանման ծախսերը զգալիորեն կրճատելու ուղղությամբ։ Այդ տեսակետից օրինակելի է Ախուրյանի արտադրական վարչության Ազատան գյուղի կոլտնտեսությունը։ Այստեղ 1465 կոլտնտեսականներ աշխատում են խոշոր հողատարածություններում, աճեցնում են հացահատիկ, շաքարի ճակնդեղ, եգիպտացորեն, կերախոտեր. մեծ է խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը, կոլտնտեսությունն ապահովված է գյուղատնտեսական մեքենաներով։ Ունենալով այսպիսի բազմաճյուղ տնտեսություն, արտելում մեծ աշխատանք է կատարվել անարտադրողական ծախսերը կրճատելու ուղղությամբ։ Խոշորացվել են բրիգադաները, զգալիորեն կրճատվել է վարչա-կառավարչական և սպասարկող անձնակազմը, կարգավորվել է աշխատանքի վարձատրումը։ Այս և մի շարք այլ միջոցառումների շնորհիվ նույնիսկ բերքատվության տեսակետից անբարենպաստ 1963 թվականին ստացվեց հացահատիկային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի համեմատաբար բարձր բերք և ապահովվեց անասնապահության մթերատվությունը։ Ընդ որում տնտեսության վարչա-կառավարչական աշխատողները կազմել են աշխատունակ կոլտնտեսականների միայն 3,4 տոկոսը։

Այսպիսի օրինակներ կարելի է բերել Հոկտեմբերյանի արտադրական վարչության Մրգաշատ և Նալբանդ գյուղերի, Սևանի արտադրական վարչության Սոլակ գյուղի կոլտնտեսությունների, Ստեփանավանի կաթնա-անասնաբուծական սովխոզի և շատ այլ տնտեսությունների աշխատանքի փորձից։

Դրա հետ մեկտեղ, ինչպես ցույց տվեց ստուգումը, շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում անբավարար են կատարվել պարտիայի և կառավարության ցուցումները վարչա-կառավարչական և սպասարկման ապարատի կատարելագործման, կրճատման և էժանացման մասին։

Այդ կարևոր գործի նկատմամբ ձևական մոտեցման հետևանքով շատ տնտեսություններում վարչա-կառավարչական և սպասարկման ապարատը ոչ միայն չի կրճատվել, այլև, 1962 թվականի համեմատությամբ, զգալիորեն մեծացել է, դրա պահպանման ծախսերն ավելացել են։

1963 թվականին ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում վարչա-կառավարչական աշխատողների միջին տարեկան թիվը կազմել է աշխատունակ կոլտնտեսականների ընդհանուր թվի 8,5 տոկոսը, որը գյուղատնտեսական արտելի կանոնադրությամբ նախատեսվածից շատ բարձր է։ Այդ ապարատի պահպանման ծախսերը կազմել են կոլտնտեսականների աշխատանքի վարձատրման ֆոնդի 14,2 տոկոսը, այդ թվում Իջևանի արտադրական վարչության տնտեսություններում՝ 18,5, Սևանի արտադրական վարչության տնտեսություններում՝ 16 տոկոս։

Վարչա-կառավարչական և սպասարկման ապարատի հաստիքները հատկապես ուռճացած են Մարտունու, Շամշադինի, Էջմիածնի, Աշտարակի, Անիի, Բասարգեչարի և մի շարք այլ արտադրական վարչությունների տնտեսություններում, որտեղ 8—10 կոլտնտեսականին ընկնում է կառավարման և սպասարկման ոլորտում զբաղված մեկ աշխատող։

Այսպես, Կրասնոսելսկի արտադրական վարչության Կրասնոսելսկ գյուղի կոլտնտեսությունը, որտեղ կա 386 աշխատունակ կոլտնտեսական, ուներ վարչա-կառավարչական և սպասարկման ապարատի 51 հաստիքային միավոր, իսկ միևնույն արտադրական վարչության Ջիվիլիի կոլտնտեսու-

թյունում յուրաքանչյուր 5 աշխատունակ կոլտնտեսականին ընկնում էր կառավարման և սպասարկման անձնակազմի մեկ աշխատող։

Վարչա-կառավարչական և սպասարկման ապարատում մեծ շռայլություններ են բացահայտվել նաև մի շարք այլ արտադրական վարչությունների կոլտնտեսություններում։ Այսպես, օրինակ, կոլտնտեսականների ընդհանուր թվի նկատմամբ կառավարման և սպասարկման անձնակազմը Նոյեմբերյանի արտադրական վարչության Արդվի և Կողբ գյուղերի կոլտնտեսություններում համապատասխանորեն կազմել է 15 և 12,5 տոկոս, Սպիտակի արտադրական վարչության Շենավան և Վահագնի գյուղերում՝ 14,9 և 12, Գորիսի արտադրական վարչության Ն. Առաջաձոր, Արավուս, Մալդաշ գյուղերում՝ 15—20 տոկոս, Սևանի արտադրական վարչության Աղավնաձոր, Մարմարիկ, Ծովագյուղ, Ցամաքաբերդ գյուղերում՝ 15—17 տոկոսի։ Առանձին կոլտնտեսություններում վարչա-կառավարչական և սպասարկման անձնակազմի պահպանման ծախսերն ավելի մեծ են։ Աշտարակի արտադրական վարչության Օշական գյուղի կոլտնտեսություններում դրանք կազմում էին 22, Գորիսի արտադրական վարչության Շունուխի կոլտնտեսությունում՝ 27,5, Սիսիանի արտադրական վարչության Սառնակունքի կոլտնտեսությունում՝ 28,6 տոկոս և այլն։

Ստուգմամբ պարզվել է, որ մի շարք տնտեսություններում անհարկի պահվել են մեծ քանակությամբ հաշվային աշխատողներ, առաքիչներ, բրիգադների և ֆերմաների հաշվառողներ, պահակներ և այլ աշխատողներ։

Ռեսպուբլիկայում կոլտնտեսությունների վարչությունների նախագահների 29 ազատված տեղակալներից միայն Մարտունու արտադրական վարչության կոլտնտեսություններում կային 10 նախագահի տեղակալներ, մինչդեռ այդ վարչության կոլտնտեսությունների աշխատանքի ծավալն ավելի մեծ չէ մյուս արտադրական վարչությունների շատ կոլտնտեսությունների աշխատանքի ծավալից։

Ծանոթանալով գործի վիճակին, նպատակահարմար է գտնվել կրճատել կոլտնտեսությունների նախագահների ազատված տեղակալների պաշտոնը, նրանց պարտականությունները դնել կոլտնտեսությունների գլխավոր (ավագ) մասնագետների վրա։ Կոլտնտեսականների ընդհանուր ժողովները հավանություն են տվել այս միջոցառմանը։

Շատ կոլտնտեսություններում մեծածավալ կառավարչական ապարատ ստեղծելը տեղի է ունեցել չափազանց մանր արտադրական բրիգադներ, անասնապահական ֆերմաներ, ինչպես նաև ինքնուրույն տրակտորային բրիգադներ կազմակերպելու հետևանքով։

Առանձնապես մանր-արտադրական բրիգադներ կան Սևանի, Աշտարակի, Նոյեմբերյանի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, էջմիածնի, Կրասնոսելսկի և մի շարք այլ արտադրական վարչությունների շատ կոլտնտեսություններում։ Օրինակ, չնայած Սևանի արտադրական վարչության Այրիվանքի կոլտնտեսությունն ունի մեկ դաշտավարական բրիգադ, ստեղծել է նաև առանձին տրակտորային բրիգադ՝ 3 տրակտորով։ Աշտարակի արտադրական վարչության Օշական գյուղի կոլտնտեսությունում ստեղծվել են 13 մանր այգեգործական բրիգադներ, որոնցից յուրաքանչյուրին միջին հաշվով հատկացվել են ընդամենը 26 հեկտար խաղողի և 7 հեկտար պտղատու այգիներ։ Դրանից բացի, կոլտնտեսությունն ունի նաև մեկ դաշտավարական բրիգադ,



դրին ամրացված է 57 հեկտար հացահատիկի, 2 հեկտար ոլոռնի և 3 հեկտար
եգիպտացորենի ցանքատարածություն։
Առանձին կոլտնտեսություններում մանր բրիգադների խոշորացման
փոխարեն կատարվել է դրանց ապախոշորացում։ Մարտունու արտադրական
վարչության Հացառատ գյուղի կոլտնտեսությունում մինչև 1963 թվականը
կային 4 տրակտորա-դաշտավարական բրիգադներ. 1963 թվականին դրանք
վերածվեցին 8 դաշտավարական և մեկ ինքնուրույն տրակտորային բրիգա-
դաների։ Նույն վարչության Երանոս գյուղի կոլտնտեսությունում կային մեկ
տրակտորային և 8 դաշտավարական բրիգադներ, որոնցից յուրաքանչյու-
րին ամրացված էր 78 հեկտար հացահատիկի, 7 հեկտար ծխախոտի, 1,5
հեկտար բանջարեղենի, 67 հեկտար բազմամյա խոտերի ցանքատարածու-
թյուն։
Շատ կոլտնտեսություններում ստեղծվել էին մանր անասնապահական
ֆերմաներ, որոնք ունեին իրենց ազատված վարիչները։ Ախուրյանի արտա-
դրական վարչության Ախուրյանի կոլտնտեսությունում, որն ունի 810 գլուխ
խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում 250 կով, կային 2 ինքնուրույն ֆեր-
մաներ՝ ազատված վարիչներով, որոնցից ամեն մեկին տարեկան գրանց-
վում էր 600 աշխօր։ Այստեղ անասնապահության յուրաքանչյուր 4 աշխա-
տողին ընկնում էր կառավարման և սպասարկման անձնակազմի մեկ աշխա-
տող։
Ինչպես վերևում նշեցինք, ռեսպուբլիկայում կան բազմաթիվ կոլտնտե-
սություններ, որոնք ունեն համեստ վարչական ապարատ, որով ոչ միայն
«յոլա են գնում», այլև կարողանում են կանոնավոր ղեկավարել տնտեսությու-
նը, անթերի կատարել բերքատվության և անասնաբուծական մթերքների ար-
տադրության պետական առաջադրանքները։ Այս առաջավոր տնտեսություննե-
րի օրինակին պետք է հետևեն մյուս կոլտնտեսություններն ու սովխոզները,
նվազեցնեն իրենց վարչական ապարատում աշխատողների կազմը։ Պետք է
հասնել այն բանին, որպեսզի արտադրության ոլորտում զբաղվեն ավելի շատ
մարդիկ։
Կոլտնտեսությունների վարչությունների, սովխոզների ղեկավարների և
պարտիական կազմակերպությունների կողմից յուրաքանչյուր տնտեսության
կոնկրետ տնտեսական առանձնահատկությունների բազմակողմանի ուսում-
նասիրման հիման վրա նախատեսված է վարչա-կառավարչական անձնա-
կազմի թիվը կրճատել կոլտնտեսություններում 1727 և սովխոզներում 293
միավորով, այդ թվում 192 բրիգադավարներ, 85 ֆերմայի վարիչներ, 147
հաշվային աշխատողներ, 192 պահեստապետներ և առաքիչներ, 18 կոլտնտե-
սությունների նախագահների տեղակալներ, այլ սպասարկող անձնակազմից
850 հոգու և այլն, այսինքն՝ վարչա-կառավարչական և սպասարկման անձ-
նակազմի ընդհանուր թվի 12 տոկոսը։ Դրա շնորհիվ տարեկան կստացվի
մեկ միլիոն 228 հազար ռուբլու տնտեսում։
Կոլտնտեսականների ընդհանուր ժողովների որոշմամբ կոլտնտեսու-
թյուններում փաստորեն արդեն կրճատվել է 1127 միավոր՝ աշխատանքի
վարձատրման 721 հազար ռուբլի գումարով, սովխոզներում՝ 293 միավոր՝
219 հազար ռուբլի աշխատավարձի ֆոնդով։ Ձեռնարկված միջոցառումների
շնորհիվ վարչա-կառավարչական և սպասարկման անձնակազմի պահպան-
ման ծախսերն արդեն կրճատվել են Աշտարակի արտադրական վարչության

կոլտնտեսություններում 166 հազար ռուբլով և սովխոզներում՝ 7,4 հազար
ռուբլով, Անիի արտադրական վարչության կոլտնտեսություններում և սով-
խոզներում՝ համապատասխանորեն 121 և 46,8 հազար ռուբլով, Սպիտակի
արտադրական վարչության տնտեսություններում՝ 48 և 10 հազար ռուբլով։

Վարչական ապարատի կրճատման պրոբլեմը խոշոր նշանակություն ու-
նի հատկապես մանր սովխոզներ ու կոլտնտեսություններ ունեցող շրջանների
համար։ Այստեղ կոլտնտեսությունը կամ սովխոզը, որը երբեմն մշակում է
ընդամենը մի քանի հարյուր հեկտար հողատարածություն, ունի նախագահ,
տեղակալ, գյուղատնտես, հաշվապահ, հաշվետար, հաշվապահի տեղակալ-
ներ, հաշվառողներ։ Վարչակազմը շատ է, իսկ նյութական արտադրության
ոլորտում աշխատողները համեմատաբար քիչ։ Այդպիսի տնտեսություննե-
րում կարելի է գործը վարել երկու-երեք ազատված աշխատողով, նյութական
քաջալերանք նախատեսելով աշխատանքի համատեղման համար, ելնելով
տնտեսության արտադրած պրոդուկցիայից, նրա ինքնարժեքից։

Հայաստանի կոմպարտիայի Կենտկոմի և Հայկական ՍՍՌ Մինիստրների
սովետի որոշման համաձայն, ներկայումս անհրաժեշտ միջոցներ են կիրառ-
վում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների վարչա-կառավարչական անձնա-
կազմի աշխատանքի վարձատրումը կարգավորելու համար, ելնելով արտա-
դրանքի ծավալից ու բնույթից, որն, անտարակույս, կնպաստի կառավարչա-
կան ապարատի հետագա էժանացմանը։

Պարտիական կոմիտեներն արտադրական վարչությունների հետ միասին
պետք է շարունակեն ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզնե-
րում վարչա-կառավարչական ապարատի հետագա կատարելագործման հնա-
րավորությունները հետազոտելու աշխատանքը, նկատի ունենալով հաստի-
քային պաշտոնների առավելագույն համատեղումը և նրանց կրճատումը։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը ՍՍՌՄ Գերագույն սովետի վեցերորդ գումարման
չորրորդ սեսիայում տված զեկուցման մեջ հանրագումարի բերելով գյուղա-
տնտեսության բնագավառում ձեռք բերած մեր երկրի նվաճումները, միաժա-
մանակ նշեց այն միջոցառումները, որոնց իրագործումով ավելի բարձր թա-
փով կզարգանա գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Որքան
փոքր, ճկուն ու գործունյա լինի ամեն մի տնտեսության ապարատը, այնքան
հաջող կընթանան նրանց գործերը։



# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԻՆՉ ՏԵՍԱՆՔ ՍՏԱՎՐՈՊՈԼՈՒՄ

Երկար ժամանակ չի անցել պարտիայի Կենտրոնական կոմիտեի նոյեմ-
բերյան (1963 թ.) և փետրվարյան (1964 թ.) պլենումներից, սակայն դրանց
որոշումների կենսագործման ուղղությամբ դրական և ուսանելի փորձ է կու-
տակվել Ստավրոպոլի երկրամասում, և այդ էր պատճառը, որ Հայաստանի
կոմպարտիայի Կենտկոմի մի խումբ աշխատողներ գործուղվեցին այնտեղ,
տեղում ծանոթանալու նրանց ձեռք բերած դրական փորձի հետ։

Արտադրական սկզբունքով գյուղատնտեսության և արդյունաբերության
ղեկավարումը վերակառուցելու կապակցությամբ այստեղ ստեղծվել են կոլ-
տնտեսային ու սովխոզային 17 արտադրական վարչություններ և պարտիա-
կան կոմիտեներ։ Պարտիայի երկրամասային կոմիտեի օգնությամբ նրանք
մշակել և կենսագործում են մի շարք կարևոր միջոցառումներ, որոնք հնարա-
վորություն են տալիս բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը,
իջեցնելու արտադրանքի ինքնարժեքը և խթանելու աշխատողների անձնական
շահագրգռվածությունը։

Արտադրական վարչությունների ստեղծման առաջին օրվանից մեծ աշ-
խատանք է կատարված վարչությունները և պարտիական կոմիտեները լավա-
գույն կադրերով կոմպլեկտավորելու ուղղությամբ։ Երկրամասի արտադրական
վարչության բոլոր պետերը և պարտկոմի քարտուղարները կամ գյուղատնտե-
սության մասնագետներ են, կամ հեռակա կերպով սովորում են գյուղատնտե-
սական բարձրագույն ուսումնական հաստատություններում։ Վարչությունների
ղեկավար աշխատողները գյուղատնտեսության մասնագետներ են, ունեն կազ-
մակերպական աշխատանքի մեծ փորձ։ Լավ է համագործակցված վարչության
ու պարտկոմի աշխատանքը. յուրաքանչյուրն ունենալով հստակ պատկերա-
ցում իր ֆունկցիաների ու պարտականությունների մասին, բարեխղճորեն է
կատարում իր վրա դրված պարտականությունները։

Արտադրական վարչություններն ամենօրյա աշխատանք են կազմակեր-
պում կոլտնտեսություններում ու սովխոզներում, զբաղվում են գյուղատնտե-
սության մասնագիտացման, ինտենսիվացման, աշխատատար պրոցեսների մե-
քենայացման և նման մի շարք արմատական հարցերի լուծմամբ։

Պարտիական կոմիտեի աշխատողներն ամեն կերպ ջանում են բարձրաց-
նել պարտիական-քաղաքական աշխատանքի մակարդակը, սկզբնական պար-
տիական կազմակերպությունների մարտունակությունը, նրանց դերը տնտե-
սությունների ղեկավարման գործում, կազմակերպում և գլխավորում են սո-
ցիալիստական գործարար մրցությունը, ստեղծագործաբար կիրառում գիտու-

թյան և արտադրության առաջավոր ձևերն ու մեթոդները, սիստեմատիկաբար զբաղվում են կադրերի ուսուցման, նրանց ճիշտ տեղաբաշխման գործով։

Մեր ուսումնասիրած տնտեսություններում ու պարտիական կոմիտեներում ճշտորեն են կատարվում պարտիայի Կենտրոնական կոմիտեի ցուցումները վարչության ու պարտկոմների ֆունկցիաների մասին։ Պարտիական կոմիտեների աշխատողներն արտադրական վարչություններին օգնում են արտադրության կազմակերպման գործում, կոմիտեների բյուրոներում քննարկում են այնպիսի հարցեր, որոնք նպաստում են աշխատավորների մոբիլիզացմանն ու արտադրական պլանների կատարմանը։ Որպես կանոն, նրանք գլխավորապես քննարկում են քաղաքական, գաղափարական, կադրերի ուսուցման ու տեղաբաշխման, նրանց դաստիարակության և նման այլ հարցեր, իսկ արտադրությանը վերաբերող խնդիրները լուծվում են վարչությունների ղեկավարությամբ և մասնագետների օգնությամբ։

Պարտիական ապարատի գերակշռող մասը երիտասարդ աշխատողներ են, որոնց համար հաճախ հրավիրվում են սեմինար պարապմունքներ, որտեղ պարտիական շինարարությանը վերաբերող հարցերի շուրջ հանդես են գալիս պարտիական ղեկավար աշխատողները։

Պարտիական կոմիտեները և տնտեսությունների սկզբնական պարտկազմակերպությունները մեծ աշխատանք են տանում տնտեսությունների ղեկավար կադրերի ընտրության և մասսայական կադրերի ուսուցման ուղղությամբ. ամենուրեք ստեղծվել են ուսումնա-արտադրական կոմբինատներ, որտեղ սովորում են կոլտնտեսականները (շաբաթվա ընթացքում 3 օր 2-ական ժամ)։ Հովիվները, տրակտորիստները, կթվորները և այլ մասնագիտության աշխատողներ ուսուցումն ավարտելուց հետո ստանում են աշխատանքային համապատասխան կատեգորիա, որի հիման վրա էլ որոշվում է նրանց վարձատրության չափը։ Այդ մեծապես նպաստում է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Բրիգադավարների և ֆերմայի վարիչների կազմի 60 տոկոսն ունի բարձրագույն կրթություն։

Պարտիական կոմիտեների աշխատանքում հիմնականը պարտիական որոշումների կատարումն է։ Ն. Ս. Խրուշչովի նամակի հիման վրա պարտիական կոմիտեները և արտադրական վարչությունները մշակել են միջոցառումներ եղած ռեզերվների օգտագործման համար։ Այդ կապակցությամբ այստեղ հրավիրվում են սեմինարներ պարտկազմակերպությունների քարտուղարների և կոլտնտեսությունների նախագահների համար։ Դաշտավարական, տրակտորային բրիգադների և ֆերմայի վարիչների համար ստեղծված են առաջավոր փորձի ուսումնասիրման դպրոցներ։

Պարտիական կոմիտեների համապատասխան բաժիններն ամեն ամիս հրապարակում են բյուլետեններ, որտեղ ամփոփվում են տվյալ ամսվա սոցիալիստական մրցության արդյունքները, խրախուսվում են արտադրության առաջավորները, քննադատվում ետ մնացողները։

Քննարկելով մրցության արդյունքները, պարտիական կոմիտեն առաջավոր տնտեսությանը կամ ֆերմային է հանձնում փոխանցիկ կարմիր դրոշը, իսկ ետ մնացողներին պարտկոմի բյուրոյի որոշմամբ՝ հանձնում են «կոկորդիլոս», որի վրա գրված է. «Ձեր ֆերմայի վատ աշխատանքի պատճառով ետ եք պահում արտադրական վարչությունը»։

Երկրամասում տնտեսությունների մեծ մասը պայքարում է կոմունիստա-



կան աշխատանքի կոչման արժանանալու համար. մշակված են հատուկ պայ-
մաններ այդ նպատակով պայքարողների համար. սահմանված է հատուկ
գրքույկ, որը տրվում է շարժման մասնակիցներին։ Բացի դրանից, այդ կոչ-
ման արժանացածների բնակարանի աչքի ընկնող անկյունում փակցված է՝
«Այս տանն ապրում է կոմունիստական աշխատանքի համար պայքարող և այդ
բարձր կոչմանն արժանացած ընկ...» (նշված է կոմունիստական աշխատանքի
հարվածայինի անուն ազգանունը)։

Աշխատանքային կարգապահության հարցերով լավ են զբաղվում սկզբնա-
կան պարտիական կազմակերպությունները։ Առանձին դեպքերում, եթե կոլ-
տնտեսականն անհարգելի պատճառով 1—2 օր աշխատանքի դուրս չի գալիս,
նրա անուն ազգանունը փակցվում է գյուղի աչքի ընկնող անկյունում՝ ի տես
բոլորի։ Գյուղի ռադիո հանգույցի միջոցով օրական մի քանի անգամ հայտն-
վում է աշխատանքից անհարգելի բացակայողների ցուցակը։ Նման միջոցա-
ռումներն իրենց դրական ներգործությունն են ունենում աշխատանքային կար-
գապահությունը խախտողների վրա։

Մեր եղած վայրերում պարտիական կոմիտեի յուրաքանչյուր տեսուչ-
պարտկազմակերպչին ամրացված է 2—3 տնտեսություն։ Նա մշտապես ար-
տադրության ոլորտում աշխատող մարդկանց հետ է, մեծ օգնություն է ցույց
տալիս տեղամասային պարտիական կազմակերպություններին և պարտիական
խմբերին՝ պարտիական-կազմակերպչական, քաղաքական-դաստիարակչական
աշխատանքները ճիշտ զուգորդելու, տնտեսության առջև դրված խնդիրները
հաջողությամբ լուծելու։ Նրանք օգնում են կոլտնտեսային աշխատավորու-
թյանը՝ արմատավորելու արտադրության առաջավորների փորձը։ Արդյունքն
ակնառու է. ներկայումս երկրամասում չկա ետ մնացող ոչ մի տնտեսություն,
իջել է արտադրանքի միավորի ինքնարժեքը, բարձրացել կոլտնտեսականների
նյութական շահագրգռվածությունը։

Կոլտնտեսություններում ճիշտ է կիրառվում նյութական շահագրգռվածու-
թյան սկզբունքը։ Տնտեսության բոլոր ճյուղերում տնտհաշվարկի կիրառումը
մեծապես նպաստել է բարձրացնելու մարդկանց պատասխանատվությունը,
շատ և որակով գյուղատնտեսական մթերքներ արտադրելու ձգտումը։ Երկրորդ
տարին է, ինչ իրագործվում է կոլտնտեսականներին երաշխավորված դրամա-
կան վարձատրության պրակտիկան։

Երկրամասի տնտեսությունների մեծ մասն ապահովված է փորձված մաս-
նագետներով։ Այստեղ մոտ 7.000 մարդ սովորում են գյուղատնտեսական
բարձրագույն ուսումնական տարբեր հաստատություններում։

Կոլտնտեսություններում մեծ ուշադրություն է նվիրվում աշխատանքի
կազմակերպման և հանձնարարված գործի նկատմամբ մարդկանց անձնական
պատասխանատվության բարձրացման հարցերին։ Յուրաքանչյուր բրիգադա-
վար, ֆերմայի վարիչ, տնտեսության մասնագետ իրեն հանձնարարված գործի
համար պատասխանատու է կոլտնտեսության վարչության առաջ։ Մարդկանց
պատասխանատվությունը բարձրացնելու գործում որոշակի դեր է խաղում սո-
ցիալիստական մրցությամբ ստանձնած պարտականությունների կատարման
սիստեմատիկաբար անցկացվող ստուգումը։ Եվ պատահական չէ, որ յուրա-
քանչյուր աշխատող պայքարում է ոչ միայն իր, այլև ընկերների ու ողջ կոլեկ-
տիվի ցուցանիշների համար։ Եթե մեկը ետ է մնում, մյուսները վերցնում են
նրա շեֆությունը և կարճ ժամանակամիջոցում նրան հանում են այդ վիճակից։

Նրանք տոնում են յուրաքանչյուրի ծննդյան օրը, հանդիսավոր կերպով նշում անբասիր աշխատանքի համար թոշակի գնացող ընկերների լավ աշխատանքը, որը մեծ չափով օգնում է երիտասարդ աշխատողների դաստիարակությանը։

Այստեղ լավ է կազմակերպված ցուցադրական ագիտացիան։ Մտնում ես պարտկոմ, վարչություն, կոլտնտեսության գրասենյակ, ֆերմա և առանց որևէ մեկի հետ խոսելու կարող ես լրիվ պատկերացում կազմել տնտեսության, արտադրության առաջավորների ու ետ մնացողների մասին։

Կոլտնտեսություններն ու սովխոզները մեծ աշխատանք են կատարել կատարելագործելու ցանքերի կառուցվածքը. քիչ բերքատու կուլտուրաների փոխարեն ցանում են առավել բերքատու և արժեքավոր կուլտուրաներ, որի շնորհիվ խիստ ավելացել են աշնանացան ցորենի, եգիպտացորենի, շաքարի ճակնդեղի ցանքատարածությունները։

Ստավրոպոլի մի շարք տերիտորիալ վարչություններում կազմակերպվել են խոշոր մեքենայացված օղակներ։ Այդ հնարավորություն է տալիս վերացնելու հողի ոչ ռացիոնալ օգտագործումը և մեծ չափով նպաստում է առանձին կուլտուրաների մասնագիտացված մշակությանը։ Այդ օղակներին երկար ժամանակով ամրացվում է 1000—1800 հեկտար հողամաս, որը հնարավորություն է տալիս կազմակերպելու մեքենաների խմբային աշխատանք, ամրացված հողատարածության վրա աճեցնելու մի քանի կուլտուրա և ապահովելու մեքենաների լրիվ ծանրաբեռնվածությունը։

Այստեղ լուրջ աշխատանք է կատարվում բարձր բերքատու սորտերի ցանքատարածություններն ընդարձակելու ուղղությամբ։ Վերջին տարում 849 հազար հեկտար ցանք է արված նախօրոք մշակված հողերի վրա։ Աշնանացանին հատկացված ամբողջ տարածության վրա ցանված են բարձր բերքատու սորտեր։ Օրինակ, «Բեզոստայա—1» սորտի ցորեն է ցանված 574 հազար հեկտարի վրա, որը կազմում է ամբողջ ցանքերի 56 տոկոսը. այդ սորտի ցանքը հնարավորություն է տալիս նշված տարածություններից տարեկան ստանալու ավելի քան 9—10 միլիոն փութ հացահատիկ։

Անցյալում անասնապահության հիմնական կերի բազան արոտավայրերը և ցանովի խոտհարքներն էին։ Այժմ կերի կայուն բազայի հիմքում ընկած են՝ եգիպտացորենը, շաքարի ճակնդեղը և բարձր բերքատու այլ կուլտուրաներ։ Երկրամասի տնտեսություններում ստեղծվել են խոշոր կաթնատնտեսական ֆերմաներ, որոնց թիվը հասնում է մոտ 1300-ի։ Դրանցից 666-ում կան՝ 100—200, իսկ 47-ում՝ 500 գլուխ կով։ Ամենամեծը Սովետական Ռուսաստան կոլտնտեսության ֆերման է, որն ունի 758 գլուխ կով, նախկին 150-ի փոխարեն։ Այստեղ արտադրանքի միավորի ինքնարժեքն իջել է ավելի քան 2 անգամ, իսկ աշխատանքային ծախսումները կրճատվել են 3 անգամ։

Երկրամասի կոլտնտեսությունները կիրառում են դրամական վարձատրություն։ Տրվում է լրացուցիչ վարձատրություն դրամով և մթերքներով։ Երկրամասի պարտիական կոմիտեն դեռևս 1963 թվականին որոշել է բոլոր տնտեսություններում կիրառել պարգև-ակորդային սիստեմի վարձատրությունը։

Մեքենայական պարկի ճիշտ օգտագործման շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։ Այստեղ ճիշտ են օգտագործում անվանի մեխանիզատորներ Վ. Պիրվեցկու և Վ. Սվետլիչնու փորձը։

Շաքարի ճակնդեղը մեծ աշխատատար կուլտուրա է։ Այստեղ ստեղծված է մի հարմարանք, որի շնորհիվ դաշտում ցանկացած հեռավորության վրա



կարելի է թողնել ցանկացած քանակությամբ բույսեր։ Միաժամանակ այն հնարավորություն է տալիս լավ հիմքերի վրա դնելու ցանքի հետագա մշակությունը։ Այստեղ ամենափոքր հացահատիկի տնտեսությունն ունի 5600, իսկ ամենամեծը՝ 47100 հեկտար վարելահող։ Ոչխարաբուծական սովխոզներում 7000-ից մինչև 130000 ոչխար կա. խոզաբուծական տնտեսություններում՝ 3900-ից մինչև 22400 գլուխ խոզ։

Նշանակալի չափով բարելավվել են կոլտնտեսականների ու բանվորների կուլտուր-կենցաղային պայմանները՝ երկշաբաթյա արձակուրդ, հիվանդության շրջանում միջին աշխատավարձի պահպանում (որոշակի տոկոսը), հանգստյան տների ուղարկում։ Կոլտնտեսականների աշխատանքը թեթևացնելու նպատակով կենտրոնացված է հացի թխումը և ճաշերի պատրաստումը. մատչելի գներով բաց է թողնվում սննդամթերք և այլն։

Երկրամասի վարչությունների տնտեսությունների կոլեկտիվներն ամենուրեք պայքարում են՝ ժամկետից շուտ կատարելու վերցրած սոցիալիստական պարտավորությունները և ընթացիկ տարում երկրին տալու 175 միլիոն փութ հաց, 220 հազար տոննա միս, 460 հազար տոննա կաթ, 31,6 հազար տոննա բուրդ և այլ գյուղատնտեսական մթերքներ։

Ե. ՄԵԼՔՈՆՅԱՆ
Խ. ՍԱՖԱՐՅԱՆ

## ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ Է ՊԵՏՔ

Կատարելով ՍՄԿՊ XXII համագումարի պատմական որոշումները, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններն զգալիորեն բարելավել են պարտիայի շարքերի ընդունելության գործը. պարտիայի շարքերը համալրվել են կոմունիզմի հազարավոր երիտասարդ շինարարներով՝ արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության առաջավորներով, սովետական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներով։ Անշեղորեն կիրառելով պարտիայի մեջ նոր ընդունվողների նկատմամբ անհատական մոտեցման և բազմակողմանի ուսումնասիրման սկզբունքը, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները վերջին 2 ½ տարվա ընթացքում ՍՄԿՊ շարքերը որպես անդամ ընդունել են 11.538 և անդամության թեկնածու՝ 10.729 մարդ։

Որպես դրական երևույթ պետք է նշել, որ վերջին տարիներս պարտիական կազմակերպությունները ծառայողներից պարտիայի նոր անդամներ ու թեկնածուներ ընդունելիս առավելությունը տալիս են ինժեներա-տեխնիկական անձնակազմին։ Այսպես, եթե 1955 թվականին պարտիայի շարքերն ընդունված ծառայողների թվում ինժեներա-տեխնիկական աշխատողները կազմում էին 62 տոկոս, ապա 1962 թվականին կազմեցին 70, իսկ 1963 թվականին՝ 72 տոկոս։ Երևանի 26 կոմիսարների անվան և Լենինյան շրջկոմների, Կիրովականի քաղաքային և Ալավերդու, Ղափանի, Մեղրու, Իջևանի արտադրական պարտիական կոմիտեներում 1963 թվականին պարտիայի անդամության թեկնածու ընդունված ծառայողների ընդհանուր թվի ավելի քան 85 տոկոսը ինժեներա-տեխնիկական աշխատողներ են։

Այդ և մյուս փաստերը ցույց են տալիս, որ ավելի բուռն է դարձել բանվորների, կոլտնտեսականների և սովետական ինտելիգենցիայի՝ կոմպար-

տիայի շարքերն ընդունվելու ձգտումը: Բավական է ասել, որ միայն 1963 թվականին 2 անգամ ավելի շատ թեկնածու է ընդունվել պարտիայի շարքերը, քան 1954 թվականին, 3 անգամ ավելի, քան 1953 թվականին: 1962, 1963 թվականներին Երևան քաղաքի 26 կոմիսարների անվան, Լենինյան, Բասարգեչարի, Ղափանի, Մարտունու և այլ շրջաններում պարտիայի շարքերն ընդունվելու համար 5—10 անգամ ավելի շատ դիմում է ստացված ու քննարկված, քան թե 1953 կամ 1954 թվականներին:

Պարտիայի շարքերը կատարվող ընդունելությունը սերտորեն կապված է երիտասարդ կոմունիստների մարքս-լենինյան դաստիարակության հետ: Հետևապես բավական չէ միայն պարտիայի շարքերում ընդունել արտադրության առաջավորներին, ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներին: Միաժամանակ անհրաժեշտ է պարտիայի մեջ նոր ընդունվածներին շրջապատել հոգատարությամբ, առանձնահատուկ ուշադրություն նվիրել պարտիայի անդամության թեկնածուների քաղաքական դաստիարակությանը:

Ներկայումս ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններում կան 5036 պարտիայի անդամության թեկնածուներ և երեք տարուց պակաս ստաժ ունեցող պարտիայի մոտ 14 հազար երիտասարդ անդամներ: Երևան քաղաքի Լենինյան, Սպանդարյան շրջկոմների, Լենինական քաղաքի, Մարտունու, Ղափանի և մի շարք այլ պարտկազմակերպություններում երիտասարդ կոմունիստները կազմում են բոլոր կոմունիստների 15—25 տոկոսը: Այդ հանգամանքը պարտկազմակերպություններից պահանջում է է՛լ ավելի բարձրացնել դաստիարակչական աշխատանքի մակարդակը, ավելի լուրջ ուշադրություն հատկացնել երիտասարդ կոմունիստների՝ լենինյան ոգով դաստիարակությանը:

Աշխատել երիտասարդ կոմունիստների հետ, նշանակում է ապահովել նրանց ակտիվ մասնակցությունը պարտիական ու հասարակական աշխատանքներին, դաստիարակել նրանց պարտիական ու պետական կարգապահությունը խստորեն պահպանելու ոգով, բարձրացնել նրանց ավանգարդային դերը արտադրության մեջ, պայմաններ ստեղծել յուրաքանչյուր թեկնածուի աճի ու առաջընթացի համար, գործնական մեծ օգնություն ցույց տալ քաղաքական ուսուցման ուղղությամբ: Դրա համար պարտկազմակերպությունները պետք է հետևեն, որպեսզի երիտասարդ կոմունիստներն ավելի ռացիոնալ օգտագործեն իրենց ժամանակը, համառ կերպով տիրապետեն գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումներին, խորանան իրենց մասնագիտության մեջ, կարողանան իրենց գիտելիքները կիրառել կյանքում, լրջորեն ուսումնասիրեն պարտիայի ծրագիրն ու կանոնադրությունը, առանց որի թեկնածուն չի կարող իրեն պատրաստ համարել պարտիայի անդամ ընդունվելու համար, քանի որ դրանք տալիս են այն մինիմում գիտելիքները, որոնք օգնում են թեկնածուին՝ հասկանալու պարտիայի նպատակներն ու խնդիրները, նրա կազմակերպական կառուցվածքը, պայքարի մեթոդներն ու ձևերը նրա առջև դըրված խնդիրների իրականացման համար:

Կենսագործելով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները՝ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել երիտասարդ կոմունիստների շրջանում: Օրինակ, Երևան քաղաքի Լենինյան, Շահումյանի պարտշրջկոմներին, Լենինականի, Դիլիջանի քաղկոմներին, ինչպես նաև որոշ արտադրական պարտկոմներին կից կազմակերպված են երիտա-



սարդ կոմունիստների կամ ՍՄԿՊ անդամության թեկնածուների մշտական գործող դպրոցներ: Այդ դպրոցներում յուրաքանչյուր ամիս տեղի են ունենում պարտիական շինարարության հարցերին նվիրված զեկուցումներ, զրույցներ, ուսումնասիրվում են պարտիայի ծրագիրը, կանոնադրությունը, ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի որոշումները և այլն:

Այդ գործում լավագույն աշխատանք են կատարել Լենինյան շրջանի ավտոդողերի, Կիրովի անվան, հայէլեկտրո գործարանների, ձեթօճառի կոմբինատի սկզբնական պարտկազմակերպություններում, ուր ամիսը 1 անգամ կազմակերպվում է երիտասարդ կոմունիստի օր և մանրամասն ուսումնասիրվում են ներպարտիական աշխատանքը, լսվում և պարզաբանվում են երիտասարդ կոմունիստներին հետաքրքրող ամենաբազմազան հարցերը: Եվ պատահական չէ, որ այդ ձեռնարկություններում երիտասարդները լայնորեն դրսևորում են իրենց ընդունակությունները, դառնալով արտադրության առաջավորներ, հանդես գալով նորարարական ու ռացիոնալիզատորական բազմաթիվ առաջարկություններով:

Երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքը լավ հիմքերի վրա է դրված նաև Շահումյանի շրջանի տրիկոտաժի I ֆաբրիկայի, ձեռնոցների ֆաբրիկայի, Լենինի անվան մետաքսի կոմբինատի և մի շարք այլ պարտկազմակերպություններում, ուր կազմակերպվում են հանդիպումներ հին բոլշևիկների, արտադրության առաջավոր մարդկանց հետ, որոնք իրենց անձնական օրինակով կարող են դաստիարակել երիտասարդ կոմունիստներին:

Բայց մեր բոլոր պարտկազմակերպությունները չեն, որ այդպես զբաղվում են երիտասարդ կոմունիստների դաստիարակությամբ: Մի շարք սկզբնական պարտկազմակերպություններ պարտիայի անդամության թեկնածուներին հիշում են միայն պարտիայի անդամ ընդունելու նախօրեին: Հիմնականում դրանով պետք է բացատրել, որ վերջին 2 տարվա ընթացքում պարտիայի շարքերից վտարվել կամ դուրս են մնացել ՍՄԿՊ անդամության 212 թեկնածուներ:

Երիտասարդ կոմունիստների հետ տարվող անբավարար աշխատանքով պետք է բացատրել նաև այն, որ Ղափանի, Էջմիածնի, Գորիսի և այլ պարտիական կոմիտեներում դեռևս կան մեծ թվով ՍՄԿՊ անդամության թեկնածուներ, որոնց հարցը ժամանակին չի քննարկվել ու լուծվել: Մի շարք սկզբնական պարտկազմակերպություններում, պարտիայի քաղկոմ-շրջկոմներում, արտադրական պարտկոմներում ասես թե չեն նկատում ժամկետանց թեկնածուներին, երբեմն անտարբեր, անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում նրանց նկատմամբ, նույնիսկ անհիմն կերպով ձգձգում նրանց գործի քննարկումը:

Բերենք մի քանի օրինակ. Էջմիածնի շրջանի Գեղանիստի սովխոզի սկզբնական պարտկազմակերպությունում ժամկետանց թեկնածու Ա. Հակոբյանին պարտիայի անդամ ընդունելու գործը ընդհանուր ժողովում լսվել է 1964 թվականի մարտի 9-ին, իսկ հաստատման համար արտադրական պարտկոմ է ներկայացվել մայիսի 8-ին: Այդ նույն կազմակերպությունում 1962 թըվականից ժամկետանց թեկնածու Ս. Հովհաննիսյանը 1963 թվականի դեկտեմբերին դիմել է պարտկազմակերպությանը՝ իրեն ՍՄԿՊ անդամ ընդունելու: Սկզբնական պարտկազմակերպության ընդհանուր ժողովը 1964 թվականի հունվարին քննության է առել նրա դիմումը և ընդունել է ՍՄԿՊ անդամ, սա-

կային կազմակերպության քարտուղար Խ. Ղուկասյանը նրա ընդունելության գործը Էջմիածնի արտադրական պարտկոմ է ներկայացրել միայն մայիսի 8-ին, այսինքն՝ 4 ամիս հետո։

Առանձին պարտկազմակերպություններում, երբեմն քաղաքացուն ընդունելով պարտիայի շարքերն իբրև թեկնածու, նրան այնպես են մոռանում, որ թեկնածուական ժամկետի մեծ մասը՝ 6—8 ամիսն անցնելուց հետո են միայն ընդունելության գործերը հաստատվում պարտիական կոմիտեում։ Օրինակ, Էջմիածնի քաղսովետի սկզբնական պարտկազմակերպությունը (քարտուղար Ջ. Աղաջանյան, կոմիտեի սպասարկող հրահանգիչ Ա. Տարասյան) 1963 թվականի հուլիսի 20-ին ՍՄԿՊ անդամության թեկնածու է ընդունել Գ. Պողոսյանին, բայց արտադրական պարտկոմը հարցը քննարկել և հաստատել է 1964 թվականի փետրվարի 27-ին, Ենգիջայի կոլտնտեսության պարտկազմակերպությունը (քարտուղար Շ. Սահակյան, սպասարկող տեսուչ Գ. Կարապետյան) Ժ. Հովհաննիսյանին, իսկ Ներքին Խաթունարխի կոլտնտեսության պարտկազմակերպությունը (քարտուղար Լ. Համբարձումյան, պարտկոմի տեսուչ Ս. Գևորգյան) Ս. Ասլանյանին ՍՄԿՊ անդամության թեկնածու են ընդունել դեռևս 1963 թվականի մայիսին, իսկ նրանց ընդունելության գործը արտադրական պարտկոմի բյուրոյում քննարկվել և հաստատվել է միայն 1964 թվականի փետրվարի 27-ին, այսինքն՝ այն ժամանակ, երբ ՍՄԿՊ կանոնադրությամբ նախատեսված թեկնածուական մեկ տարվա ստաժից թեկնածուի կարողությունների ու գիտելիքների ստուգման համար ընդամենը երեք ամիս էր մնում։ Էջմիածնի արտադրական կոմիտեն մեծ ձգձգումներով է քննարկել նաև այլ գործեր։ 1963 թվականի ընթացքում քննարկված գործերի կեսից ավելին կոմիտե է հասել ու հաստատվել սկզբնական պարտկազմակերպության քննարկումից 3—5 ամիս անց։

Պարտիայի շարքերի ընդունելության գործերի, երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի նկատմամբ նման անթույլատրելի ձգձգումների և անպատասխանատու վերաբերմունքի փաստեր կան նաև Կամոյի, Արարատի, Ղափանի և այլ պարտիական կազմակերպություններում։ Այս ո՛չ միայն ժամկետի ձգձգում է, այլև բյուրոկրատական անհոգի վերաբերմունքի արտահայտություն, որը վատ օրինակ է ծառայում երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործում։

Առանձին պարտկոմներ, խախտելով սահմանված 10 օրվա ժամկետը, պարտիական տոմսերը և թեկնածուական քարտերը կոմունիստներին հանձնում են 1—2 ամիս, երբեմն նույնիսկ ավելի, ուշացումով։ Եղակի չեն դեպքերը, երբ այս կամ այն ընկերոջը պարտիայի շարքերն ընդունելուց հետո մոռանում են նրան, չեն օգնում ու հետաքրքրվում նրա կյանքով։ Արդյունքը լինում է այն, ինչ կատարվեց Արտաշատի արտադրական պարտիական կոմիտեի 12 թեկնածուների հետ, որոնք 1961—1962 թվականին ընդունվելով ՍՄԿՊ անդամության թեկնածու, 1963 թվականին դուրս մնացին պարտիայի շարքերից։ Նույն բախտին արժանացան նաև Լենինականի պարտիական կազմակերպության 15 թեկնածուներ, որոնցից 5-ը պարտիայից դուրս մնացին 1964 թվականի առաջին եռամսյակում՝ որպես պարտիական կյանքից կտրվածներ և երկար ժամանակ անդամավճար չմուծողներ։

Պարտիայի անդամության թեկնածուների դաստիարակության բնագավա-



ռում հիմնական թերություններից մեկն էլ այն է, որ պարտիական կազմակերպությունները նրանց հետ ամենօրյա հետևողական աշխատանք չեն տանում։ Նրանց դաստիարակության հարցին անդրադառնում են դեպքից-դեպք, այն ժամանակ, երբ վերադաս օրգաններն ուսումնասիրում ու քննարկում են այդ հարցը, կամ, լավագույն դեպքում, նրանց հարցով հապճեպ զբաղվում ու քննության են առնում վիճակագրական հաշվետվությունները վերադաս պարտիական օրգաններին ներկայացնելիս, հաշվետու ամսվա վերջին օրերին, որպեսզի հաշվետվություններում չերևա, որ մեծ է ժամկետանց թեկնածուների թիվը։

Նման հապճեպության պայմաններում պարտիայի շարքերն ընդունվողը լուրջ պատասխանատվություն չի զգում պարտիայի հանդեպ։ Այստեղ արդեն բացառվում է անհատական մոտեցման հնարավորությունը, հաշվի չեն առնվում թեկնածուական ժամկետն անցնելու օբյեկտիվ, հարգելի և անհարգելի պատճառները։ Խոսքը վերաբերում է, հատկապես, սովետական բանակից զորացրված պարտիայի անդամության թեկնածուներին, որոնք թեկնածու ընդունվելուց 5—6 ամիս հետո զորացրվում են։ Պարտիական կազմակերպությունները փոխանակ նրանց նկատմամբ հոգատար վերաբերմունք ցուցաբերեն, ժամանակին աշխատանքի տեղավորեն, կապեն հարազատ գյուղի, կոլտնտեսային արտադրության հետ, պայմաններ ստեղծեն, որպեսզի արդյունավետ օգտագործվի նրանց թեկնածուական ստաժի մնացած ժամանակաշրջանը, ցուցաբերում են անտարբեր վերաբերմունք։ Հետևանքը լինում է այն, որ պարտիայի անդամության շատ զորացրված թեկնածուներ թողնում հեռանում են իրենց հարազատ գյուղից, քաղաքից և որոշ ժամանակից հետո դուրս են մնում պարտիայի շարքերից։ Բավական է ասել, որ միայն այս տարվա փետրվար-մարտ ամիսներին Սպանդարյանի շրջկոմում 6 զորացրված երիտասարդ թեկնածուներ դուրս են մնացել պարտիայի շարքերից։

Երբեմն էլ առանձին պարտիական կազմակերպություններ զորացրված ժամկետանց թեկնածուների հարցը քննարկելիս ցուցաբերում են ֆորմալ, ոչ օբյեկտիվ մոտեցում։ Հաշվի չեն առնում նրանց զորացրման հարգելի պատճառը և մերժում են նրանց ՍՄԿՊ շարքերը ընդունելու, քանի որ վերջիններս աշխատանքի նոր վայրում մեկ տարի համատեղ աշխատանքից ճանաչող ու երաշխավորող կոմունիստներ գտնելու հնարավորություն չեն ունենում, չնայած այն հանգամանքին, որ այդ երիտասարդ ընկերներն աշխատանքում ու կենցաղում, շրջապատում իրենց դրսևորում են միայն լավ կողմից և միանգամայն արժանի են պարտիայի անդամ լինելու։ Նման դեպքերում, պարտիական կազմակերպությունները, որպես բացառություն, այդպիսիների նկատմամբ պետք է ցուցաբերեն հոգատարություն, չպետք է շտապեն և, եթե զորացրվելու կապակցությամբ նրանք չեն կարողանում երաշխավորություններ ներկայացնել, որը հարգելի պատճառ է, ապա կարելի է սպասել և հնարավորություն տալ, որպեսզի աշխատանքի վերջին վայրում մեկ տարվա համատեղ աշխատանքից ճանաչող և երաշխավորող կոմունիստներ գտնվեն։ Դա կլինի ճիշտ և բնավ չի դիտվի իբրև ՍՄԿՊ կանոնադրության խախտում, ըստ որի թեկնածուական մեկ տարվա ժամկետը լրանալուց անմիջապես հետո պետք է նրա հարցը քննարկվի և լուծվի՝ ընդունել պարտիայի շարքերն իբրև անդամ, եթե նա ունի այդ արժանիքները և, կամ, մերժել նրա ընդունելության դիմու-

մը՝ համապատասխան պատճառաբանության նշումով։ Հարցի այլ, երրորդ լուծում պարտիայի նոր կանոնադրությունը չի նախատեսում։

ՍՄԿՊ նոր կանոնադրության մեջ կատարված այս փոփոխություններն ընդունվել են թեկնածուների շրջանում պարտկազմակերպությունների աշխատանքը բարելավելու և թեկնածուների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով։ Երիտասարդ կոմունիստների դաստիարակչական աշխատանքի թերությունները մեծ չափով բացատրվում են նրանով, որ որոշ պարտկոմներ խորամուխ չեն լինում սկզբնական պարտկազմակերպությունների գործունեության մեջ, հարկ եղած ուղղություն չեն տալիս նրանց գործունեությանը, քիչ են նրանց գործնական օգնություն ցույց տալիս։ Որոշ պարտկոմներ հազվադեպ են քննարկում պարտիայի շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների հետ կատարվող դաստիարակչական աշխատանքի հարցեր։ Նրանք չեն բարձրացնում սկզբնական պարտկազմակերպության քարտուղարների պատասխանատվությունը պարտիայի անդամության թեկնածուների դաստիարակման գործում։ Այդ հարցերը խիստ հազվադեպ և այն էլ ոչ խոր կերպով են լուսաբանվում նաև մեր մամուլում։



Երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները բազմազան են. դրանցից շատ կարևոր են պարտիական հանձնարարությունները, ժողովներում քննարկվող հարցերին նրանց մասնակից դարձնելը, նրանց հետ զրույցներ կազմակերպելը, մշտական գործող սեմինարներում, քաղաքական ուսուցման տարբեր օղակներում նրանց ընդգրկելը և այլն։ Այդ կարևոր ու պատասխանատու գործը հաջողությամբ առաջ տանելու համար պարտկազմակերպությունները պետք է սիստեմատիկաբար հանձնարարություններ տան երիտասարդ կոմունիստներին և հետևեն դրանց կատարմանը։

Պարտիական հանձնարարությունը դա երիտասարդ կոմունիստների հետ տարվող աշխատանքի պրակտիկայում ստուգված լավագույն ձևերից մեկն է, որի կատարման ընթացքում էլ դրսևորվում են կոմունիստների գործարար հատկանիշները, մասսաներին կազմակերպելու և առաջ տանելու նրանց ընդունակությունները։ Երիտասարդ կոմունիստների մոտ այդ դաստիարակում է կարգապահություն, պարտաճանաչություն, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվություն։ Դրանով բարձրանում է կոմունիստի ակտիվությունը, նա կոփվում, ավելի անմիջական մասնակցություն է ունենում կազմակերպության առջև ծառացած խնդիրների լուծմանը։

Անհրաժեշտ է սկզբնական պարտիական կազմակերպություններում ստեղծել այնպիսի պայմաններ, որ երիտասարդ կոմունիստը կարողանա ակտիվ մասնակցել պարտիական ժողովների հարցերի նախապատրաստմանն ու դրանց քննարկմանը, կատարել կոնկրետ հանձնարարություններ, խորապես զինվել մարքսիստական-լենինյան տեսությամբ։

ՍՄԿՊ շարքերը նոր անդամ կամ թեկնածու ընդունվողների որակական կազմի հետագա բարելավումը, ինչպես նաև երիտասարդ կոմունիստների ու պարտիայի անդամության թեկնածուների քաղաքական դաստիարակության



հարցը պարտիական աշխատանքի կարևորագույն բնագավառն է, որի վրա և պետք է լուրջ ուշադրություն դարձնեն սկզբնական պարտիական կազմակերպությունները, պարտիայի արտադրական, շրջանային և քաղաքային կոմիտեները։

Ա. ՋԱԼԻՆՅԱՆ
ՀԿՊ Կենտկոմի պարտիական միասնական տոմսի և վիճակագրական սեկտորի վարիչ։

## ԿՈԼԵԳԻԱԼՈՒԹՅՈՒՆԸ ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ

Պարտիական կազմակերպությունների առջև դրված խնդիրների հաջող լուծումն զգալի չափով կախված է նրանց գործունեության մեջ կոլեկտիվ աշխատանքի ապահովումից։ Այն առանձնապես մեծ նշանակություն ունի այժմ։ Պարտիական օրգաններն ըստ արտադրական սկզբունքի վերակառուցման պայմաններում, երբ մեծապես բարձրացել է կոմիտեների պատասխանատվությունը՝ տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման համար, պահանջվում է գործերի խոր իմացություն, կոմունիստների աշխատանքային փորձի, գիտելիքների ու կարծիքների մաքսիմալ հաշվառում։ Հարցերի համատեղ քննարկումը, որոշումների ընդունումն ու կատարումը պարտիական կազմակերպությունների նորմալ գործունեության, կադրերի ճիշտ դաստիարակության, կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության զարգացման անխախտ պայմանն է։

Ինչպես հայտնի է, վերջին տարիներին պարտիական կյանքի լենինյան նորմերի վերականգնման գործում հատուկ ուշադրություն է նվիրվում ղեկավարման կոլեկտիվության ապահովմանը։ ՍՄԿՊ կանոնադրությունը ո՛չ միայն ամրապնդում է կոլեկտիվ ղեկավարության պարտիական սկզբունքը, այլև լիովին երաշխավորում նրա անշեղ կատարումը։ Կատարելով ՍՄԿՊ կանոնադրության պահանջները, Կամոյի արդյունաբերական-արտադրական գոտու պարտիական կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպություններն զգալիորեն բարելավել են ներպարտիական դեմոկրատիան, հետևողականորեն արմատավորում են կոլեգիալ ղեկավարության լենինյան սկզբունքը։

Կոլեկտիվության սկզբունքի ապահովման կարևոր նախադրյալներից մեկը պարտիական ժողովների ժամանակին ու պարտադիր անցկացումն է։ Գոտու սկզբնական պարտիական կազմակերպություններում ժողովները հիմնականում գումարվում են կանոնադրությամբ նախատեսված ժամկետներում՝ ամիսը մեկ անգամ։ Հասկանալի է, իհարկե, որ երբ խոսում ենք ժողովները ժամանակին անցկացնելու մասին, ապա ամենից առաջ նկատի է առնվում նրանց հաջող կազմակերպումը, հարցերի քննարկման նպատակասլացությունը, գործարարությունը, նրանց խոր ու բազմակողմանի վերլուծությունը, կոմունիստների ակտիվ մասնակցությունն այդ քննարկումներին, քննադատության և ինքնաքննադատության ծավալումը։ Այդ տեսակետից իրենց գործունեությունը որոշ չափով բարելավել են ավտոնորոգման գործարանի, բուժխավորման, № 2 դպրոցի, կարի Ֆաբրիկայի, կաբելի գործարանի պարտիական կազմակերպությունները։

1963 թվականի նոյեմբերի 18-ին կաբելի գործարանի պարտկազմակերպությունն իր ժողովում քննարկելով նոր տեխնիկայի արմատավորման և գյուտարարական ու ռացիոնալիզատորական աշխատանքների ընթացքը գործարանում, նշել էր, որ այդ ասպարեզում դեռևս լուրջ թերություններ կան. ռացիոնալիզատորական շատ առաջարկություններ լրիվ չեն ներդրվում արտադրության մեջ, որոշ առաջարկություններ ժամանակին չեն քննարկվում, ձգձգվում է առանձին նորարարների ու գյուտարարների խրախուսումը։ Քննարկված հարցի վերաբերյալ ընդունվել էր համապատասխան որոշում։

Գործի վերածելով ժողովի մշակած միջոցառումները, պարտիական կազմակերպության բյուրոն, գործարանի դիրեկցիայի հետ մեկտեղ, հասել է ռացիոնալիզատորական և գյուտարարական աշխատանքի զգալի աշխուժացման։ Եթե մինչև պարտիական ժողովը 11 ամիսների ընթացքում արվել է ռացիոնալիզատորական 21 առաջարկություն, որոնցից արտադրության մեջ ներդրվել են 14-ը, ապա 1964 թվականի 5 ամիսներին արվել է 35 առաջարկություն, որոնցից ներդրվել են 32-ը. դրանից ստացվել է 87,2 հազար ռուբլու պայմանական օգուտ։ Այսպես, պղնձի ձգման տեղամասի բանվոր Հակոբ Չքոլյանը այս տարվա փետրվարին պղինձը ձգող ՎՄ—13 հաստոցի վրա ձևափոխել է բանդաժները և տեղադրել ավտոմեքենայի օգտագործված զսպանակը (ռեսոր), դրանով 20 տոկոսով բարձրացնելով մեքենայի արտադրողականությունը, միաժամանակ ավելացնելով նրա օգտագործման տևողությունը։ Եթե առաջ բանդաժը պետք է փոխվեր տարեկան երկու անգամ, ապա նորարարական առաջարկի կիրառմամբ այժմ բանդաժները փոխվելու են 3 տարին մեկ անգամ և այդպիսով երեք տարվա ընթացքում տնտեսվելու է 25750 ռուբլի։

Գործարանի գլխավոր ինժեներ Ռ. Խաչատրյանը և գլխավոր մեխանիկ Գ. Խզմալյանն ստեղծել են հատուկ հարմարանք մեկուսացման ցեխի արտադրության թափոնները վերամշակելու և արտադրություն վերադարձնելու համար։ Ներդրված նորարարության շնորհիվ անցյալ տարի տնտեսվել է 18 տոննա մեկուսացնող նյութ, որի արժեքը կազմում է 33177 ռուբլի։ 1964 թվականին տարեկան տնտեսումը կազմելու է 13,2 տոննա, 15650 ռուբլու արժողությամբ։

Հատկապես արտադրությանը վերաբերող հարցերի քննարկմանը պարտիական ժողովներում մասնակցում է կոմունիստների զգալի մասը։ Առանձնապես ակտիվ են հանդես գալիս Դեզդեմոնա Չարվադարյանը, Արարատ Մանուկյանը, Հակոբ Չքոլյանը և ուրիշներ։ Արդյունքը լինում է այն, որ եռամսյակ առ եռամսյակ աճում է արտադրանքի ծավալը։ Վերջին մեկ և կես տարում այն ավելացել է գրեթե 6 անգամ, որը հետևանք է ինչպես արտադրական տարածությունների մեծացման, այնպես էլ աշխատանքի արտադրողականության բարձրացման։ 1962 թվականի համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունն աճել է 162 տոկոսով. միայն ընթացիկ տարվա 5 ամսում աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին թողարկվել է մոտ 17 հազար ռուբլու լրացուցիչ արտադրանք։

Սխալ կլինի ասել, որ բոլոր կազմակերպություններում ժողովներն անցնում են բարձր մակարդակով։ Օրինակ՝ Մարտունու ճանապարհային շահագործման տեղամասի պարտիական կազմակերպության ժողովները գումար-



վում են ուշացումներով, իսկ առանձին կազմակերպություններում դրանք լավ չեն նախապատրաստվում ու անցկացվում։

Պարտիական ժողովն սկզբնական կազմակերպության բարձրագույն օրգանն է. կազմակերպության ուժը նրա կոլեկտիվ գործունեության, կոլեկտիվ ղեկավարման մեջ է։ Այդ իսկ պատճառով մենք անում ենք հարկ եղած ամեն բան, որ ամեն մի կոմունիստ հնարավորություն ունենա արտահայտելու իր մտքերը, կարծիքը քննարկվող հարցի մասին, մտցնի առաջարկություններ և համոզված լինի, որ դրանք ուշադրությամբ կընկալվեն, կուսումնասիրվեն և անհրաժեշտ ընթացք կստանան։

Կոլեկտիվ ղեկավարության գործում կարևոր դեր ունեն կատարելու ցեխային պարտկազմակերպությունները։ Մեր գոտու սկզբնական պարտիական կազմակերպություններում կոմունիստների փոքրաթվության պատճառով չկան ցեխային կազմակերպություններ։ Որոշել ենք մոտ ժամանակներս ցեխային կազմակերպություններ ստեղծել կաբելի գործարանում, որտեղ կոմունիստների թիվն անցել է 50-ից։ Ընթացիկ տարում մեր գոտու չորս կազմակերպություններում ստեղծել ենք պարտիական խմբեր։ Նրանց օգնելու նպատակով պարտիական կոմիտեն հաճախ կազմակերպում է սեմինար պարապմունքներ, ուր բացատրվում են նրանց անելիքները։ Արդեն այժմ այդ խմբերը ծավալել են ակտիվ գործունեություն։

Կոլեգիալ ղեկավարության կարևոր միջոց է նաև պարտիական կոմիտեի պլենումների ու բյուրոների ժամանակին և լավ կազմակերպումն ու անցկացումը, պարտիական լայն ակտիվին դրանց մասնակից դարձնելը՝ ինչպես հարցերի նախապատրաստման, այնպես էլ նրանց քննարկման ժամանակ։ Ահա թե ինչու մեզ մոտ սիստեմատիկաբար, կանոնադրությամբ սահմանված ժամկետներին հրավիրվում են պարտկոմիտեի պլենումներ, ուր քննարկվում են գոտու պարտիական կազմակերպության գործունեության կարևորագույն հարցերը։ Որպես կանոն այդ հարցերի քննարկումն անցնում է գործարար մթնոլորտում, մասնակիցների բարձր ակտիվության պայմաններում։

Պլենումի անդամ-թեկնածուների մեծ մասն ակտիվ մասնակցում է նաև կոմիտեի ընդհանուր գործունեությանը, օգնում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, վերադաս օրգանների ու պարտկոմի որոշումների մասսայականացմանը և այլն։ Կարևորագույն բոլոր քաղաքական ու կազմակերպական միջոցառումներն սկզբնական կազմակերպություններում անց են կացվում պլենումի անդամ-թեկնածուների ուժերով, ընդ որում նրանք պարբերաբար հրավիրվում են պարտկոմ և հրահանգավորվում։ Առանձնապես այդ միջոցառումներին ակտիվ են մասնակցում Հ. Դադայանը, Պ. Զարգարյանը, Ժ. Ռափյանը, Վ. Հովեյանը, Բ. Սիրունյանը և ուրիշներ։ Նրանք ամենօրյա գործնական աջակցություն են ցույց տալիս կոմիտեի գործունեությանը։ Ցավոք սրտի նրանց կողքին ունենք նաև պլենումի այնպիսի անդամ-թեկնածուներ, որոնք խիստ պասիվ են։

Հայտնի է, որ պլենումների միջև ընկած ժամանակամիջոցում գոտու պարտկազմակերպության կոլեկտիվ ղեկավար օրգանի ֆունկցիան իրականացնում է պարտիական կոմիտեի բյուրոն։ Նախօրոք հաստատված աշխատանքային պլանի համաձայն բյուրոն ղեկավարում և ուղղություն է տալիս սկզբնական պարտիական կազմակերպությունների և մյուս սովետական ու տնտեսական հիմնարկների գործունեությանը։ Որպես կանոն բյուրոյի նիստե-

քը հրավիրվում են ամիսը մեկ-երկու անգամ։ Մենք գտնում ենք, որ բյուրոները չպետք է ծանրաբեռնել այնպիսի հարցերի քննարկմամբ, որոնք առանց դժվարության կարելի է լուծել ապարատային կարգով։ Ղեկավար կոլեկտիվ օրգանը չպետք է ժամանակ կորցնի մանրուքների վրա՝ ի վնաս այդ հարցերի ժամանակին ու օպերատիվ լուծման։ Այսպիսի նշանաբանով ենք մենք կազմակերպում կոմիտեի, բյուրոյի և ապարատի գործունեությունը, որին ամենայն բարեխղճությամբ են մասնակցում ապարատի աշխատողները։ Նրանք ավելի շատ են լինում տեղերում, պրակտիկ օգնություն ցույց տալիս կազմակերպություններին։

Բյուրոյի քննարկմանն ենք մտցնում պարտիական-քաղաքական ու կազմակերպական աշխատանքի, տնտեսական, սովետական և այլ հիմնարկ-ձեռնարկությունների գործունեության, կոմունիստների ու կադրերի դաստիարակության հետ կապված կարևոր սկզբունքային, արմատական հարցեր։ Մենք ձգտում ենք հարցերը քննարկել գործարար կերպով, գործարար մթնոլորտում, որպեսզի մտքեր փոխանակվեն, արվեն կոնկրետ, պրակտիկ առաջարկներ և ընդունվեն կարողություններից ու հնարավորություններից բխած, պարտավորեցնող, իրականանալի որոշումներ։ Իսկ դրան կարելի է հասնել միայն այն դեպքում, երբ քննարկվող հարցերն ուսումնասիրվեն ամենայն խորությամբ, գործիմաց ընկերների կողմից, երբ բյուրոյի յուրաքանչյուր անդամ քննարկվող հարցի մասին կարողանա ստանալ ցանկացած տեղեկանքը, հարցի պատասխանը և անել ցանկացած դիտողությունը։ Գրեթե բոլոր հարցերի նախապատրաստմանը մասնակցում են բյուրոյի կամ պլենումի անդամները։ Այս տարի միայն բյուրոյի անդամների կողմից նախապատրաստվել և բյուրոյի քննարկմանն է մտցվել 14 հարց։ Հենց վերջերս, բյուրոյի ապրիլի 14-ի նիստում քննարկվող քաղաքի պարտբյուրոյի հաշվետվության նախապատրաստմանը մասնակցել էր պլենումի անդամ Զարգարյանը, նույն բյուրոյում քննարկված՝ հացի որակի հարցը նախապատրաստել էին պլենումի անդամ Ռաֆյանը, պարտակտիվիստներ Աղեկյանը, Հասասյանը, Դավթյանը։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։

Մեր պարտիայում առանձնացված չեն որոշումներ կայացնողներն ու այն կատարողները։ Կոմիտեի գործունեությունը, նրա յուրաքանչյուր անդամի մասնակցության չափը հենց ամենակարևոր ցուցանիշն են տվյալ օրգանի ոչ թե ձևական, այլ իրական կոլեկտիվ ղեկավարության։ Եվ, հասկանալի է, որ հարցերի համատեղ քննարկումն ու որոշումների ընդունումը գործի ոչ թե վերջն են, այլ միայն սկիզբը։ Դրա համար էլ մենք պլենումի և բյուրոյի անդամների ուշադրությունը միշտ ուղղում ենք ընդունած որոշումների կատարմանը և ապարատի աշխատանքներին նրանց ակտիվ մասնակցությանը, որի մասին արդեն խոսվեց վերևում։

Որպես թերություն, սակայն, պետք է նշել, որ դեռևս ոչ բոլոր դեպքերում են ընդունված որոշումները ժամանակին կատարվում. պատահում է, որ որոշումն ընդունվելուց հետո անհրաժեշտ հետևողական աշխատանք չի տարվում նրա կենսագործման ուղղությամբ, որի պատճառով էլ այն չի տալիս ցանկացած արդյունքը։ Այդպես եղավ, մասնավորապես, Ջրդի շինվարչության գործունեության քննարկման առթիվ ընդունված որոշման հետ։ 1963 թվականի հուլիսին ընդունված այդ որոշումը չիրականացվեց ինչպես հարկն է, և ար-



դյունքն այն եղավ, որ կոմիտեի բյուրոյի որոշումից հետո էլ լուրջ տեղաշարժեր չնկատվեցին շինվարչության աշխատանքներում։

Բյուրոյի դերը մենք չենք սահմանափակում միայն նիստերի հրավիրմամբ և հարցերի քննարկմամբ։ Այն մենք համարում ենք գոտու պարտիական կազմակերպության ղեկավար շտաբը և պարտիական կազմակերպության ամենօրյա գործունեության հետ կապված բոլոր կարևորագույն հարցերին տեղյակ ենք պահում, խորհրդակցում բյուրոյի անդամների հետ։ Պարտկոմը և սկզբնական կազմակերպություններն զգալի տեղ են հատկացնում հասարակական կազմակերպությունների, մասնավորապես արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների դերի բարձրացմանը։

Պարտիական կազմակերպության օգնության շնորհիվ մի շարք կոմերիտական կազմակերպություններ զգալի չափով բարելավել են իրենց գործունեությունը։ Բավական է նշել, որ վերջին ժամանակներս ռեսպուբլիկայի բոլոր սկզբնական կոմերիտական կազմակերպություններում մասսայականացվեց Կամոյի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքի փորձը՝ կոմերիտական լուսարձակի աշխատանքի նպատակասլաց կազմակերպման մասին։ Արհմիութենական կազմակերպությունների աշխատանքի աշխուժացմանը նպաստել են այս տարի արհմիութենական ակտիվի համար գոտում կազմակերպված երկու սեմինար-խորհրդակցությունները։

Կոլեգիալությունը պարտիական ղեկավարման բարձրագույն սկզբունքն է. միայն դրա շնորհիվ կարելի է ճիշտ ու բազմակողմանի լուծել հարցերը, օբյեկտիվ գնահատել ստեղծված վիճակը, ճիշտ կողմնորոշվել, համարձակ գործել։

Հ. ԱԼԻԽԱՆՅԱՆ
ՀԿՊ Կամոյի արդյունաբերական-արտադրական կոմիտեի քարտուղար

## ԳՈՐԾՈՒՆ ՎԵՐԱՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆ

Ժողովի քննարկմանն էր դրված գործարանի կոլեկտիվին հուզող մի հարց՝ որակի բարելավման խնդիրը։ Այդ 1964 թվականի փետրվարի 19-ն էր, երբ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի պարտիական կազմակերպությունը լսում էր թողարկվող արտադրանքի որակի գծով ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովի նախագահ Պ. Գաբրիելյանի զեկուցումը։ Պատկերը հեռու էր գոհացուցիչ լինելուց. զգալիորեն ընկել էր թողարկվող արտադրանքի որակը, գործարանն ստանում էր բազմաթիվ ռեկլամացիաներ։ Մեծ չափերի էր հասնում խոտանի տոկոսը ձուլարան ցեխի կորպուսային դետալների տեղամասում։ Հավաքման ցեխում թույլ էին տրվում տեխնոլոգիայի խախտումներ, որի հետևանքով հաստոցների արագության տուփերն ավելորդ աղմուկ էին հանում, հաստոցի յուղման սիստեմից հաճախ հոսում էր քսուք յուղը, իսկ պատրաստի արտադրանքի տեսքը պատիվ չէր բերում կոլեկտիվին։

— Նման անմխիթար վիճակը հետևանք է նրա,— ասում է զեկուցողը,— որ գործարանի տեխնիկական վերահսկողության բաժնում ցածր է արտադրական կարգապահությունը, նկատվում է խիստ անփութություն, բացակայում

է պատասխանատվության զգացումը: Պատրաստի դետալներն ընդունվում են աչքաչափով՝ առանց գծագրերի, խոտանարարները պատասխանատվության չեն ենթարկվում:

— Բարձր որակի առաջին նախապայմանը,— իր ելույթում ասաց մեխանիկական ցեխի ավագ վարպետ Օ. Ղազարյանը,— արտադրության ռիթմիկ աշխատանքն է: Մինչդեռ մեզ մոտ ամսվա առաջին տասնօրյակին գրեթե չենք աշխատում, իսկ երկրորդ տասնօրյակի կեսերից սկսվում է գրոհը, որը և գցում է արտադրանքի որակը:

Վարպետ Մխիթարյանը խոսում է այն մասին, որ հաճախ խախտվում են մետաղների տեսակները: Միևնույն դետալը պատրաստվում է տարբեր մարկայի մետաղներից, որը խիստ ազդում է որակի վրա:

— Մեզ մոտ վատ են վերանորոգվում հաստոցները,— ասում է նա,— դրա հետևանքով խախտվում է դետալների մշակման ճշտությունը:

Մեկը մյուսի հետևից ելույթ են ունենում բանվորներ, ցեխի պետեր, գործարանի գլխավոր ինժեները և ուրիշներ: Բոլորի հոգսը մեկ է՝ բացահայտել որակյալ արտադրանքի թողարկմանը խանգարող պատճառները, կոնկրետ առաջարկությունների միջոցով բարելավել գործերի վիճակը:

Պարտիական ժողովը հանձնարարեց ադմինիստրացիային՝ բարձրացնել վարպետների, հսկիչ վարպետների և հսկիչների պատասխանատվությունը, տեխնիկական վերահսկողության բաժինը համալրել կարող ուժերով, ստեղծել հարմարավետ հատուկ արկղներ՝ պատրաստի դետալները մի ցեխից մյուսը տեղափոխելու համար: Ժողովը միաժամանակ պարտավորեցրեց պարտիական բյուրոյին և բոլոր կոմունիստներին՝ ամենօրյա հսկողություն սահմանել արտադրանքի որակի վրա, օգնել ԼԿԵՄ կազմակերպության օրգան Լուսարձակ պատի թերթին, որակի վերահսկողության հանձնաժողովի միջոցով ամիսը մեկ անգամ լույս ընծայել Որակ պատի թերթը:

Հաստոցաշինարար կոմունիստների այդ ժողովը կարևոր նշանակություն ունեցավ գործարանի կյանքում: Համալրվեց տեխնիկական վերահսկողության բաժինը. բաժնի պետ նշանակվեց արտադրության մեջ փորձված ինժեներ Վ. Հունանյանը: Դետալների տեղափոխման համար պատրաստվեցին հատուկ արկղներ: Գործարանում ծայր առավ արտադրության կուլտուրայի բարձրացման համար շարժումը: Պրակտիկա դարձավ սանիտարական օրերի անցկացումը: Այժմ ոչ մի բանվոր հերթափոխությունն ավարտված չի համարում, մինչև լրիվ չի մաքրում իր սպասարկած հաստոցը: Արտադրամասերում թողարկեցին կայծակ թերթիկներ, որոնք լուսաբանում են այս կամ այն օղակի հաջողությունը, խարազանում վատը, քննադատում թերությունները:

Գործարանի պարտիական կազմակերպության բյուրոն սկսեց սիստեմատիկաբար զբաղվել արտադրության բարելավման և որակի բարձրացման հարցերով: Բյուրոն հերթական նիստերից մեկում լսեց քննադատական դիտողությունների և առաջարկությունների կատարման ընթացքը գործարանում: Այս և նման այլ միջոցառումների կենսագործման շնորհիվ բարձրացավ կոլեկտիվի պատասխանատվությունը և գործերի վիճակն աստիճանաբար սկսեց բարելավվել: Չնայած կարճ ժամկետին, արդեն նկատելի են առաջին ուրախալի արդյունքները:

Արդյունաբերական ձեռնարկություններում տնտեսական գործունեության նկատմամբ վերահսկողությունն իրականացվում է պարտկազմակերպությունների կողմից ընտրված հանձնաժողովների միջոցով: Նրանցից յուրաքանչյուրը վերահսկում է արտադրության մի որոշակի բնագավառ, օգնում պարտիական կազմակերպությանը՝ ժամանակին բացահայտելու և վեր հանելու տեղ գտած թերությունները, միջոցառումներ մշակելու դրանց վերացման համար: Այս ուղղությամբ դրական աշխատանքի որոշակի փորձ են կուտակել մայրաքաղաքի Լենինյան շրջանի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները:



Ավտոդողերի գործարանի պարտկազմակերպությունում, օրինակ, ստեղծված է վերահսկողության երեք հանձնաժողով, որոնք վերահսկում են թողարկվող արտադրանքի որակի, ինքնարժեքի իջեցման, մեքենայացման ու ավտոմատացման աշխատանքներին:

Թողարկվող արտադրանքի որակի վերահսկողության հանձնաժողովը (նախագահ՝ գլխավոր ինժեների տեղակալ Ա. Բունիաթյան), ուսումնասիրելով արտադրանքի որակը ավտոկամերների ցեխում, առաջարկեց տեղադրել նոր, կատարելագործված հաստոց. մշակվեց ավտոկամերի մեջ օդի մղման արագ եղանակ: Նշված միջոցառումների շնորհիվ ցեխում զգալիորեն բարձրացավ աշխատանքի արտադրողականությունը և ավտոկամերների որակը: Այսպես, ցեխը ընթացիկ տարվա հունվար ամսվա պլանը կատարեց 100 տոկոսով, որից առաջին տեսակինը՝ 84,3, իսկ մարտինը, համապատասխանաբար՝ 105 և 87,6 տոկոսով:

Խրախուսելի աշխատանք է կատարում նաև ինքնարժեքի իջեցմանը հըսկող հանձնաժողովը (նախագահ՝ հավաքման ցեխի պետ Լ. Սիմոնյան): Ընթացիկ տարվա հունվար ամսին ուսումնասիրելով ներմուծվող կորդի հաշվառման և արտադրության թափթփուկների օգտագործման վիճակը, հանձնաժողովն զգալի թերություններ հայտաբերեց: Ձեռք առնվեցին համապատասխան միջոցներ. արտադրության թափթփուկներն սկսեցին օգտագործել ռետինե շիֆեր, գազի բալոնների օղակներ և հավաքման ցեխի փայտե բարաբանների փոխարեն ռետինե բաբիններ պատրաստելու համար: Արտադրության թափթփուկների օգտագործման շնորհիվ գործարանը 1964 թվականի հինգ ամիսների ընթացքում ստացավ մոտ 15 հազար ռուբլու արտապլանային օգուտ:

Հետևողական գործունեություն է ծավալել նաև կիսահաղորդիչների և էլեկտրամետաղյա կերամիկայի գործարանի պարտկազմակերպությունը, որի նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորմանը վերահսկող հանձնաժողովը (նախագահ Ջ. Վարդանյան) զգալի աշխատանք է կատարել արտադրության կատարելագործման և նոր տեխնիկայի ներդրման ուղղությամբ: Այստեղ մամլակի բացակայության պատճառով ձգձգվում էր կոլեկտորային պլաստինկաների և կոնտակտային օղակների մասսայական արտադրությունը: Հանձնաժողովի ներկայացրած առաջարկության համաձայն մոդեռնացվեց գործարանում եղած մամլակը: Գործարանը կարողացավ ժամանակին կատարել ժողովրդատնտեսական կարևորություն ունեցող առաջադրանքը:

Արտադրության որակին վերահսկող հանձնաժողովը (նախագահ՝ Վ. Բաժենով) բացի պարբերաբար կատարած ստուգումներից, անց է կացնում որակի բարձրացմանը նպաստող այլ միջոցառումներ: Այսպես, մարտի 26-ին անցկացվեց խորհրդակցություն՝ տրանզիստորների ցեխում թողարկվող արտադրանքի որակի բարձրացման համար:

Ավտոդողերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական, էլեկտրամեքենաշինական, էլեկտրասարքերի, պլաստմասսայի, պոլիմերների, կերամիկայի և կիսահաղորդիչների գործարանների պարտիական կազմա-
կերպություններն ամենայն ուշադրությամբ հետևում են ադմինիստրացիայի
գործունեությանը վերահսկող հանձնաժողովների աշխատանքին, պարբերա-
բար ունկնդրում նրանց, ամենօրյա ակտիվ գործունեությամբ բարձրացնում
նրանց դերն ու հեղինակությունը։

Սակայն ոչ բոլոր սկզբնական պարտիական կազմակերպություններն են
պատշաճ կարևորություն տալիս ադմինիստրացիայի գործունեությանը վե-
րահսկող հանձնաժողովների աշխատանքին, որի հետևանքով այդ հանձնա-
ժողովների գոյությունը հաճախ ձևական բնույթ է ստանում և նրանք մատնը-
վում են անգործության։ Դիմենք փաստերի։

Երևանի կաբելի գործարանի սկզբնական պարտկազմակերպության
բյուրոն (քարտուղար Մ. Գասպարյան), հաշվետու-ընտրական ժողովից հե-
տո, անցած 7 ամիսների ընթացքում, ոչ մի անգամ չի անդրադարձել ադմի-
նիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների գործունեու-
թյանը։ Եվ այդ այն դեպքում, երբ գործարանն արտադրական պլանները չի
կատարել բազմաթիվ տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով, իսկ հանձնա-
ժողովներից և ոչ մեկը չի գործել և դա չի անհանգստացրել պարտիական
բյուրոյին։

Համանման դրություն է տիրում նաև կոմպրեսորների գործարանի
սկզբնական պարտկազմակերպությունում։ Այստեղ ստեղծված են ադմի-
նիստրացիայի գործունեությանը վերահսկող երկու հանձնաժողովներ, որոնք
փաստորեն չեն գործում։ Գործարանի սկզբնական պարտկազմակերպության
բյուրոն ոչ մի անգամ չի զբաղվել հանձնաժողովների գործունեության հար-
ցով։

Հանձնաժողովների միջոցով են սկզբնական պարտկազմակերպություն-
ներն իրականացնում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ իրենց
վերահսկողության ֆունկցիան։ Այդ հանձնաժողովները պետք է ուշադրու-
թյամբ ուսումնասիրեն գործերի վիճակն այն տեղամասում, որոնց նկատ-
մամբ իրականացնում են վերահսկողությունը։ Երբեմն, սակայն, պարտիա-
կան կազմակերպությունները խախտում են այդ սկզբունքը։ Կենցաղային քի-
միայի գործարանի սկզբնական պարտկազմակերպությունում (քարտուղար
Ն. Սարգսյան) ընտրվել է մեկ հանձնաժողով, որը պետք է վերահսկեր ար-
տադրության բոլոր բնագավառները։ Մի բան, որը վերապահված է միայն
սկզբնական պարտկազմակերպությանը, և հանձնաժողովն իրավասու չէ փո-
խարինելու պարտիական կազմակերպությանը, կատարելու նրա ֆունկցիա-
ները։

Պարտիական կոմիտեները, պարտիական բյուրոներն ու նրանց քարտու-
ղարները պետք է հետևեն, որ հանձնաժողովների աշխատանքը չվերածվի
թղթաբանության։ Հանձնաժողովները պետք է ժամանակին վեր հանեն աշ-
խատանքում տեղ գտած թերությունները, այդ մասին իրազեկ դարձնեն պար-
տիական կազմակերպությանը, ձեռնարկության տնտեսական ղեկավարու-
թյանը և նրանց հետ միասին միջոցներ ձեռնարկեն արտադրության արգե-
լակող խոչընդոտները տեղերում վերացնելու համար։

Ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների աշ-
խատանքն ուժեղացնելու գործում սկզբնական պարտիական կազմակերպու-



թյուններին լուրջ օգնություն պետք է ցույց տան շրջանային կոմիտեները։
Բայց որոշ շրջկոմների ուշադրությունից հաճախ վրիպում է պարտիական
աշխատանքի այդ բնագավառը։ Այսպես, ՀԿՊ Երևանի Լենինյան շրջանային
կոմիտեն, նրա կազմակերպական բաժինը վերջին ժամանակներս մի կողմ
են թողել սկզբնական պարտկազմակերպությունների ադմինիստրացիայի
գործունեությանը վերահսկող հանձնաժողովների հետ տարվող աշխատանք-
ները։ Դրա հետևանքով էլ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների և
շինարարական կազմակերպությունների որոշ պարտիական կազմակերպու-
թյուններ աչքաթող են արել ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող
հանձնաժողովների աշխատանքը, չեն ուսումնասիրում, չեն քննարկում
նրանց վերաբերող հարցերը, կոնկրետ միջոցառումների չեն դիմում նրանց
գործունեությունն աշխուժացնելու համար։

Պարտիական աշխատանքի այս կարևորագույն բնագավառը պետք է
արժանանա պարտիական կազմակերպությունների ամենօրյա ուշադրությանը։
Դրան պետք է ձգտեն շրջանային պարտիական կոմիտեները և բոլոր պարտ-
կազմակերպությունները։

Հ. ՇԱՏՎՈՐՅԱՆ
ՀԿՊ Երքաղկոմի հրահանգիչ

---

## ՊԵՐՃԱԽՈՍ ԹՎԵՐ

Լույս է տեսել «ՍՍՌՄ արդյունաբերությունը» վիճակագրական ժողովածուն։ Ահա մի քանի
փաստեր և թվեր այդ ժողովածուից։

● Սովետական Միությունն այսօր աշխարհում երկրորդ, իսկ Եվրոպայում առաջին ինդուս-
տրիալ տերությունն է։ Բոլոր երկրների արտադրած արդյունաբերական արտադրանքի «ընդհանուր
կաթսայում» մեր հայրենիքի բաժինը համարյա հինգերորդ մասն է կազմում։

Շուտով այն ավելին կլինի։ Սովետական տնտեսության զարգացման տեմպերն այնքան արագ
են, որ ժամանակակից շաբաթը հարմար կլինի համեմատել նախառևոլյուցիոն տարվա հետ։ Այժմ
յուրաքանչյուր յոթնօրյակում մենք թողարկում ենք ավելի շատ արտադրանք, քան ամբողջ 1913
թվականին ցարական Ռուսաստանում։

● Անշուշտ, այս կես դարում իրենց տեղում կանգնած չեն մնացել և կապիտալիստական
երկրները։ Ի՞նչ է ասում վիճակագրությունը։

Սովետական արդյունաբերությունն իր զարգացմամբ առաջ է անցել Եվրոպայի կապիտալիս-
տական երկրներից և արագ հասնում է ԱՄՆ-ին։ Մեր երկրի արդյունաբերական արտադրանքի
ծավալը տասնմեկ տարի առաջ կազմում էր ամերիկյանի միայն մեկ երրորդը, իսկ անցյալ տարի՝
արդեն 65 տոկոսը։

● Մենք թողարկում ենք ավելի շատ արտադրանք, քան Անգլիայի, Ֆրանսիայի, ԳՖՌ-ի
արդյունաբերությունը միասին վերցրած։ Անցյալ տարի սովետական մետաղամշակությունը տվել է
80,2 միլիոն տոննա երկաթ, իսկ անգլիական, ֆրանսիական և արևմտաեվրոպական մետաղամշա-
կությունը՝ միայն 72 միլիոն տոննա. համապատասխանաբար արտադրվել է 412 և 415 միլիարդ
կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 61 և 61,5 միլիոն տոննա ցեմենտ։

1940 թվականի համեմատությամբ մեր երկրում մեկ բնակչին ընկնող արդյունաբերական
արտադրանքի թողարկումն ավելացել է 5,7 անգամ, իսկ ԱՄՆ-ում՝ մոտ երկու անգամ։ Այս
առումով ավելի բնորոշ է վերջին տասնամյակը։ ՍՍՌՄ-ում արդյունաբերական արտադրանքն
աճել է 2,3 անգամ, ԱՄՆ-ում՝ ընդամենը 15 տոկոսով։

● Միայն 1954—1963 թվականներին երկրում կառուցվել և շահագործման են հանձնվել
8570 խոշոր ձեռնարկություն, չհաշված միջիններն ու մանրերը։ Այդ նշանակում է, որ յուրաքան-
չյուր օր շարք են մտնում 2 խոշոր ձեռնարկություն։ Բացի դրանից վերջին տարիներս ընդար-
ձակվել են շատ գործարաններ ու ֆաբրիկաներ։

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԽՐԱԽՈՒՍՄԱՆ ԱՌԹԻՎ

Մ. ՔՈԹԱՆՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

*Տնտեսության սոցիալիստական սիստեմը լայն հնարավորություններ է ընձեռում գիտատեխնիկական մտքի զարգացման, գիտության և տեխնիկայի նվաճումներն արտադրության մեջ ներդնելու համար։ Նոր տեխնիկայի ներդրման բնագավառում սոցիալիզմը չունի կապիտալիզմին բնորոշ խոչընդոտներ, որոնք կապված են մասնավոր կապիտալիստական սեփականության հետևանքների՝ շահույթի, շուկայի նեղության հետ։*

*Սոցիալիզմը ստատիճանաբար վերացնում է գիտության և արտադրության դարավոր խզումը. գիտությունն ավելի ու ավելի է վերածվում անմիջական արտադրողական ուժի։*

*Ինչպես հայտնի է, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պարտիայի և սովետական ժողովրդի գլխավոր տնտեսական խնդրի՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վճռական պայմանը տեխնիկական առաջադիմությունն է։ Դրա համար էլ պարտիան և սովետական կառավարությունը, հատկապես վերջին տարիներին, հատուկ ուշադրություն են նվիրում տեխնիկական առաջադիմության անարգել ու արագ զարգացմանը։*

*Սակայն, նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման պլանները, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, սիստեմատիկաբար չեն կատարվում։ Այդ մասին են վկայում մեր ռեսպուբլիկայի այդ բնագավառի վերջին երեք տարվա տվյալները։ 1961 թվականին նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման պլանը կատարվել է 74,8, 1962 թվականին՝ 86,2, իսկ 1963 թվականին՝ 76,3 տոկոսով։ Դեռ չենք հաշվում գիտահետազոտական այն թեմաները և նոր տեխնիկայի ներդրման միջոցառումները, որոնք տարվա ընթացքում հանվել են պլանից։*

*Լրիվ չափով արտադրության մեջ չեն ներդրվում նաև գյուտարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունները։ Այսպես, 1960 թվականին արտադրության մեջ չեն ներդրվել ընդունված գյուտարարական և ռացիոնալիզատորական 2580, 1961 թվականին՝ 2584, 1962 թվականին՝ ավելի քան 2300, իսկ 1963 թվականին մոտ՝ 2000 առաջարկ։ Ի դեպ նշենք, որ այդ վիճակը քիչ*



*տատանումներով բնորոշ է մյուս ռեսպուբլիկաներին և ամբողջ Միությանը։*

*Ինչո՞ւ են սիստեմատիկաբար թերակատարվում նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման պլանները։*

*Անշուշտ, այդ միայն արտադրության առանձին ղեկավարների, նյութատեխնիկական մատակարարման թերություններով բացատրել չի կարելի։*

*Տեխնիկական առաջադիմությունը դուրս է գալիս առանձին անհատների գործունեության շրջանակներից։ Այն ամբողջական կոլեկտիվների ստեղծագործական աշխատանքի արդյունք է և ընդգրկում է՝ 1) գիտատեխնիկական նվաճումը, 2) նոր տեխնիկայի ստեղծումը և 3) նոր տեխնիկայի կիրառումը։ Հետևապես պլանները չկատարելու պատճառը պետք է փնտրել հենց այդ կոլեկտիվների աշխատանքների կազմակերպման, նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման գործի դրվածքի և որ, մեր կարծիքով ամենակարևորն է, դրանում կոլեկտիվի անդամների նյութական շահագրգռվածության սիստեմի մեջ։*

*Կյանքը ցույց է տալիս, որ սոցիալիզմի ժամանակ ևս, անհրաժեշտ շահագրգռվածության բացակայությունը կարող է խոչընդոտել նոր տեխնիկայի ստեղծմանն ու ներդրմանը։ Ինչպես անհատները, այնպես էլ կոլեկտիվները կարող են անտարբեր լինել նոր տեխնիկայի, տեխնոլոգիայի ստեղծման ու ներդրման նկատմամբ, չօգտագործել այդ նպատակով առանձնացված միջոցները, եթե տվյալ պայմաններում նրանք անմիջականորեն շահագրգռված չեն այդ գործում։*

*Նոր տեխնիկայի ստեղծումը և ներդրումը պետք է հիմնված լինեն խրախուսման այնպիսի սկզբունքի վրա, որը լայն թափ հաղորդի և ստեղծագործական նախաձեռնություն առաջացնի այդ գործում մասնակից աշխատողների շրջանում։ Նոր և նորագույն տեխնիկայի ստեղծման ու ներդրման համաժողովրդական նախաձեռնությունը պետք է հենվի անհատների և ամբողջական կոլեկտիվների ինչպես բարոյական խթանման, այնպես էլ նյութական շահագրգռվածության վրա։*

*Տեխնիկական առաջադիմության խթանման տեսակետից առաջնակարգ նշանակություն ունի ձեռնարկությունների (կոլեկտիվների) տնտեսական գործունեության ճիշտ գնահատումը, որի հիմնական ցուցանիշները պրակտիկայում հանդիսանում են համախառն արտադրանքը և շահույթը։ Սակայն գնահատման այդ ցուցանիշները և նյութական շահագրգռվածության կազմակերպման պրակտիկան հաճախ ո՛չ միայն չեն նպաստում տեխնիկական առաջադիմությանը, այլև խոչընդոտում են դրա ծավալմանը։*

*Ինչպես հայտնի է, տեխնիկական առաջադիմությունը միշտ չէ, որ մեծացնում է ձեռնարկությունների համախառն արտադրանքը, կամ գործող գների պայմաններում՝ ավելացնում շահույթները (օրինակ՝ թանկարժեք նյութերի փոխարեն էժան քիմիական նյութերի կիրառումը մեքենաշինության, թեթև, տեքստիլ արդյունաբերության մեջ և այլն)։ Նոր, կատարելագործված մեքենաների, սարքերի և այլ միջոցների կիրառումը պահանջում է լրացուցիչ ծախսեր։ Դրանք կարող են դժվարություններ հարուցել համախառն արտադրանքի և շահույթի պլանային առաջադրանքների կատարման գործում։ Իսկ այդ, ինչպես գիտենք, կոլեկտիվին կարող է զրկել նյութական խրախուսանքից։*

*Մի՞թե պարզ չէ, որ այդպիսի պայմաններում ձեռնարկությունների կոլեկտիվները շահագրգռված չեն նոր տեխնիկայի արտադրությամբ, դրա կի-*

րառմամբ, ինչպես նաև, ավելի առաջադիմական և էժան նյութերի օգտագործմամբ: Հիմնականում դրանով պետք է բացատրել արտադրանքի նոր տեսակների պատրաստման, նոր մեքենաների, մեխանիզմների, սարքերի, նյութերի, առարկաների արդյունաբերական նմուշների ստեղծման պլանների սիստեմատիկ թերակատարումը: Այսպես, Հայկական ՍՍՌ-ում նոր արդյունաբերական արտադրանքի արտադրության պլանը 1961 թվականին կատարվել է 66,6, 1962 թվականին՝ 77,4, 1963 թվականին՝ 57,8 տոկոսով:

Դրա հետ միասին, ձեռնարկությունները շահագրգռվածություն հանդես չեն բերում հնացած կոնստրուկցիաները արտադրությունից հանելու գործում, որովհետև դրանք հաճախ ձեռնարկության համար մեծ համախառն արտադրանք ու շահույթ են ապահովում, չնայած նրան, որ հասարակական տեսանկյունով դրանց արտադրությունն ու կիրառումը շահավետ չեն: Ահա թե ինչու մեր ռեսպուբլիկայում հնացած կոնստրուկցիաները արտադրությունից հանելու պլանը 1961 թվականին կատարվել է 75, 1962 թվականին՝ 62,5, իսկ 1963 թվականին՝ 57,1 տոկոսով:

Այս կամ այն միջոցառումը գնահատելիս պետք է ելնել նրանից, թե ինչ է տալիս այն հասարակությանը, ինչքան աշխատանք է տնտեսում: Պրակտիկայում ամեն մի կատարելագործում, նոր մեքենայի, սարքի արտադրության կազմակերպում առաջին հերթին գնահատվում է ձեռնարկության տեսանկյունից՝ թե ի՞նչ կտա ձեռնարկության կոլեկտիվին նյութական և բարոյական խրախուսման իմաստով: Եթե այն կարող է վատացնել ձեռնարկության տնտեսական ցուցանիշները (ինքնարժեք, շահույթ, համախառն արտադրանք), ապա, կարելի է ասել, շատ դժվարությամբ է ներդրվում կամ տարիներով ձգձգվում է: Այնինչ, արտադրվող արդյունքը ձեռնարկությունում կարող է ունենալ բարձր ինքնարժեք, բայց իր շահագործական լավ հատկությունների՝ բարձր արտադրողականության, երկարակեցության, կիրառման ժամանակ հասարակական աշխատանքի տնտեսման շնորհիվ, հասարակական իմաստով անհամեմատ շահավետ ու էժան լինի:

Հանրահայտ է, օրինակ, որ տեխնիկական անսարքության ցածրորակության հետևանքով, Միության մեջ ամեն տարի պարապուրդ են տալիս տրակտորների 30 և ավտոմեքենաների 40 տոկոսը: Ավտոմոբիլային արդյունաբերության սպառած մետաղի 40 տոկոսը գործադրվում է ավտոմեքենաների վերանորոգմանը («Правда», № 293, 1963 թ.):

Մի՞թե պարզ չէ, որ նոր, բարձրորակ մեքենաների, դետալների արտադրությունը մեծ չափով կրճատում է պարապուրդների, վերանորոգումների և այլ ծախսեր, չնայած նրան, որ պահանջում է համեմատաբար փոքր լրացուցիչ ծախսեր: Այսպես, Մոսկվայի ավտոդողերի գործարանը հասավ ավտոդողերի շահագործական վազքի 10 տոկոսի բարձրացման, որը և հավասարազոր է 10 տոկոս լրացուցիչ արտադրանքի թողարկման: Այդ միջոցառման հետևանքով արտադրանքի ինքնարժեքը բարձրացավ 0,18 տոկոսով: «Русский дизел» գործարանը մոդեռնացրեց դիզելների տիպերից մեկը, որն զգալի չափով բարձրացրեց նրա մոտոռեսուրսը (շարժիչի աշխատաժամանակը մինչև առաջին կապիտալ վերանորոգումը): Դա հավասարազոր էր 11 միլիոն ռուբլու արժողության նոր դիզելների արտադրության այն դեպքում, երբ ծախսերն ավելացել են միայն 2 միլիոն ռուբլով («Известия», № 123, 1963 թ.): Կամ վերցնենք մի այլ օրինակ: էլեկտրալամպերի նոր տեսակի արտադրությունը,



որի ծառայության ժամկետը 40 տոկոսով ավելի է, քան այժմ արտադրվող լամպերինը, թանկացնում է ինքնարժեքը միայն 20 տոկոսով:

Կազանի մեխանիկական գործարանը 1953—1962 թվականներին խորության պոմպերի ռեսուրսներն ավելացրեց 5 անգամ. դրանով մի քանի տասնյակ տոկոսով կրճատեց նավթի արդյունահանման ծախսերը: Պոմպերի տեխնիկական պայմանների բարելավումը պահանջեց լրացուցիչ ծախսեր, որի հետևանքով դրանց ինքնարժեքը բարձրացավ մի քանի տոկոսով («Правда», № 293, 1963 թ.):

Չնայած այս միջոցառումները ժողովրդական տնտեսությանը տվել են հսկայական օգուտ, բայց վատացրել են ձեռնարկությունների աշխատանքի գնահատման ցուցանիշները: Դրա համար էլ արտադրական շատ կոլեկտիվների ղեկավարներ և նույնիսկ կոլեկտիվներ շահագրգռված չեն նոր, ավելի առաջադիմական արդյունքների արտադրությամբ, հաճախ ձախողում են այդպիսի միջոցառումների իրականացումը: Այսպես, օրինակ, Գորկու ավտոգործարանում ավելի քան տասը տարի է մշակվել են մի շարք միջոցառումներ, որոնց իրականացումը զգալիորեն կմեծացնի «ԳԱԶ—51» մարկայի ավտոմեքենայի կարևոր դետալների օգտագործման ժամկետները: Բայց ղեկավարությունը չի իրականացնում այդ միջոցառումները, որովհետև դրանք կպահանջեն լրացուցիչ ծախսեր և «կվատացնեն» ձեռնարկության աշխատանքի արտադրողականության և ինքնարժեքի ցուցանիշները, չնայած որ այդ ծախսերը մի քանի անգամ ավելի պակաս կլինեն, քան սպասվող օգուտը: Բերենք մի օրինակ ևս: Օրշանսկու վուշակոմբինատում ավելի նուրբ գործվածքի արտադրության յուրացումը հնարավորություն կտա դրա արտադրությունը հասցնել 12 միլիոն մետրի: Այդ նուրբ գործվածքի նկատմամբ ժողովրդական տնտեսության պահանջը շատ մեծ է: Բայց Բելոռուսիայի ժողտնտխորհը, վախենալով համախառն արտադրանքի «կորստից», այդ ուղղությամբ ոչինչ չի անում («Плановое хозяйство», № 2, 1964 թ., էջ 19):

Բերված փաստերը ցույց են տալիս, որ ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման գործող ցուցանիշները չեն նպաստում տեխնիկական առաջադիմությանը, հետևապես և մեր առաջընթացին:

ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան (1964 թ.) պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց. «Մեր խնդիրն է վերացնել նորի, առաջադիմականի ճանապարհին հանդիպող բոլոր խոչընդոտները»:

Կոմունիզմի կառուցման արդի էտապում, երբ առաջին պլանի վրա է դրված կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, ամեն մի երևույթ պետք է գնահատել տեխնիկական առաջադիմության տեսանկյունից: Այլ խոսքով, ձեռնարկությունների, կազմակերպությունների, կոլեկտիվների գործունեության գնահատման հիմնական ցուցանիշը պետք է այնպիսին լինի, որ ոչ թե կաշկանդի, այլ նպաստի տեխնիկական առաջադիմությանը:

Այժմ, երբ ստեղծվել են նույն նպատակին ծառայող բազմատեսակ աշխատանքի առարկաներ և աշխատանքի գործիքներ, որոնք իրենց արտադրության ծախքերով, հետևապես և արժեքով շատ տարբեր են, համախառն արտադրանքը և շահութաբերության ցուցանիշները (հաշվարկման գործող մեթոդի պայմաններում) չեն կարող ճիշտ արտացոլել գործերի վիճակը նույն արտադրանքն արտադրող, բայց տարբեր ծագում ունեցող հումք և աշխատանքի տարբեր գործիքներ օգտագործող ձեռնարկություններում:

Իսկապես, առաջներում արտադրվում էին պողպատի կամ չուգունի սահմանափակ տեսակներ, որոնց արտադրության ծախսերի միջև էական տարբերություն չկար, ուստի մետալուրգիական ձեռնարկությունների գործունեությունը գնահատվում էր արտադրված մետաղի քանակով։ Իսկ այժմ տեխնիկական առաջադիմության շահերը պահանջում են արտադրել տասնյակ տեսակի չուգուն, պողպատ, որոնց արտադրության տեխնոլոգիան միանգամայն տարբեր է։ Դրա հետ միասին, տարբեր են դրանց արտադրության նյութական և աշխատանքային ծախսերը։ Այսպիսի պայմաններում ինչպե՞ս կարելի է ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը գնահատել արտադրված մետաղների քանակով։ Ահա թե ինչու ընկեր Խրուշչովը ՌՍՖՍՌ արդյունաբերության և շինարարության աշխատողների խորհրդակցությունում (1963 թ. ապրիլի 24-ին) արտասանած ճառում ասաց. «ՍՍՌՄ պետպլանը պետք է փոխի ներկայիս այն կարգը, երբ մետալուրգիական գործարանների աշխատանքը պլանավորում և արդյունքները գնահատում են միմիայն արտադրանքի տոննաժի արտադրությամբ։ Հարկավոր է մշակել մետալուրգիական ձեռնարկությունների աշխատանքների ցուցանիշների հաշվառման այնպիսի սիստեմ, որը լավագույն ձևով խթաներ առավել խնայողաբեր արտադրանքի թողարկումը» («Սովետական Հայաստան» 26-ը ապրիլի, 1963 թ.)։ Նույնը կարելի է ասել մեքենաշինության արտադրանքի վերաբերյալ։ Կամ թեթև արդյունաբերությունն առաջներում ամենուրեք օգտագործում էր հիմնականում բնական հումք (կաշի, բամբակ, մետաքս և այլն)։ Այդ տեսակետից նույն հումքն օգտագործող ձեռնարկությունների դրությունը համահավասար էր։ Ուստի, համախառն արտադրանքի և շահութաբերության ցուցանիշները լիովին ընդունելի էին։ Իսկ այժմ, երբ ստեղծվել են արհեստական հումքի շատ տեսակներ (ըստ որում դրանց արժեքները տարբեր են) նույն սպառարժեքը արտադրող, բայց տարբեր տեսակի հումք օգտագործող ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը հնարավոր չէ գնահատել համախառն արտադրանքի կամ շահութաբերության ցուցանիշով։

Ինչպես տեսնում ենք, գիտության, տեխնիկայի, արտադրության զարգացումը պահանջում է գնահատման նոր ցուցանիշներ։

Տեխնիկական առաջադիմության շահերը պահանջում են ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման և կոլեկտիվների նյութական շահագրգռվածության հիմքում դնել այնպիսի ցուցանիշներ, որոնք խթանում են տեխնիկական առաջադիմությունը։

Տեխնիկական առաջադիմության խթանման տեսակետից ուշադրության արժանի է ակադեմիկոս Վ. Տրապեզնիկովի առաջարկած «արդյունավետ միավորի» հաշվով ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման ցուցանիշը («Правда», № 293, 1963 թ.)։ Հեղինակն առաջարկում է այժմ գործող ցուցանիշների՝ համախառն արտադրանքի, ինքնարժեքի, աշխատանքի արտադրողականության հաշվարկները կատարել ոչ թե արտադրանքի ֆիզիկական միավորի, այլ «արդյունավետ միավորի» հիման վրա, որը հաշվի է առնում արտադրանքի որակը։ Այլ խոսքով, ձեռնարկությունների արտադրած արդյունքները պետք է վերածվեն «արդյունավետ միավորների», որոնց գումարն էլ հենց ցույց կտա ձեռնարկությունների տնտեսական գործունեության մակարդակը։ Իրոք, ձեռնարկությունների միջին հաշվետվական թվերը դեռ ոչինչ չեն ասում արտադրված արդյունքների որակի, տեխնիկական պայմանների, դրանց իսկական արժեքի, ժողովրդատնտեսական նշանակության մասին։ Այսպես՝ Բաքվի ավտոդողերի վազքը մեկ ու կեսից երկու անգամ պակաս է, քան Յարոսլավլի նույնատիպ ավտոդողերինը։ Ժողովրդատնտեսական իմաստով, Յարոսլավլի յուրաքանչյուր ավտոդողը հավասար է Բաքվի 1,5—2 ավտոդողին, բայց պլանային տվյալներում դրանք հանդես են գալիս հավասար հիմունքներով։ Եթե մենք, օրինակի համար, «արդյունավետ միավորը» ընդունենք Բաքվի ավտոդողը, ապա առաջարկվող սիստեմի պայմաններում Յարոսլավլի արտադրած յուրաքանչյուր 100 ավտոդողը հավասար է 150—200 «արդյունավետ միավորի» և դրան համապատասխան էլ պետք է հաշվարկենք համախառն արտադրանքը, ինքնարժեքը, աշխատանքի արտադրողականությունը և այլն։

Մեր կարծիքով, «արդյունավետ միավոր» պետք է ընդունել ոչ թե արտադրվող վատագույն, այլ պրոգրեսիվ միջին տեխնիկական բնութագիր ունեցող սարքավորումը, մեքենան, հումքը, վառելիքը, մետաղը և այլն։ Այդ կիջեցնի վատորակ և հնացած կոնստրուկցիայի արտադրանք տվող ձեռնարկությունների ցուցանիշները, կոլեկտիվին կզրկի նյութական խրախուսանքից, բայց կխթանի բարձրորակ արտադրանքի արտադրությունը։

Ինչպես տեսնում ենք, «արդյունավետ միավորի» հաշվով ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատումը կխթանի տեխնիկական առաջադիմությունը։ Իհարկե, հնարավոր չէ «արդյունավետ միավորի» հաշվով ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը գնահատել արտադրության բոլոր ճյուղերում։ Ուստի, անհրաժեշտ է այդ ճյուղերի համար մշակել այնպիսի ցուցանիշներ, որոնք, մի կողմից՝ ճիշտ գնահատեն ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը, մյուս կողմից՝ խթանեն տեխնիկական առաջադիմությունը։ «Արդյունավետ միավորի» ցուցանիշը կարելի է կիրառել մեքենաշինության, քիմիական արդյունաբերության (ավտոդողերի, պարարտանյութերի և այլն), սև մետալուրգիայի ու այլ ճյուղերում։

Մեր կարծիքով, նույնպիսի մոտեցում չպետք է լինի, օրինակ, թեթև արդյունաբերության ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատմանը։ Թեթև արդյունաբերությունն ունի իր առանձնահատկությունները։ Նրա արդյունքը միայն երկարակեցությամբ, դիմացկունությամբ, ծախսված հումքի քանակով և որակով չի կարելի գնահատել։ Դրա հետ միասին, անհրաժեշտ է հաշվի առնել արտադրված հագուստի, կոշիկի կամ սպառման այլ առարկայի գույնը, ճաշակով պատրաստելը, նորաձևության համապատասխանելը և այլն։ Բացի դրանից, թեթև արդյունաբերության արտադրանքի նկատմամբ պահանջարկը (նորաձևության իմաստով) անհամեմատ արագ է փոխվում, քան արդյունաբերության մյուս ճյուղերի արտադրանքինը։ Իսկ որպեսզի կոլեկտիվների այդ ուղղությամբ կատարված աշխատանքն անպայման խրախուսվի, նպատակահարմար է թեթև արդյունաբերության ձեռնարկությունների գործունեությունը գնահատել մշակման նորմատիվային արժեքով։

Թեթև արդյունաբերության ձեռնարկությունների գործունեությունը մշակման նորմատիվային արժեքով գնահատելը կտա հետևյալ դրական արդյունքները։ Նախ՝ ձեռնարկությունների կոլեկտիվներն արգելք չեն հանդիսանա առաջադիմական և էժան հումքի լայն կիրառմանը, որովհետև այն չի վատացնի ձեռնարկության տնտեսական ցուցանիշները, ինչպես լինում էր «համախառն արտադրանքի» պայմաններում։ Դա թեթև արդյունաբերության

մեջ տեխնիկական առաջադիմության ապահովման առաջին պայմանն է։ Երկրորդ՝ մշակման նորմատիվային արժեքը ձեռնարկությունների կոլեկտիվներին մղում է կոմպլեքսային մեքենայացման ենթարկել և ավտոմատացնել արտադրությունը, որովհետև հիմնական միջոցների փոխանցված արժեքը մտնում է այդ ցուցանիշի մեջ։ Դրա հետ միասին, մշակման նորմատիվային արժեքի ցուցանիշը ձեռնարկությունների կոլեկտիվներին կստիպի նաև ռացիոնալ օգտագործել արտադրական կարողությունները։ Եվ վերջապես, մշակման նորմատիվային արժեքի ցուցանիշը թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվներին չի կաշկանդում նոր ասորտիմենտի, նոր մոդելի արտադրանքի արտադրության գործում։

Իհարկե, մշակման նորմատիվային արժեքի ցուցանիշը նույնպես զերծ չէ թերություններից։ Այն ձեռնարկությունների կոլեկտիվներին որոշ չափով կըստրամադրի դեպի աշխատատար արդյունքների արտադրությունը։ Բայց, ինչպես տեսանք, արտադրական կոլեկտիվները պակաս շահագրգռվածություն հանդես չեն բերի դրա հակադիր տենդենցի՝ արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման ուղղությամբ։

Մշակման նորմատիվային արժեքի ցուցանիշը նպատակահարմար է կիրառել արդյունաբերության որոշ և ոչ թե բոլոր ճյուղերում, ինչպես առաջարկում են Ֆ. Տաբեևը, Ա. Գրինկովը (Թաթարական ԱՍՍՌ) և ուրիշներ։

Մեր կարծիքով, դրանով չի ավարտվում ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման ճիշտ ցուցանիշների սահմանումը։ Անհրաժեշտ է այդ ուղղությամբ շարունակել աշխատանքները։ Արդյունաբերության շատ ճյուղերում, հավանաբար, պետք է կիրառել ուրիշ ցուցանիշներ։

Այսպիսով, ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման ցուցանիշները չպետք է լինեն շաբլոն, ընդհանուր, այլ պետք է հաշվի առնեն արտադրության ճյուղերի, անգամ ձեռնարկությունների առանձնահատկությունները, խթանեն տեխնիկական առաջադիմությունը։

Ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման այս կամ այն ցուցանիշը նախապես պետք է տարածել սահմանափակ թվով արտադրական օբյեկտների վրա, որպեսզի մինչև մասսայական կիրառումը հնարավոր լինի բացահայտել ու վերացնել դրա հետ կապված թերությունները։ Բացի դրանից, ձեռնարկությունների մյուս ցուցանիշների պլանավորումը պետք է կատարվի նոր կիրառվող հիմնական ցուցանիշին համապատասխան։ Գործնականում, հաճախ, ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման ցուցանիշը փոխում են, բայց մյուս ցուցանիշների կամ ֆոնդերի պլանավորումը շարունակվում է հին կարգով։ Օրինակ, այդպես է այժմ վիճակը թեթև արդյունաբերության ձեռնարկություններում, որտեղ կիրառվում է մշակման նորմատիվային արժեքը, բայց հին կարգով տրվում են առաջադրանքներ՝ ապրանքային արտադրանքի, կուտակման, ինքնարժեքի գծով։ Կամ աշխատանքի արտադրողականության բարձրացման առաջադրանքին համապատասխան չի տրվում աշխատավարձի ֆոնդ։ Պարզ է, որ այսպիսի պայմաններում ձեռնարկությունների տնտեսական գործունեության գնահատման և պլանավորման ամենաճիշտ ցուցանիշն էլ սպասվելիք արդյունք չի տա։

Իհարկե, երբ առաջարկվում է հաշվի առնել արդյունաբերության տարբեր ճյուղերի առանձնահատկությունները և դրանց համապատասխան սահմանել ձեռնարկությունների տնտեսական գործունեության պլանավորման և գնա-



հատման տարբեր ցուցանիշներ, դա չի նշանակում թե պետք է ընդհանրապես հրաժարվել «համախառն արտադրանքի» ցուցանիշից։ Ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով անհրաժեշտ կլինի առանձին ճյուղերի համար կիրառվող ցուցանիշները բերել մեկ ընդհանուր հայտարարի, արտահայտել մեկ ընդհանրացնող ցուցանիշով։ Այդպիսի ցուցանիշ եղել է և կմնա «համախառն արտադրանքի» ցուցանիշը։

Տեխնիկական առաջադիմության խթանման այդ արմատական հարցերի լուծումից բացի պետք է կատարելագործել նաև նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման նյութական խրախուսման կարգը։

Ինչպես հայտնի է, վերջին տարիներին պարտիան խիստ դատապարտեց ժողովրդատնտեսական պլանի ձևավորման մինչ այդ կիրառվող սկզբունքը, որտեղ արտադրության ճյուղերի զարգացման տեմպերը որոշվում էին ըստ ստեղծված համամասնությունների, միջին վիճակագրական տվյալների հիման վրա։ Պլանավորման այդպիսի մեթոդի պայմաններում արտադրության հին ճյուղերը, որոնք ունեին զարգացման բարձր մակարդակ և բարձր տեսակարար կշիռ, ստանում էին ավելի շատ միջոցներ, քան այն ճյուղերը, որոնք ավելի առաջադիմական և հեռանկարային էին։

Պարտիան խնդիր դրեց արմատապես վերանայել ժողովրդատնտեսական պլանի ձևավորման այդ սկզբունքը։ ՍՍՌՄ պետպլանին, մյուս կենտրոնական ու տեղական պլանավորող օրգաններին առաջարկված է նոր պլաններ մշակելիս ելնել արդյունաբերության առաջադիմական ճյուղերը առավել արագ տեմպերով զարգացնելու անհրաժեշտությունից. խնդիր է դրվում՝ առավել արագ տեմպերով զարգացնել արդյունաբերության ու գիտության այն ճյուղերը, որոնք վճռական նշանակություն ունեն կոմունիզմի էկոնոմիկայի ձևավորման գործում։

Այս խնդիրը հնարավոր է իրականացնել գիտության և արտադրության առաջադիմական ճյուղերի զարգացման միջոցով։ Մեր կարծիքով, պետք է մշակվի նյութական խթանման հատուկ սիստեմ առավել առաջադիմական և հեռանկարային արտադրության ու գիտության զարգացման համար։ Այս ճյուղերում նոր արդյունքների արտադրության յուրացման, նոր կոնստրուկցիաների ստեղծման, արտադրության ու տեխնոլոգիայի կատարելագործման համար պետք է սահմանվեն ավելի բարձր պարգևներ, քան արտադրության մյուս ճյուղերի համար։ Այդ անհրաժեշտ է, քանի որ գիտության ու արտադրության առավել առաջադիմական ճյուղերը հեղաշրջում են ժողովրդական ողջ տնտեսությունը։ Այդ պատճառով այս կամ այն միջոցառման տնտեսական արդյունավետությունը դժվար և, հաճախ, անհնարին է հաշվարկել, որովհետև դեռևս ամբողջական պատկերացում չունենք դրա կիրառման բոլոր շըրջանակների մասին։ Այդպիսի պայմաններում տնտեսական արդյունավետության հաշվարկումը լինում է մասնակի և ոչ լրիվ, իսկ դրա դիմաց հատուցումը՝ ոչ բավարար։ Նյութական խրախուսման բարձր չափի սահմանումը մի կողմից կլրացնի այդ բացը, մյուս կողմից՝ կխթանի այդ ճյուղերի առավել արագ զարգացումը։ Այնինչ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման ու ներդրման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման բնագավառում աշխատողների պարգևատրման գործող Կանոնադրությունում այդպիսի մոտեցում չի ցուցաբերված։

Ավելին, գործող Կանոնադրությունը նախապատվությունը տալիս է միայն

մեքենաշինությանը և մետաղամշակությանը, ինչպես նաև ընդհանրապես գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկտորական կազմակերպություններին։ Այդ բնագավառներում ղեկավար, գիտական և ինժեներատեխնիկական աշխատողները նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման համար կարող են պարգև ստանալ տարեկան մինչև 6 պաշտոնական դրույքի չափով, իսկ արդյունաբերության մյուս ճյուղերինը, ինչպես նաև շինարարության, տրանսպորտի, կապի և երկրաբանական-հետախուզական կազմակերպություններինը՝ մինչև 3 պաշտոնական դրույքի չափով (տե՛ս Կանոնադրություն, կետ 5)։ Դրան համապատասխան էլ նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման պարգևավճարման գումարները մեքենաշինության և մետաղամշակության մեջ սահմանվում են արդյունաբերական-արտադրական անձնակազմի աշխատավարձի ֆոնդի մեկ տոկոսի չափով, իսկ արդյունաբերության մյուս ճյուղերինը, այդ թվում այնպիսի հեռանկարային ճյուղերինը, ինչպիսիք են քիմիական արդյունաբերությունը և էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 0,5 տոկոսի չափով (տե՛ս նույն տեղը, կետ 7)։

Ինչպես տեսնում ենք, ո՛չ միայն առավել չափով չեն խթանվում գիտության և արտադրության առաջադիմական ու հեռանկարային ճյուղերը, այլև արտադրության շատ հեռանկարային ճյուղերի ղեկավար և ինժեներա-տեխնիկական աշխատողների՝ նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման համար պարգևը սահմանված է մինիմում չափով։

Մեր կարծիքով, նախ՝ հավասարության նշան չպետք է դնել գիտահետազոտական, նախագծային և կոնստրուկտորական կազմակերպությունների միջև։ Պետք է առանձնացնել և առավել խթանել այն կազմակերպությունների գործունեությունը, որոնք լուծում են առավել առաջադիմական պրոբլեմներ։

Երկրորդ՝ պետք է դիֆերենցել նաև արդյունաբերության ճյուղերի, շինարարության և երկրաբանական-հետախուզական կազմակերպությունների ղեկավար և ինժեներա-տեխնիկական աշխատողների նոր տեխնիկայի ստեղծման ու ներդրման համար պարգևատրման չափը և նախապատվությունը տալ այն ուղղություններին, որոնք առավել հեռանկարային են։

Մեքենաշինությունն ու մետաղամշակությունը նույնպես պետք է դիֆերենցել, որովհետև չի կարելի հավասարապես խթանել մեքենաշինության և մետաղամշակության բոլոր ուղղությունները։

Ինչպես հայտնի է, մեքենաշինության ավելի մասսայական ճյուղերում տեխնիկական առաջադիմության հիմնական տենդենցը անհատական, մանրսերիական արտադրության փոխարինումն է խոշոր-սերիական և մասսայական հարահոս-կոնվեյերային ու ավտոմատացված արտադրությամբ։ Արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման շնորհիվ մասնագիտացված մեքենաներին փոխարինելու են գալիս կոմբինացված մեքենաները, ավտոմատները և ավտոմատացված գծերը։ Ներկայումս հարահոս-ավտոմատ արտադրությունը մեքենաշինության մեջ չի գերազանցում մեքենաշինության ընդհանուր ծավալի 10 տոկոսը։ Հեռանկարում, ինչպես ցույց են տալիս հաշվարկներն ու բարձր զարգացած երկրների փորձը, մասնագիտացված մասսայական, հարահոս և ավտոմատացված արտադրության տեսակարար կշիռը մեքենաշինության մեջ պետք է հասցնել ամենաքիչը 40—50 տոկոսի («Плановое хозяйство», № 2, 1964 թ., էջ 15)։

Ցավոք, տեխնիկական առաջադիմության և մասնագիտացման այդ առա-



ջադիմական տենդենցը դեռևս, ինչպես հարկն է, նյութապես չի խթանվում։ Փաստորեն առավել մեծ տեղ է տրվում բարձր արտադրողական, բայց ոչ մասսայական ու խոշոր սերիական մեքենաների ու սարքերի արտադրությանը։

Մեր առաջընթացի շահերը պահանջում են վերանայել այդ պրակտիկան և առավել խթանել արտադրության զարգացման պրոգրեսիվ ուղղությունները։

Բացի դրանից, ճիշտ չէ նաև ղեկավար, գիտական ու ինժեներատեխնիկական աշխատողների պարգևի առավելագույն չափը տարեկան 1,2 հազար ռուբլի սահմանելը։ Այդ հանգամանքը նույնպես խանգարում է նոր տեխնիկայի ստեղծմանն ու ներդրմանը, որովհետև կոլեկտիվները շահագրգռվածություն հանդես չեն բերում ավելի մեծ պրոբլեմներ լուծելու գործում։

Այդպիսի սահմանափակումներ կան նաև նոր տեխնիկայի ստեղծմանն ու ներդրմանն անմիջականորեն մասնակցող բանվորների պարգևատրման ասպարեզում. պարգևի առավելագույն չափը սահմանվում է տարեկան մինչև 3 տարիֆային դրույք։

Պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանների ղեկավար աշխատողների խորհրդակցությունում (1964 թվականի փետրվարի 28-ին) նշվեց, որ «Կարելի է խնայել ամեն ինչում, բայց չի կարելի խնայել անմիջականորեն մթերքներ արտադրող մարդկանց նյութական խթանման գործում» («Правда», № 61, 1964 թ.)։

Այսպիսի մոտեցում պետք է ցուցաբերել նաև մեր առաջընթացի հիմքը հանդիսացող տեխնիկական պրոգրեսի հանդեպ։

Ինչպես հայտնի է, մեքենաշինության և մետաղամշակության ձեռնարկություններին, որոնք քաղաքացիական արտադրանք են արտադրում, թույլատրվում է ինքնարժեքի մասհանումից կազմակերպել նոր տեխնիկայի յուրացման ֆոնդ։ Մեքենաշինական և մետաղամշակման նոր արդյունքների յուրացման ծախսերը, մինչև սերիական արտադրությունը, չեն մտցվում անմիջապես այդ արտադրանքի ինքնարժեքի մեջ, այլ հատուցվում են նոր տեխնիկայի յուրացման ֆոնդի հաշվին. ուրեմն կոնստրուկտորական, փորձնական, նախապատրաստական, ինչպես նաև գործիքների ու հարմարանքների առաջին կոմպլեկտների, առաջին փորձնական օրինակների կամ առաջին փորձնական սերիաների ծախսերը չեն հաշվվում տվյալ արտադրանքի ինքնարժեքում։ Այդ, անշուշտ, մեծ չափով բարելավում է նոր արտադրանք թողարկող ձեռնարկության տնտեսական գործունեության ցուցանիշները և նպաստում նոր տեխնիկայի արագ յուրացմանը։

Բայց տրամաբանական չէ, որ նոր տեխնիկայի յուրացման ֆոնդ չկա մեքենաշինության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են՝ տրակտորաշինությունը, գյուղատնտեսական մեքենաշինությունը, կարի մեքենաների արտադրությունը։ Բացի դրանից, այդ կարգը չի տարածվում մեքենաները կոմպլեկտավորող նոր շինվածքների, ակումուլյատորների, լամպերի, կիսահաղորդիչների, պլաստմասսաների, տեխնիկական ապակու, մեքենաների հանգույցների և ագրեգատների որոշ մասերի արտադրության յուրացման վրա։ Ինչպես տեսնում ենք, այդ բնագավառում նույնպես, արտադրության առաջադիմական շատ ճյուղեր դարձյալ չեն խթանվում։

Մեր կարծիքով, նոր տեխնիկայի յուրացման ֆոնդ պետք է ստեղծել եթե ոչ բոլոր, ապա գոնե արտադրության առավել առաջադիմական ու հեռանկա-

բային ճյուղերում և դրանց կոմպլեկտավորող շինվածքներ մատակարարող
արտադրություններում։
Տեխնիկական առաջադիմության համար բավական չէ ստեղծել նոր,
բարձր արտադրողական մեքենա, սարք, խնայողաբեր աշխատանքի առարկա,
մշակել նոր տեխնոլոգիա, այլ դրա հետ միասին անհրաժեշտ է ապահովել
դրանց ռացիոնալ օգտագործումը։ Հաճախ ձեռնարկությունների կոլեկտիվնե-
րը կատարում են նոր տեխնիկայի ներդրման պլանը, ստանում պարգև՝ դրան
համապատասխան։ Բայց այդ ներդրված տեխնիկան ռացիոնալ չի օգտագործ-
վում և հսկայական արտադրական կարողություններ անգործության են
մատնվում։ Այսպես, 1962 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության
հիմնական ֆոնդերը, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել են 61
տոկոսով, իսկ համախառն արտադրանքը՝ 49 տոկոսով։ Առավել վատ է հիմ-
նական ֆոնդերի օգտագործումը ռեսպուբլիկայի արդյունաբերության այնպիսի
առաջատար ճյուղերում, ինչպիսիք են քիմիական և շինանյութերի արդյունա-
բերությունը։ Բավական է նշել, որ յոթնամյակի անցած տարիների ընթաց-
քում (1959—1962 թթ.) քիմիական արդյունաբերության հիմնական արտա-
դրական ֆոնդերն ավելացել են մոտավորապես 2,2 անգամ, իսկ համախառն
արտադրանքն՝ ընդամենը 58-տոկոսով, շինանյութերի արդյունաբերության
մեջ, համապատասխանաբար, 2,1 անգամ և 73 տոկոսով։
Գործը պետք է այնպես կազմակերպել, որ ձեռնարկությունների բանվոր-
ներն ու ինժեներատեխնիկական աշխատողները շահագրգռված լինեն տեխնի-
կայի ինչպես արագ ներդրմամբ, այնպես էլ դրա ռացիոնալ օգտագործմամբ։
Բանվորների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով անհրաժեշտ
է նոր, բարձր արտադրողական տեխնիկայի ներդրման կապակցությամբ ար-
տադրական նորմաներն այնպես վերանայել, որ բանվորների աշխատավարձն
զգալի չափով բարձրանա։ Այսպիսի պայմաններում բանվորը մշտապես շա-
հագրգռված կլինի նոր տեխնիկայի ներդրմամբ և ռացիոնալ օգտագործմամբ։
Ինչպես հայտնի է, նոր տեխնիկայի ներդրման և յուրացման առաջա-
դրանքները կատարելու համար ինժեներատեխնիկական աշխատողներն ստա-
նում են միանվագ պարգև, որը տեխնիկական առաջադիմության ժամանակա-
վոր խթան է։ Անհրաժեշտ է գործն այնպես կազմակերպել, որ ձեռնարկու-
թյունների ինժեներատեխնիկական աշխատողները մշտապես շահագրգռված
լինեն տեխնիկական առաջադիմությամբ, արտադրության կատարելագործ-
մամբ և նոր տեխնիկայի ռացիոնալ օգտագործմամբ։ Դրա համար ինժեներա-
տեխնիկական աշխատողները պետք է արտադրության նվաճած մակարդակի
համար ինչ-որ մնայուն, կայուն մեծության նյութական խրախուսանք ստա-
նան։ Այդ կարելի է իրականացնել ձեռնարկությունների արտադրության ծա-
վալի և ինժեներատեխնիկական աշխատողների աշխատավարձի դրույքների
միջև որոշակի կապ ստեղծելու միջոցով։
Տեխնիկական առաջադիմության խթանման գործում կարևոր նշանակու-
թյուն ունի նաև գիտականորեն հիմնավորված գների սահմանումը, որը հա-
տուկ ուսումնասիրության կարիք է զգում։

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՆՆԴԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՁԵՎԵՐԻ ՄԱՍԻՆ[1]

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության կառավարման մակարդակը բարձրացնելու հարցերը միշտ էլ եղել են պարտիայի ու կառավարության ուշադրության կենտրոնում։ Մեր զարգացման բոլոր էտապներում, հատկապես վերջին տասնամյակում, պարտիան գտել և օգտագործել է ժողովրդական տնտեսության կառավարման առավել կենսական, արտադրողական ուժերի զարգացմանը համապատասխան ձևեր ու եղանակներ։ Կառավարման նոր ձևերը լայն հնարավորություններ են ստեղծել արդյունաբերության բոլոր ճյուղերի, այդ թվում նաև սննդարդյունաբերության զարգացման համար։

Սակայն այդ ձևերն ու եղանակները չի կարելի դիտել որպես անփոփոխ, անշարժ երևույթ։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նոյեմբերյան (1962 թ.) պլենումը նշեց կառավարման մակարդակի հետագա բարձրացման ուղիները։

Ռեսպուբլիկայի սննդարդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքի փորձը ցույց է տալիս, որ արտադրության կառավարման եղանակներն ներկայումս և, հատկապես առաջիկայում, չեն ապահովում պոտենցիալ հնարավորությունների օգտագործումը սննդարդյունաբերության զարգացման գործում։

Սննդարդյունաբերության ձեռնարկությունները գտնվում են ռեսպուբլիկայի չորս գերատեսչությունների՝ ժողտնտխորհի, Հայկոոպի, գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների մինիստրության և բնակչության կենցաղային սպասարկման գլխավոր վարչության տնօրինության ներքո։ Այդ ձեռնարկությունների գերակշռող մասը կենտրոնացված է ժողտնտխորհի սիստեմում, որը արդյունաբերական ձեռնարկությունները ղեկավարում է գլխավորապես երեք ճյուղային վարչությունների միջոցով։ Հայկոոպը ղեկավարում է արտադրական վարչության, իսկ մյուս գերատեսչություններն՝ առանձին ինժեներների միջոցով։

Այդ վարչությունները բազմաճյուղ են, ունեն ենթաճյուղային բաժիններ՝ մեծ թվով ձեռնարկություններով։ Այսպես, օրինակ, ռեսպուբլիկայի ժողտնտխորհի սննդարդյունաբերության վարչության տնօրինության ներքո կան գինեգործական 24 ձեռնարկություն՝ խաղողի ընդունման ու վերամշակման 25 կետով, պահածոների 9 գործարան, մթերման մի քանի կետերով, ձեթ-

[1] Տպագրվում է առաջարկության կարգով։

օճառի մեկ կոմբինատ, եթերայուղային կոմբինատ՝ սովխոզով, ծխախոտի ֆերմենտացիոն 5 ձեռնարկություն՝ մթերման 18 կետով, գարեջրի-լիմոնադի 5 գործարան, հանքային ջրերի արտադրության 5 գործարան, ձկան որսի կոմբինատ՝ ձկնաբուծական 5 տնտեսությունով, շաքարի գործարան, սննդաթթվուտների արտադրության գործարաններ։ Դրանցից բացի, սննդարդյունաբերության վարչության սիստեմի մեջ են մտնում նաև տարայի ստվարաթղթե-լիտոգրաֆիական արտադրությունը։ Հուշարուլկեղենի և հրուշակեղենի արդյունաբերության վարչության սիստեմի մեջ են մտնում հացի 24 գործարան և մեքենայացված փուռ, հրուշակեղենի 4 ֆաբրիկա ու կոմբինատ, սննդի կոմբինատ, ինչպես նաև՝ մակարոնի արտադրությունը։ Այստեղ նույնպես արտադրվում են ստվարաթղթե-լիտոգրաֆիական տարաներ։

Ժողտնտխորհի մսի-կաթնամթերքների արդյունաբերության վարչությանը ենթակա են կաթի 5 կոմբինատ ու գործարան, պանրի 23 գործարան, որոնց կազմի մեջ մտնում են մի քանի փոքր գործարաններ և կաթի վերամշակման 150 մշտապես գործող ու ժամանակավոր կետ։ Դրանցից բացի, վարչության սիստեմի մեջ են մտնում մսի 3 կոմբինատ, մսի պահածոների 1 կոմբինատ և անասունների մթերման կազմակերպություն՝ մի քանի կետերով։

Անհանդուրժելի է, որ միատեսակ արդյունաբերական ձեռնարկությունները գտնվում են կառավարման տարբեր օրգանների տնօրինության տակ։ Հայկոոպի սիստեմում կան հացաթխման 147 ձեռնարկություն, պահածոների 6 գործարան և պտղաբանջարեղենի կոմբինատներ, ոչ ալկոհոլային խմիչքներ և գինու արտադրության մի քանի, ինչպես նաև սննդամթերքների այլ տեսակներ (բաստուրմա, սուջուխ, ալանի և այլն) արտադրող ձեռնարկությունները։

Ժողտնտխորհի, Հայկոոպի և գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրության՝ արդյունաբերության այդ ճյուղերից յուրաքանչյուրի արտադրական-տեխնիկական կառավարումն իրականացնում են վարչության մեկ-երկու ինժեներ, որոնք, բնականաբար, ի վիճակի չեն հմտորեն վճռելու արդյունաբերության ամբողջ ճյուղի զարգացման, տեղաբաշխման, էկոնոմիկայի, տեխնիկական առաջադիմության ու կազմակերպական հարցերը, իսկ ճյուղային վարչություններն այդ պայմաններում փաստորեն դառնում են փոխանցող օղակ ժողտնտխորհի կենտրոնական ապարատի, Հայկոոպի, կամ գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրության ու ձեռնարկությունների միջև։

Սննդարդյունաբերության ճյուղերի ղեկավարման այսպիսի անջատվածության պայմաններում, անկասկած, հնարավոր չէ արդյունավետ օգտագործել արտադրական կարողությունները և հումքային հնարավորությունները, հմտորեն լուծել տեխնիկական առաջադիմության և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման հարցերը, ինչպես նաև միասնական մեթոդական ղեկավարություն ցույց տալ ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության ձեռնարկություններին։

Ահա թե ինչու ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի փետրվարյան (1964 թ.) պլենումը առաջնահերթ խնդիր համարեց վերամշակող արդյունաբերության ձեռնարկությունների կոոպերացումը գյուղատնտեսական ձեռնարկությունների հետ։ Պարտիայի ձեռնարկած միջոցների շնորհիվ ռեալ հնարավորություններ են ստեղծվել փոփոխելու արդյունաբերության և գյուղատնտեսության՝ այժմ



միմյանցից անջատ գերատեսչությունների միջև գոյություն ունեցող կազմակերպական ձևերն ու տնտեսական փոխադարձ կապերը։

Հայտնի է, թե ժողովրդական տնտեսությանն ինչպիսի՛ վնասներ են հասցնում գերատեսչական արգելքները և թե ինչպիսի՛ անկանոն հարաբերություններ են ստեղծում դրանք գյուղատնտեսության ու արդյունաբերության միջև։ Գերատեսչական պատնեշները վերացնելու և փոխադարձ կապերն ամրապնդելու անհրաժեշտությունը վկայող բազմաթիվ փաստերից մենք կհիշատակենք հիմնականները։

Հայաստանը, ինչպես հայտնի է, համարվում է բարձրորակ գինեգործության՝ թունդ ու քաղցր գինիների թողարկման երկիր։ Նման գինիների արտադրության համար անհրաժեշտ են խաղողի համապատասխան տեսակներ. սակայն սովխոզներն ու կոլտնտեսությունները, գերատեսչական շահերից ելնելով, մշակում են առավելապես բարձր բերքատու խաղողի տեսակներ։ Նման վերաբերմունքի հետևանքով տարեցտարի նվազում է ընդհանրապես թունդ գինիների, հատկապես՝ համաշխարհային համբավ ձեռք բերած Մուսկաթ, Սապերավի, Արևիկ ու այլ գինիների արտադրությունը։ Այդ գինիներն ստացվում են խաղողի եվրոպական տեսակներից, որոնց մշակմանն անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում։

Կոլտնտեսություններն ու սովխոզները մշակում են միայն բարձր բերքատու պոմիդորներ, աչքաթող անելով այնպիսի տեսակները, որոնք պարունակում են չոր նյութեր և ունեն այլ օգտակար հատկություններ. այդպիսի վիճակն ստիպում է օգտագործել տրանսպորտային լրացուցիչ միջոցներ և լրացուցիչ ծախսեր կատարել տոմատների ավելորդ ջուրը հեռացնելու համար։ Այնուհետև, չեն պահպանվում վաղահաս, միջին հասունացման, ուշահաս և այլ տոմատների աճեցման ժամկետները, որի հետևանքով պահածոների գործարաններն ամռանը և աշնանը նորմալ չեն գործում։ Ռեսպուբլիկայի պահածոների գործարանները վերամշակում են միայն ծիրան, դեղձ ու խաղող։ Դեղձն էլ լինում է մի տեսակի՝ Երևանի։ Մինչդեռ գործը լավ կազմակերպելու դեպքում կարելի է կոմպոտներ ու մուրաբաներ արտադրել կեռասից, բալից, սալորից, հոնից, սերկևիլից։

Կոլտնտեսություններն ու սովխոզներն անհրաժեշտ ուշադրություն չեն հատկացնում արդյունաբերությունը սահմանված ժամկետներին բանջարեղենի անհրաժեշտ տեսակներով (վաղահաս գազար, արմտիք, կանաչեղեն) ապահովելուն, որը և վատ է անդրադառնում բնակչության շրջանում մեծ պահանջարկ ներկայացնող բանջարեղենի պահածոների արտադրանքի թողարկման վրա։ Քաղցր պղպեղ համարյա թե չի աճեցվում։

Կոլտնտեսությունների, սովխոզների և գործարանների միջև տարաձայնություններ են լինում անասունների գիրությունը, կաթի յուղայնությունը, խաղողի շաքարայնությունը, ճակնդեղի մաքրությունը, ծխախոտի խոնավությունը և այլն որոշելու հարցերում. գործարանների աշխատողները ցանկանում են իջեցնել ստացված մթերքների ու հումքի ցուցանիշները, իսկ մյուսները՝ բարձրացնել։

Այսպիսի երևույթները վերացնել և կանոնավոր փոխհարաբերություններ հաստատել կարելի է միայն գյուղատնտեսական և վերամշակող ձեռնարկությունները միասնական տնտեսական օրգանում միավորելու միջոցով։ Դրա հետ միասին, կազմակերպական նոր ձևը կնպաստի գյուղատնտեսության

ինտենսիվացման պրոբլեմի լուծմանը, կապահովի արտադրանքի ասորտիմենտի ընդլայնումը, ինքնարժեքի իջեցումը, բերքատվության և աշխատանքի արտադրողականության բարձրացումը, հումքի և թափուկների արդյունավետ օգտագործումը և կամրապնդի ձեռնարկության ֆինանսական-տնտեսական հիմքերը։

Կարծում ենք, որ արտադրության ժամանակակից (հատկապես առաջիկայում) մասշտաբների և գյուղատնտեսության ինտենսիվացման վիթխարի ծրագրի կենսագործման պայմաններում, երբ գյուղատնտեսական ձեռնարկությունների և վերամշակվող արդյունաբերության, հատկապես, ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության ձեռնարկությունների կոոպերացման համար լայն ասպարեզ է բացվել, հասունացել է հայկական վարչական-տնտեսական շրջանում արդյունաբերական ու գյուղատնտեսական ձեռնարկությունների կոմպլեքսային, մասնագիտացված արտադրական միավորումներ ստեղծելու անհրաժեշտությունը։

Դրանց հիմքում, մեր կարծիքով, պետք է դնել՝

ա) միատեսակ արտադրանք թողարկող կամ միատեսակ հումքի վրա խարսխված արտադրության նեղ-ճյուղային սկզբունքը.

բ) ունենալ մասնագիտացված սովխոզներ, որոնք հիմնականում աճեցնում են սննդարդյունաբերության տվյալ ճյուղի արդյունաբերական վերամշակման համար անհրաժեշտ գյուղատնտեսական կուլտուրաներ։

Կոլտնտեսությունները պետք է արտադրանքը հանձնեն մթերման-վերամշակման հիմնական հումքային բազաների շրջանում տեղաբաշխված մթերման-վերամշակման կետերին։

Մասնագիտացված արտադրական միավորումները պետք է լինեն ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության միայն տվյալ ճյուղի ղեկավար և ուղղություն տվող կենտրոնը։ Նրանց պետք է ենթարկվեն արդյունաբերական բոլոր համապատասխան ձեռնարկությունները՝ ռեսպուբլիկայի մասնագիտացված սովխոզներով։

Յուրաքանչյուր մասնագիտացված արտադրական միավորում՝ լինելով սննդարդյունաբերության որոշակի արտադրանքի արտադրության ու թողարկման ֆիրմա, ռեսպուբլիկայում կվարի արդյունաբերության տվյալ ճյուղը և կիրականացնի արդյունաբերության ու գյուղատնտեսության տնտեսապես հիմնավորված զարգացման ու արդյունաբերական և գյուղատնտեսական ձեռնարկությունների տեղաբաշխման միասնական քաղաքականություն, համաչափ կլուծի տեխնիկական առաջադիմության քաղաքականության և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման ու ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության ձեռնարկությունների մեթոդական ղեկավարման հարցերը։

Սննդարդյունաբերության յուրաքանչյուր ճյուղի միավորումը պետք է ունենա յուրատեսակ անելիքներ, ինչպիսիք այժմ ունեն ժողտնտխորհի ճյուղային վարչությունները. այդ իսկ պատճառով էլ վերջինները պետք է վերացվեն։

Ձեռնարկությունների ղեկավարությունն ուժեղացնելու համար նպատակահարմար է միավորումները տեղաբաշխել հիմնական արտադրական կենտրոնում, կամ հումքային գլխավոր բազայի շրջանում։

Այսպես, օրինակ՝

1. գինեգործական միավորումը՝ — Արտաշատում



2. պահածոների միավորումը՝ — Հոկտեմբերյանում
3. կաթի-պանրագործության միավորումը՝ — Երևանում
4. մսի միավորումը՝ — Լենինականում
5. համի-սննդամթերքների միավորումը՝ — Երևանում
6. ծխախոտի-ֆերմենտացիոն միավորումը՝ — Երևանում
7. յուղի-ճարպերի միավորումը՝ — Երևանում
8. հացաթխման-հրուշակեղենի միավորումը՝ — Երևանում
9. գարեջրի, ոչ ալկոհոլային խմիչքների միավորումը — Երևանում
10. ձկան արտադրության միավորումը՝ — Սևանում

Մասնագիտացված արտադրական միավորումները պետք է անմիջականորեն ենթարկվեն արդյունաբերության ռեսպուբլիկական միասնական կենտրոնին՝ ժողովրդական տնտեսության խորհրդին։

Միավորված միատեսակ ձեռնարկություններից մեկը պետք է լինի գլխավորը, որը և պետք է ղեկավարի արդյունաբերության տվյալ ճյուղը, ընդ որում՝ գլխավոր ձեռնարկությունը պետք է ունենա միավորման ապարատի ենթաբաժանման համապատասխան կառուցվածք։ Այլ կերպ ասած, արտադրական-տեխնիկական, պլանային-տնտեսական, հաշվային-ֆինանսական, մատակարարման-իրացման և գյուղատնտեսական-մթերման հարցերի գծով հիմնական պարտականությունները պետք է կենտրոնացվեն արտադրական միավորման ապարատում, որը պետք է վարի այդ աշխատանքները և ղեկավարի միավորման մեջ մտնող ձեռնարկությունները։

Վերը նշված պարտականություններից ազատված ձեռնարկությունները կկարողանան հիմնական ուշադրությունը կենտրոնացնել թողարկվող արտադրանքի որակի և ասորտիմենտի, արտադրության կուլտուրայի և արդյունաբերության կատարելագործման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման, ինչպես նաև արտադրության բոլոր փուլերում հաշվառման ու հաշվետվության օրինակելի կարգի ապահովման վրա։ Պետք է նկատի ունենալ, որ ձեռնարկությունները բանկերի և մյուս կազմակերպությունների միջոցով ֆինանսական-հաշվային մեծ գործարքներ են վարելու հումքը հանձնողների և պատրաստի արտադրանքն իրացնողների հետ։

Այս խնդիրներին համապատասխան, պետք է կոմպլեկտավորվի ձեռնարկության վարչական ապարատը։

Մեր նախնական հաշվումներով, արտադրական միավորումների և նրանց ենթակա ձեռնարկությունների վարչական ապարատները կարող են կոմպլեկտավորվել ճյուղային վարչությունների, տրեստի, ձեռնարկությունների քանակի և աշխատավարձի ֆոնդերի սահմաններում։ Սակայն արտադրության կառավարման նոր ձևի կապակցությամբ, պետք է լուծվեն միավորման ղեկավար, ինժեներա-տեխնիկական աշխատողների և ծառայողների աշխատանքը վարձատրելու հետ կապված բոլոր հարցերը։ Չէ՞ որ տվյալ ճյուղի առաջատար ձեռնարկություններից մեկի բազայի վրա կառուցված արտադրական միավորումը պետք է միաժամանակ կատարի ինքնուրույն ձեռնարկության և ժողտնտխորհի ճյուղային վարչության ապարատի պարտականությունները։

Հաշվի առնելով արտադրական միավորումների ապարատների պատասխանատու աշխատողների աշխատանքի պայմանների բարդությունն ու կոնկ-

ըետությունը, հավանաբար կմշակվի նաև աշխատանքի վարձատրության նոր սխեմա։

Մենք շարադրեցինք արդյունաբերական ձեռնարկությունների կառավարման մակարդակը բարձրացնելու միայն հիմնական հարցերը, նկատի ունենալով, որ կառավարման առաջարկվող նոր ձևի հետ անմիջականորեն կապված մյուս հարցերը՝ արտադրության կենտրոնացման մակարդակի բարձրացումը, արտադրական կոոպերացիայի հետագա մասնագիտացումը, ընդլայնումը և այլն, պետք է լուծվեն արտադրական միավորումների պրակտիկ գործունեության կոնկրետ պայմաններում։

Քննարկված հարցերն առանձնապես մեծ հետաքրքրություն են ներկայացնում նաև ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թվականների հնգամյա պլանը մշակելու կապակցությամբ։ Այդ պլանի համար, որ կազմվելու է պլանավորման դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքով, սկզբնական շրջանում կհավաքվեն առաջարկներ և զանազան դիտողություններ յուրաքանչյուր ճյուղի վերաբերյալ։ Արտադրության աճի տեմպերը որոշելու համար անհրաժեշտ կապիտալ ներդրումները և դրանց արդյունավետությունը հաշվի առնելու և այլ պրոբլեմներ լուծելու միջոցով հնարավոր կլինի սահմանել ապագա պլանի բովանդակությունը։

Տնտեսական մյուս հարցերի մեջ կարևոր տեղ է գրավում տնտեսության ճյուղային նպատակահարմար կառուցվածքը որոշելը, որովհետև գիտական հիմնավորված պլանավորումը պետք է նոր, այլ կերպ ձևավորի արտադրության առավել նպատակահարմար, արդյունավետ ու առաջադիմական ճյուղային կառուցվածքը։

Ս. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ
Ինժեներ

---

# Գիտության աշխարհում

## ԱՍՏՐՈՖԻԶԻԿԱՆ ԵՎ ԿՈՍՄՈԳՈՆԻԱՆ ԱՅՍՕՐ

Լ. ՄԻՐԶՈՅԱՆ

Ֆիզիկո-մաթեմատիկական գիտությունների թեկնածու

Աստղագիտության՝ հազարամյակներ ընդգրկող պատմությունը հարուստ է տիեզերքի ուսումնասիրության բնագավառում մարդկային մտքի փայլուն հաղթանակներով։ Սկիզբ առնելով և զարգանալով մարդկության գործնական խնդիրների (ժամանակ և օրացույց, աշխարհագրական կոորդինատների որոշում ու կողմնորոշում և այլն) հողի վրա, աստղագիտությունը հետագայում հսկայական առաջընթաց ապրեց և իր ծաղկմանը հասավ XX դարում։

Այդ առաջընթացը վերաբերում է ո՛չ միայն աստղագիտական գործիքների ու գիտական մեթոդների կատարելագործմանը, որի շնորհիվ աստղագիտությունը հասավ բնական մյուս գիտությունների համար առայժմ անհասանելի (բացառությամբ, թերևս միջուկային ֆիզիկայի) ճշգրտության, այլև առաջին հերթին վերաբերում է անհերևակայելիորեն բազմազան մարմինների (տարրական մասնիկներից մինչև հարյուր միլիարդավոր աստղերից կազմված համակարգությունները՝ գալակտիկաները և նրանց խմբավորումները) ու երևույթների մասին ստացված գիտական արդյունքների քանակին ու որակին։

Նիկոլայ Կոպեռնիկոսի կողմից մոլորակային համակարգության արեգակնա-կենտրոն սիստեմի մշակումը, Գալիլեո Գալիլեյի՝ առաջին աստղադիտակով կատարած արժեքավոր հայտնագործությունները (Յուպիտերի արբանյակներ, Վեներայի փուլեր, Լուսնի ռելիեֆ, արևաբծեր, Ծիր կաթնի տարրալուծումը առանձին աստղերի և այլն) և Իոհան Կեպլերի կողմից երկնային մարմինների շարժման օրենքների հայտնագործումը աստղագիտության զարգացման կարևորագույն փուլերն են։

Իսահակ Նյուտոնի՝ գիտության պատմության մեջ դարագլուխ կազմող աշխատություններում տիեզերական ձգողականության օրենքի օգնությամբ տրվեց երկնային մարմինների շարժման օրենքների գիտական հիմնավորումը։

Երկնային մարմինների շարժումներին նվիրված այդ և հետագա աշխատանքները մեծ դեր խաղացին երկնային մեխանիկայի և, ընդհանրապես, տեսական մեխանիկայի զարգացման գործում, տեսականորեն նախապատրաստեցին և հնարավոր դարձրին արհեստական երկնային մարմինների՝ Երկրի արհեստական արբանյակների և տիեզերական հրթիռների թռիչքները մեր օրերում։ Բավական է նշել, որ արհեստական երկնային մարմնի ստեղծման հնարավորության տեսական հիմնավորմանը առաջին անգամ հանդիպում ենք Նյուտոնի «Բնափիլիսոփայության մաթեմատիկական հիմունքները» գրքում, որը լույս է տեսել 1687 թվականին։

Պահանջվեց ավելի քան 250 տարի Նյուտոնի այդ հանճարեղ կանխատեսումը իրականացնելու համար, որը XVIII և XIX դարերում, գիտության ու տեխնիկայի զարգացման ցածր մակարդակի պատճառով, ընկալվում էր որպես երկնային մարմինների շարժումների բացատրության մի պատկերավոր օրինակ։

Աստղադիտակների կատարելագործման, դիտումների և հետազոտությունների նոր մեթոդների (լուսանկարչություն, լուսաչափություն և սպեկտրալ վերլուծություն) կիրառման շնորհիվ հետզհետե ընդլայնվում է աստղագիտական հետազոտությունների շրջանակը։

Մեր դարի սահմանագլխին ատոմային ֆիզիկայի հաջողությունները՝ պայմանավորեցին աստղագիտության մի նոր բաժնի՝ աստրոֆիզիկայի ծնունդը, որը հատկապես բուռն ծաղկում ապրեց վերջին տասնամյակներում։

Աստրոֆիզիկան զբաղվում է նյութի տիեզերական գոյաձևերի և նրանցում տեղի ունեցող երևույթների ֆիզիկական ուսումնասիրությամբ։ Աստրոֆիզիկական հետազոտությունները հսկայական հետաքրքրություն են ներկայացնում ինչպես երկնային մարմինների բազմակողմանի ուսումնասիրության, այնպես էլ նյութի հատկությունների և կառուցվածքի բացահայտման տեսակետից։

Այսպես, օրինակ, աստրոֆիզիկայի զարգացումը վճռական նշանակություն ունեցավ երկնային մարմինների առաջացման և զարգացման հարցերի մշակման համար, որը կազմում է աստղագիտության մի այլ բաժնի՝ կոսմոգոնիայի* առարկան։

Աստրոֆիզիկական հետազոտություններն զգալի չափով նպաստել են նաև ատոմային և միջուկային ֆիզիկայի զարգացմանը—նյութի՝ երկրի վրա առայժմ անհասանելի վիճակների դիտումների միջոցով։

Այս հոդվածում փորձ է արվում մոտավոր պատկերացում տալու այն լուրջ նվաճումների մասին, որոնք ձեռք են բերվել աստրոֆիզիկայի և կոսմոգոնիայի բնագավառում վերջին երկու տասնամյակում, սեփական ճառագայթում ունեցող երկնային մարմինների՝ աստղերի, միգամածությունների և գալակտիկաների ուսումնասիրության հիման վրա։

Աստրոֆիզիկական հետազոտությունների բազմաթիվ արդյունքներ վկայում են, որ, չնայած նյութի տիեզերական գոյաձևերի հսկայական բազմազանությանը, նյութի փոփոխությունները, նրա զարգացումն ամենուր տեղի են ունենում բնության միասնական օրենքներով։ Այդ չափազանց կարևոր փաստը հնարավորություն է ընձեռում ֆիզիկայի հայտնի օրենքներն օգտագործելու աստրոֆիզիկական դիտումների արդյունքների նկատմամբ և դրա հիման վրա ճիշտ պատկերացումներ ունենալու երկնային մարմինների և Տիեզերքում տեղի ունեցող ամենատարբեր երևույթների վերաբերյալ։

Օրինակ, հայտնի է, որ լույսի տարածման ժամանակ նրա աղբյուրների շարժումը (հեռացում կամ մոտեցում) դիտողի նկատմամբ, հանգեցնում է լույսի տատանումների հաճախականության փոփոխությանը։ Այդ երևույթի հետևանքով լույսի մոտեցող կամ հեռացող աղբյուրի սպեկտրում (տարրալուծված գունապատկերում) քիմիական էլեմենտների գծերը տեղաշարժվում են, համապատասխանաբար, դեպի սպեկտրի կապույտ կամ կարմիր մասերը։ Տեղաշարժման մեծությունը որոշվում է շարժման տեսագծային արագությամբ։ Ուստի տեղաշարժի մեծությունից կարելի է որոշել լույսի աղբյուրի տեսագծային արագությունը։ Դոպլերի կողմից հայտնագործված այս սկզբունքի կիրառությունը աստրոֆիզիկայում հանգեցրել է երկնային մարմինների և նրանց համակարգությունների տարածական և պտտական շարժումների վերաբերյալ չափազանց կարևոր հետևությունների։

Աստրոֆիզիկական հետազոտությունները, ինչպես արդեն նշվեց, ունեն նաև հսկայական գիտական նշանակություն՝ մատերիայի կառուցվածքի և նրա զարգացման օրինաչափությունների բացահայտման տեսակետից։

Արեգակն ու աստղերը, միգամածություններն ու միջաստղային տարածության մեջ գոյություն ունեցող նյութը, նյութի տիեզերական մյուս բոլոր գոյաձևերը մեզ համար յուրատեսակ գիտական լաբորատորիաներ են, որտեղ նյութը հաճախ գտնվում է Երկրի վրա առայժմ անհասանելի ֆիզիկական պայմաններում։ Այդ պայմաններում հանդես են գալիս նյութի նոր, մեզ անծանոթ հատկություններ, որոնք արմատական հետաքրքրություն են ներկայացնում, մասնավորապես, միջուկային ֆիզիկայի համար։

Այդ առումով շատ բնորոշ է աստղերի ճառագայթման աղբյուրների բնույթի բացահայտման օրինակը։

Վաղուց հայտնի էր, որ աստղերը շիկացած գազերի հսկայական գնդեր են։ Նրանք միլիոնավոր, միլիարդավոր տարիների ընթացքում լույսի և ջերմության ձևով անընդհատ ճառագայթում են հսկայական քանակությամբ էներգիա։ Մեզ ամենամոտ աստղը՝ Արեգակը, որն իր զանգվածով ավելի քան 330.000 անգամ, իսկ ծավալով 1.300.000 անգամ գերազանցում է Երկրին, մեկ վայրկյանում ճառագայթում է մոտ միլիոն անգամ ավելի շատ էներգիա, քան Երկրի վրա արտադրվում է մեկ տարում՝ վառելիքի տարբեր տեսակների այրման միջոցով։ Արեգակը, սակայն, իր չափերով և ճառագայթման հզորությամբ մի միջին լուսատու է։ Կա՛ն աստղեր, որոնք շատ ավելի հզոր ճառագայթման աղբյուրներ են։ Օրինակ, մեզ հայտնի աստղերից ամենահզոր լուսատուն՝ Ոսկե Ձկնիկի համաստեղության S աստղը, մեկ վայրկյանում ճառագայթում է այնքան էներգիա, որքան Արեգակի նման մոտ 400.000 աստղ միասին վերցրած։

Արեգակի և աստղերի մեծ մասի ճառագայթման այդպիսի մեծ և, որ ավելի կարևոր է, միլիոնավոր տարիների ընթացքում գրեթե հաստատուն հզորությունը հնարավոր չէ բացատրել այրման կամ ճառագայթման՝ Երկրի վրա հայտնի պրոցեսներով, այդ թվում նաև ռադիոակտիվ

* Հունարեն—կոսմոս—տիեզերք և գոնե—ծագում, առաջացում, գոյացում բառերից։



էլեմենտների՝ ուրանի, ռադիումի ճառագայթմամբ։ Երբ այդ հայտնի դարձավ, մարդիկ սկսեցին որոնել ճառագայթման այնպիսի աղբյուրներ, որոնք լինեին աստղերում նյութի արտասովոր վիճակների հետ կապված երևույթների արդյունք։ Շուտով այդպիսի աղբյուրներ գտնվեցին։ Օրինակ, պարզվեց, որ աստղերի կենտրոնական մասերում նյութի ջերմաստիճանը հասնում է մոտ տասը միլիոնի։ Ջրածնի միջուկները, որոնք կազմում են աստղերի նյութի ատոմների մոտ 90 տոկոսը, նման բարձր ջերմաստիճանի պայմաններում փոխարկվում են հելիումի միջուկների։ Փոխարկման այդ, այսպես կոչված, ջերմամիջուկային ռեակցիաների ժամանակ ճառագայթվում է մեծ քանակությամբ ներատոմային էներգիա։ Հնարավոր են ջերմամիջուկային ռեակցիաներ նաև այլ քիմիական էլեմենտների մասնակցությամբ։ Ենթադրվում է, որ հենց այդ ջերմամիջուկային ռեակցիաներն են աստղերի ճառագայթման աղբյուրները։

Ճառագայթման ջերմամիջուկային մեխանիզմի հայտնագործումից միայն տասնամյակներ անց ֆիզիկոսներին հաջողվեց ջերմամիջուկային ռեակցիաներ իրականացնել Երկրի վրա՝ ջրածնային ռումբերի պայթյունների ձևով։

Ներկայումս հսկայական գիտական ու գործնական նշանակություն է ստացել ջերմամիջուկային ռեակցիաների կառավարման պրոբլեմը։ Բանն այն է, որ ոչ շատ հեռավոր ապագայում Երկրի վրա կսպառվեն էներգիայի բոլոր հիմնական աղբյուրները՝ ածուխը, նավթը, ուրանը։ Կառավարվող ջերմամիջուկային ռեակցիաների իրականացման դեպքում հնարավոր կլինի էներգիայի անընդհատ աճող պահանջները լիովին բավարարել օվկիանոսների և ծովերի ջրում պարունակվող, գործնականորեն անսպառ ջրածնի հաշվին։

Կառավարվող ջերմամիջուկային ռեակցիաների պրոբլեմի լուծման տեսակետից մեծ արժեք են ներկայացնում տիեզերական մագնիսական դաշտերում աստղային և միջաստղային նյութի գոյավիճակի ուսումնասիրության արդյունքները։

Տիեզերական մագնիսական դաշտերի գոյության մասին առաջին անգամ որոշակի տեղեկություն ստացվեց 1949 թվականին, երբ հայտնագործվեց, որ աստղերի և միգամածությունների արձակած լույսը մի շարք դեպքերում բևեռացված է, այսինքն՝ լույսի ալիքներն ունեն տատանումների գերադասելի ուղղություն։ Պարզվեց, որ լույսի բևեռացումը շատ դեպքերում առաջ է գալիս մեր աստղային համակարգության՝ Գալակտիկայի* մագնիսական դաշտի ազդեցության տակ նյութի որոշակի դասավորություն ստացած մասնիկների կողմից։ Սակայն դիտվում են նաև այնպիսի դեպքեր, երբ բևեռացված լույսը անմիջականորեն ճառագայթվում է աստղերի կամ միգամածությունների մագնիսական դաշտերում չափազանց մեծ արագությամբ շարժվող էլեկտրոնների կողմից*։

Մասնավորապես պարզվել է, որ, այսպես կոչված՝ Գերնոր** աստղերի բռնկումների ժամանակ առաջանում են հսկայական էներգիա ունեցող էլեկտրոններ, որոնք շարժվելով աստղի մագնիսական դաշտում, ճառագայթում են բևեռացված լույս։ Այս երևույթը մանրամասն ուսումնասիրված է Խեցգետնաձև միգամածության մեջ, որը որպես մեր Գալակտիկայում հայտնի միակ, շուրջ հազար տարի առաջ բռնկված Գերնոր աստղի թաղանթ, մեծ հետաքրքրություն է ներկայացնում։

Աստղերի և միգամածությունների բևեռացված լույսի ուսումնասիրությունը կարևոր է ո՛չ միայն տիեզերական մագնիսական դաշտերի ու բևեռացման երևույթների բնույթի բացահայտման, այլև կոսմիկական ճառագայթների առաջացման պրոբլեմի լուծման տեսակետից։ Վերջին ժամանակներս մշակված պատկերացումների համաձայն կոսմիկական ճառագայթներն առաջանում են գալակտիկաների և, այսպես կոչված՝ անկայուն աստղերի մագնիսական դաշտերի հետ կապված «ակտիվ» տիրույթներում։

Անկայուն աստղերի ուսումնասիրությունը սերտորեն առնչվում է աստղերի և աստղային համակարգությունների առաջացման ու զարգացման պրոբլեմի հետ։ 1947 թվականին, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի կողմից նոր տիպի աստղային համակարգությունների՝ աստղասփյուռների հայտնագործմամբ նոր դարագլուխ բացվեց այս բնագավառում։

Աստղասփյուռները նման հատկություններ ունեցող աստղերի ֆիզիկական խմբերն են։ Նրանց

* Այլ գալակտիկաներից տարբերելու համար մեր Գալակտիկայի անունը գրվում է մեծատառով։

* Հետաքրքրական է նշել, որ տիեզերական ծագում ունեցող ճառագայթող էլեկտրոնների էներգիան հազարավոր, միլիոնավոր, իսկ երբեմն, շատ ավելի անգամ գերազանցում է այն էներգիան, որն ի վիճակի են հաղորդել տարրական մասնիկներին՝ Երկրի վրա հատկապես այդ նպատակով կառուցված ամենամեծ արագացուցիչները։

** Գերնոր աստղերի բռնկումների ժամանակ աստղը մեկ վայրկյանում մոտ 1000 կիլոմետր արագությամբ դուրս է նետում գազային մի թաղանթ։ Դրա հետևանքով աստղի պայծառությունը մի քանի օրում աճում է մի քանի տասնյակ միլիոն անգամ, որից հետո տարիների ընթացքում նա աստիճանաբար վերադառնում է իր նախկին վիճակին։ Գերնոր աստղ անունը չափազանց անհաջող է և չի արտահայտում երևույթի էությունը։

կազմում գտնվող աստղերի խտությունը* շատ փոքր է Գալակտիկայի աստղային դաշտի խտության համեմատ։ Այդ պատճառով աստղասփյուռները խիստ անկայուն սիստեմներ են։ Դիտումները վկայում են աստղասփյուռների՝ մեկ վայրկյանում 5—10 կիլոմետր արագությամբ ընդարձակվելու մասին**։

Հաշվումները ցույց են տալիս, որ աստղասփյուռների ընդարձակման հետևանքով նրանք անխուսափելիորեն պետք է լրիվ քայքայվեն ամենաշատը մի քանի տասնյակ միլիոն տարում։ Այստեղից հետևում է, որ ներկայումս դիտվող աստղասփյուռների, ինչպես նաև նրանց կազմում գտնվող աստղերի հասակը չի կարող ավելի մեծ լինել։ Քանի որ մեր Գալակտիկայում աստղերի մեծամասնության, այդ թվում Արեգակի, տարբեր եղանակներով որոշված, հասակը հաշվվում է միլիարդավոր տարիներով, ապա պետք է ընդունել, որ աստղասփյուռները և նրանց կազմում դիտվող աստղերը երիտասարդ գոյացումներ են։

Գալակտիկայում երիտասարդ աստղերի գոյության փաստն անվիճելիորեն ապացուցում է, որ միլիարդավոր տարիներ առաջ նրա ներսում սկսված աստղառաջացման երևույթները շարունակվում են նաև մեր օրերում՝ նրա զարգացման ներկա փուլում։

Աստղասփյուռների ուսումնասիրության արդյունքները վկայում են նաև այն մասին, որ աստղերն աստղասփյուռներում ձևավորվում են ոչ թե առանձին-առանձին, այլ խմբերով՝ կրկնակի, եռակի, բազմակի աստղերի և աստղակույտերի ձևով։

Աստղասփյուռների ուսումնասիրությունից ստացված այդ եզրակացություններն ունեն գիտական և աշխարհայեցողական մեծ նշանակություն։ Նրանց շնորհիվ աստղային կոսմոգոնիան, պատմության մեջ առաջին անգամ, կանգնեց ամուր մատերիալիստական պատվանդանի վրա և մահացու հարված հասցրեց Գալակտիկայի բոլոր աստղերի միաժամանակյա ձևավորման վերաբերյալ մինչ այդ իշխող իդեալիստական պատկերացմանը։

Աստղասփյուռների՝ աստղառաջացման այդ օջախների բազմակողմանի ֆիզիկական ուսումնասիրությունը հանգեցրեց շատ կարևոր արդյունքների նաև Տիեզերքում նյութի նոր, առայժմ մեզ անծանոթ վիճակների հայտնաբերման տեսակետից։ Բանն այն է, որ աստղասփյուռներում աստղերը գտնվում են իրենց կազմավորման և զարգացման նախնական փուլերում. չեն հասել հավասարակշիռ վիճակի և ապրում են զարգացման հետ կապված վիճակի բուռն, մեզ համար տեսանելի փոփոխություններ։ Օրինակ, աստղասփյուռներում հանդիպող որոշ անկայուն թզուկ աստղերի մոտ դիտվում են պայծառության մեծ և խիստ անկանոն փոփոխություններ, որոնք չեն կարող բացատրվել նրանց ջերմաստիճանի ու չափերի փոփոխություններով։ Անկայուն աստղերի պայծառության նման փոփոխությունները հետևանք են այդ աստղերի արտաքին շերտերում ներատոմական էներգիայի, ժամանակ առ ժամանակ ընթացող, անմիջական ազատագրման երևույթների։ Որոշ դեպքերում էներգիայի մեծ քանակներ ազատագրվում են չափազանց արագ՝ կարճատև բռնկման կամ պայթյունի ձևով։ Հաճախ ոչ ջերմային բնույթի ճառագայթման այդ երևույթները կապված են նոր ատոմային միջուկների, այդ թվում անկայուն միջուկների գոյացման հետ։ Այդ մասին է վկայում, մասնավորապես, անկայուն միջուկների մեծ առատությունը մի շարք անկայուն աստղերի մթնոլորտում։

Չափազանց կարևոր է այն փաստը, որ անկայուն աստղերի արտաքին շերտերում ներատոմային էներգիայի անջատման երևույթներն իրենց բնույթով տարբերվում են ջերմամիջուկային ռեակցիաներից, որը, հավանաբար, վկայում է անկայուն աստղերի ներքին շերտերում նյութի՝ գիտությանն առայժմ անհայտ վիճակների գոյության մասին։ Ենթադրվում է, որ այդ՝ ըստ երևույթին նախաաստղային վիճակներից նյութի անցումը մեզ հայտնի աստղային վիճակներին պայմանավորում է ներատոմական էներգիայի հսկայական քանակների ազատագրումը անկայուն աստղերի արտաքին շերտերում՝ ինչպես ջերմային, այնպես էլ ոչ ջերմային բնույթի ճառագայթման ձևով։

Անկայուն աստղերի արտաքին շերտերում ներատոմային էներգիայի ազատագրման այս երևույթները նորություն են ո՛չ միայն աստրոֆիզիկայի, այլև միջուկային ֆիզիկայի համար և գիտական արտակարգ հետաքրքրություն են ներկայացնում։ Բացառված չէ, որ այդ երևույթների ուսումնասիրությունը ապագայում կարող է հանգեցնել էներգիայի գործնական նշանակություն ունեցող նոր աղբյուրների հայտնագործման։

Տիեզերական ծագում ունեցող ռադիոճառագայթման հայտնագործումը վերջին տասնամյակներում գիտության ձեռք բերած ամենակարևոր նվաճումներից է։

Մինչև կոսմիկական ռադիոճառագայթման

* Աստղերի խտությունը՝ նրանց թիվն է տարածության միավոր ծավալում։

** Հարկ է նշել, որ աստղասփյուռների ընդլայնման երևույթը նախօրոք տեսականորեն կանխագուշակվել էր Բյուրականում նրանց անկայունության վերաբերյալ պատկերացման հիման վրա։



հայտնագործումը նյութի տիեզերական գոյաձևերի վերաբերյալ մեր բոլոր գիտելիքների միակ աղբյուրը նրանց ճառագայթած լույսն էր։ Ներկայումս կոսմիկական ռադիոճառագայթումը Տիեզերքի վերաբերյալ գիտելիքների նոր և չափազանց կարևոր աղբյուր է։

Կոսմիկական ռադիոճառագայթման աղբյուրներն իրենց բնույթով ու հզորությամբ տարբեր են։ Մի շարք դեպքերում նրանք միաժամանակ հանդիսանում են լույսի աղբյուրներ և դիտվում են օպտիկական մեթոդներով։ Օրինակ, Արեգակը և՛ լույսի, և՛ ռադիոճառագայթման աղբյուր է, ըստ որում, եթե նրա լուսային և ջերմային ճառագայթումը միլիոնավոր տարիների ընթացքում ենթակա չէ լուրջ փոփոխությունների, ապա նրա ռադիոճառագայթումը խիստ փոփոխվում է երբեմն ժամերի, նույնիսկ րոպեների ընթացքում։

Ռադիոճառագայթման դիտումների շնորհիվ որոշ դեպքերում հնարավոր է դառնում ուսումնասիրել նյութի տիեզերական այնպիսի գոյաձևեր, որոնց մասին մեզ հայտնի էր միայն անուղղակի ձևով, որովհետև նրանք լույս չեն արձակում։

Օրինակ, Գալակտիկայի միջաստղային տարածության մեծ մասն զբաղեցնող չեզոք ջրածինը, որը լույս չի արձակում և մինչև վերջերս չէր դիտվում, ճառագայթում է 21 սմ. երկարության ռադիոալիքներ, ուստի կարող է հայտնաբերվել և ուսումնասիրվել ռադիոդիտումների միջոցով։ Միջաստղային ջրածնի ռադիոդիտումները ներկայումս Գալակտիկայի ուսումնասիրության ամենակարևոր միջոցներից են և արդեն շատ արժեքավոր տվյալներ են տվել նրա կառուցվածքի մասին։

Գիտական տեսակետից մեծ նշանակություն ունի այն փաստը, որ կոսմիկական ռադիոճառագայթման կետային աղբյուրների մեծ մասը նույնացված է գալակտիկաների հետ։

Ներկայումս Տիեզերքի աստղագիտական դիտումների համար մատչելի մասում գալակտիկաների թիվն անցնում է մի քանի հարյուր միլիոնից։ Նրանք բոլորը միասին կազմում են գիտությանը հայտնի ամենաբարձր կարգի համակարգությունը՝ Մետագալակտիկան կամ, ինչպես վերջերս անվանում են՝ Մեծ Տիեզերքը *։

Մետագալակտիկայում գալակտիկաները գերազանցապես հանդես են գալիս ֆիզիկական խմբավորումներով, որոնց մեծ մասն անկայուն է և գտնվում է քայքայման պրոցեսում։ Այդ փաստը խոսում է այն մասին, որ գալակտիկաների աշխարհում ևս ներկայումս տեղի են ունենում նոր սիստեմների առաջացման ու զարգացման երևույթներ։ Այս հետևության օգտին կարևոր փաստարկներ ստացվեցին ռադիոճառագայթող գալակտիկաների՝ ռադիոգալակտիկաների բազմակողմանի ուսումնասիրության շնորհիվ։

Ռադիոգալակտիկաների առաջին օպտիկական դիտումներից ամերիկյան աստղագետներ Բաադեն և Մինկովսկին 1954 թվականին արեցին այն եզրակացությունը, որ ռադիոգալակտիկաները գալակտիկաների պատահական ընդհարումների արդյունք են, իսկ նրանց ճառագայթումը հետևանք է ընդհարման ժամանակ զարգացող ֆիզիկական երևույթների։ Այսպիսի եզրակացության համար հիմք էր ծառայել այն փաստը, որ ռադիոգալակտիկաների (օրինակ, Կարապ A*) աշխարհի խոշորագույն 5 մետրանոց աստղադիտակով ստացված լուսանկարների վրա նշմարվել էին երկվության որոշ նշաններ։ Սակայն շուտով ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանն ապացուցեց ռադիոգալակտիկաների առաջացման այդպիսի մեկնաբանության սնանկությունը և առաջ քաշեց ու զարգացրեց հակառակ տեսակետը։ Նոր պատկերացման համաձայն գալակտիկաների ռադիոճառագայթումը պայմանավորված է հենց իրենց գալակտիկաների ներսում ներկայումս ընթացող, նրանց ձևավորման և զարգացման հետ կապված բուռն երևույթներով, որոնց մեջ վճռական դեր են խաղում գալակտիկաների շատ փոքր չափեր ունեցող կենտրոնական խտացումները՝ կորիզները։ Այդ եզրակացության օգտին լուրջ գիտական փաստարկ է Կույս A ռադիոգալակ-

* Վերջին տարիներս Երկրի արհեստական արբանյակների և տիեզերական հրթիռների թռիչքների կապակցությամբ հաճախ խոսվում է Տիեզերքի նվաճման մասին։ Սակայն նման բոլոր թռիչքները կատարվում և մոտ ապագայում կատարվելու են միայն Արեգակնային համակարգության սահմաններում։

Այդ կապակցությամբ երբեմն Տիեզերքի՝ Արեգակնային համակարգության սահմաններում գտնվող մասը անվանում են փոքր Տիեզերք։ Փոքր Տիեզերքի և Մեծ Տիեզերքի չափերի մասին մոտավոր պատկերացում կազմելու համար բավական է բերել հետևյալ թվական տվյալները։ Լույսը՝ մեկ վայրկյանում 300.000 կիլոմետր արագությամբ, Արեգակնային համակարգության տրամագիծը կտրում է մոտ 10 ժամում, մեր Գալակտիկայի տրամագիծը՝ մոտ 100.000 տարում, իսկ ամենախոշոր ռադիոդիտակներով ներկայումս դիտվող, ամենահեռավոր գալակտիկաների լույսը մեզ հասնում է մոտ 10 միլիարդ տարում։ Բնականաբար, Մեծ և փոքր Տիեզերք արտահայտությունները պայմանական են։

* Սովորաբար հզոր տիեզերական ռադիոաղբյուրները նշանակվում են այն համաստեղության անունով, որտեղ նրանք դիտվում են (օրինակ, Կարապ A, Կույս A և այլն)։

տիկայում կորիզից դուրս եկող և ռադիոճառագայթող խտացումներ պարունակող շիթի առկայությունը, որն այդ գալակտիկայի ռադիոճառագայթման և նրա կորիզի գործունեության միջև գոյություն ունեցող կապի վկայությունն է։

Մի շարք այլ ռադիոգալակտիկաների կորիզների ուսումնասիրության հիման վրա վերջնականապես մշակվեց գալակտիկաների կորիզների էվոլյուցիոն ակտիվության վերաբերյալ նոր գիտական պատկերացումը, ըստ որի գալակտիկաների ռադիոճառագայթման հարուցիչը նրանց կորիզների արտասովոր ակտիվությունն է։

Տարբեր երկրներում կատարված հետագա հետազոտությունները մի շարք նոր փաստարկներ տվեցին գալակտիկաների կորիզների ակտիվության վերաբերյալ նոր պատկերացման օգտին։ Օրինակ, ապացուցվեց, որ մեր Գալակտիկայի կենտրոնական մասից, ինչպես նաև մոտակա գալակտիկաներից մեկի՝ M 31-ի* (Անդրոմեդի միգամածություն) կորիզից տեղի է ունենում գազերի անընդհատ արտահոսք՝ մոտ մեկ արեգակնային զանգված մեկ տարում հզորությամբ։

Հաշվարկումները ցույց են տալիս, որ նյութի անընդհատ արտահոսքի հետևանքով այդ գալակտիկաների կորիզներից նրանց արտաքին մասերն են դուրս եկել նյութի հսկայական քանակներ՝ տասնյակ միլիոնավոր արեգակնային զանգվածի կարգի։ Մինչդեռ, օրինակ, M 31 գալակտիկայի կորիզն այնքան փոքր է, որ նրա կառուցվածքի մանրամասնությունները չեն երևում նույնիսկ 5 մետրանոց աստղադիտակով։

Կորիզներից մեծ արագություններով անընդհատ առաքվող գազային զանգվածներ են դիտվում նաև ամերիկացի աստղագետ Սեյֆերտի կողմից հայտնագործված որոշ գալակտիկաների մոտ։

Այս և մի շարք ուրիշ դիտողական տվյալների մանրամասն վերլուծության հիման վրա ապացուցվեց, որ գալակտիկաների կորիզներում աստղերի հետ միասին կան նաև ոչ աստղային մարմիններ, որոնք կարող են տրոհվել կամ պատճառ դառնալ կորիզներից նյութի մեծ զանգվածների ժայթքման, իսկ որոշ դեպքերում՝ նյութի հանգիստ, անընդհատ արտահոսքի։ Հետևաբար պետք է ենթադրել, որ գալակտիկաների կորիզներում ֆիզիկական պայմանները խիստ տարբերվում են Տիեզերքի այլ մասերում եղած պայմաններից, մասնավորապես նյութի խտությունը չափազանց մեծ պետք է լինի։

Գալակտիկաների կորիզներում արտասովոր վիճակներում գտնվող նյութի մեծ զանգվածների առկայության մասին է վկայում նաև ռադիոգալակտիկաների և որոշ գերհսկա գալակտիկաների կորիզներից դուրս շպրտված նյութից ձևավորված, այսպես կոչված, կապույտ գալակտիկաների ճառագայթման ոչ ջերմային բնույթը։

Գալակտիկաների կորիզներում ոչ աստղային բնույթի զանգվածների առկայության, նրանց տրոհման և դրա հետևանքով նյութի մեծ զանգվածների ժայթքման վերաբերյալ Բյուրականում մշակված հիպոթեզի օգտին հետաքրքիր տվյալներ ստացվեցին 1963 թվականին։

Ամերիկյան աստղագետներ Գրինշտեյնը և Շմիդտը ցույց տվեցին, որ «աստղաձև» ռադիոգալակտիկաներն իրենց օպտիկական լուսավորությամբ խիստ գերազանցում են գերհսկա գալակտիկաներին, սակայն ունեն շատ փոքր չափեր։ Նրանք, փաստորեն, նման են գալակտիկաների կորիզներին, սակայն, ի տարբերություն կորիզների, շրջապատված չեն աստղային ընդհանուր դաշտով։ Նման ռադիոգալակտիկաներից մեկի՝ 3C 273-ի* տեսանելի պայծառության համեմատաբար արագ և անկանոն փոփոխությունները վկայում են, որ ճառագայթման պատճառը ոչ թե կորիզում պարունակվող աստղերն են, այլ մեզ անհայտ վիճակում գտնվող նյութի մի հսկայական զանգված, որը մի քանի միլիոն անգամ ավելի էներգիա է արձակում, քան ամենամեծ լուսատվության գերհսկա աստղերը։

Չափազանց հետաքրքրական և առաջին հայացքից սենսացիոն էր Պալոմարի աստղադիտարանի (ԱՄՆ) աշխատակիցներ Սանդեյջի և Լինդսի կողմից M 82 գալակտիկայի մանրակրկիտ ուսումնասիրության արդյունքը։ Պարզվում է, որ մոտ մեկ և կես միլիոն տարի առաջ այդ գալակտիկայի միջուկից տեղի է ունեցել շուրջ հինգ միլիոն արեգակնային զանգված ունեցող գազային ամպի ժայթքում, որի կտորները միջուկից հեռանում են մեկ վայրկյանում մոտ 1000 կիլոմետր արագությամբ։

Ամերիկյան աստղագետների այս երկու հայտնագործությունները միանգամայն անսպասելի էին ռադիոգալակտիկաների ճառագայթումը գալակտիկաների ընդհարումներով բացատրելու հիպոթեզի կողմնակիցների համար, սակայն միանգամայն բնական՝ կորիզների ակտիվության վերաբերյալ Բյուրականյան պատկերացման տեսակետից։

Աստղասփյուռների, գալակտիկաների ֆիզիկական խմբերի անկայունությունից բխող ընդարձակումը և հետագա քայքայումը, գալակ-

* M 31, կարդացվում է Մեսյե 31, նշանակում է, որ տվյալ գալակտիկան միգամածությունների, աստղակույտերի և գալակտիկաների՝ ֆրանսիացի աստղագետ Մեսյեի կազմած ցուցակում 31-րդ օբյեկտն է։

* Ռադիոաղբյուրների Քեմբրիջում կազմված 3-րդ ցուցակում 273-րդ օբյեկտը։



տիկաների կորիզներից նյութի արտահոսքը և ժայթքումները, կորիզների տրոհումը վկայում են, որ աստղերը և աստղային սիստեմներն առաջանում և ձևավորվում են մեծ զանգվածներ ու փոքր չափեր ունեցող գերխիտ մարմինների ճեղքման, տրոհման հետևանքով։ Այդ նշանակում է, որ երկնային մարմինների և նրանց ֆիզիկական խմբերի առաջացումը և զարգացումը Տիեզերքում ընթանում է նյութի խիտ վիճակներից դեպի նոսր վիճակները կատարվող անցումներով։

Առաջին անգամ աստղասփյուռների ուսումնասիրությունից ստացված այդ եզրակացությունը սկզբունքային նշանակություն ունի աստղային կոսմոգոնիայի համար։ Բանն այն է, որ սկսած Կանտից և Լապլասից գիտության մեջ իշխում էր հակառակ տեսակետը, որի համաձայն մոլորակների և աստղերի ձևավորումը կապված է նոսր գազային ու փոշային նյութի խտացման հետ։

Ներկայումս էլ շատ գիտնականներ հակված են այդ տեսակետին, որը, սակայն, անհաղթահարելի դժվարությունների է հանդիպում նոր դիտողական տվյալների լույսի տակ։ Այդ է պատճառը, որ նրանք ամեն կերպ աշխատում են հարմարեցնել հին տեսակետը նոր փաստերին։

Օրինակ, այդ տեսակետի ամենամոլի պաշտպաններից մեկը՝ անգլիացի Հոյլը, գալակտիկաների միջուկների տրոհման և նրանցից դիտվող ժայթքումների վերաբերյալ դիտողական տվյալները բացատրելու համար առաջարկում է հետևյալ խիստ արհեստական հիպոթեզը՝ կորիզները ձևավորվում են նոսր նյութի խտացման հետևանքով, իսկ մեծ խտության հասնելուց հետո նրանք տրոհվում կամ ճեղքվում են*։

Նյութի մեծ խտություն ունեցող մարմինների և տեսականորեն հնարավոր, գերխիտ գոյաձևերի ուսումնասիրությունը վերջին ժամանակներս տվել է արմատական նշանակություն ունեցող մի շարք արժեքավոր արդյունքներ։

Գիտությանը հայտնի ամենախիտ տիեզերական մարմիններն, այսպես կոչված, սպիտակ թզուկ աստղեր են։ Մինչև վերջին տասնամյակը հայտնի էին միայն մի քանի սպիտակ թզուկներ։ Սակայն այն փաստը, որ նրանք բոլորը գտնվում էին Արեգակի անմիջական մոտակայքում, հիմք էր տալիս ենթադրելու, որ սպիտակ թզուկների թիվը Գալակտիկայում շատ մեծ պետք է լինի և միայն իրենց փոքր լուսատվությունն է պատճառը, որ նրանք մեծ հեռավորությունների վրա չեն դիտվում։ Վերջերս այդ ենթադրությունը լիովին հաստատվեց, երբ հզոր աստղադիտակների օգնությամբ Արեգակի շուրջը հայտնաբերվեցին մի քանի հարյուր սպիտակ թզուկներ։

Չնայած որ սպիտակ թզուկների զանգվածներն Արեգակի զանգվածի կարգի են, նրանց չափերը շատ ավելի փոքր են՝ մոտավորապես Երկրի չափերի կարգի։ Այդ պատճառով նրանց նյութի միջին խտությունը մի քանի հազարից մինչև մի քանի միլիոն անգամ մեծ է Երկրի նյութի միջին խտությունից*։ Նյութի նման մեծ խտությունները հետևանք են այն բանի, որ սպիտակ թզուկ աստղերում նյութի հիմնական զանգվածը կազմող ատոմային միջուկները՝ պրոտոններն ու ազատ էլեկտրոնները, իրար շատ ավելի մոտ են դասավորված, քան ատոմների չափերն են։

Տեսական ուսումնասիրությունները ցույց են տվել, որ նյութի ավելի մեծ խտությունների դեպքում էլեկտրոնները միանում են պրոտոնների հետ և կազմում նեյտրոններ։ Այդ դեպքում ստացված նյութը գերազանցապես բաղկացած է նեյտրոններից (նեյտրոնային աստղեր)։

Վերջին ժամանակներս պարզվել է, որ նյութի շատ ավելի մեծ խտությունների դեպքում (մոտ միլիարդ տոննա մեկ խորանարդ սանտիմետրում, այսինքն՝ ավելի մեծ, քան ատոմների միջուկներում) նեյտրոնների մեծ մասը վերածվում է ավելի ծանր տարրական մասնիկների՝ տարբեր տիպի հիպերոնների։ Երկրային պայմաններում հիպերոնների կյանքի տևողությունը մեկ տասմիլիարդերորդ վայրկյան է, որից հետո նրանք քայքայվում և փոխարկվում են ավելի թեթև տարրական մասնիկների։ Սակայն նյութի չափազանց մեծ խտություն ունեցող, հետևաբար, գերազանցապես հիպերոններից կազմված մարմիններում (հիպերոնային աստղերում) այդ մասնիկները ձեռք են բերում նոր որակ, դառնում են կայուն։

Նյութի այդպիսի գերխիտ վիճակների գոյության հնարավորությունն իսկ հեռանկարային է աստրոֆիզիկայի և, ընդհանրապես, ֆիզիկայի համար։

Մասնավորապես, բացառված չէ, որ հիպերոնային աստղերը նյութի նախաստղային գոյա-

* Հոյլը և նրա կողմնակիցները գալակտիկաների կորիզների ակտիվության վերաբերյալ որոշ տվյալներ (օրինակ, 3C 273-ի պայծառության փոփոխությունները) բացատրելու համար առաջ են քաշել «Գերաստղերի» գաղափարը, որոնց նրանք քողարկված կերպով վերագրում են գալակտիկաների կորիզների հայտնի հատկությունները։

* Օրինակ, Վոլֆի աստղացուցակի 457-րդ սպիտակ թզուկ աստղի նյութով լցված լուցկու տուփը Երկրի վրա կունենար շուրջ 20.000 տոննա կշիռ։

միջնադարյան հուշարձանը բոլորովին անուշադրության է մատնված։ Մեր քաղսովետի ընկերները պետք է օրինակ վերցնեն Մոսկվայից, Լենինգրադից և Կիևից, որտեղ մեծ խնամքով պահպանվող հուշարձանները զարդարում են այդ քաղաքները։

Մեր որոշ քաղաքացիներ տառապում են մի անհաղթահարելի հիվանդությամբ. յուղաներկով գրում կամ պարզապես փորագրում են հուշարձանների վրա, իսկ նրա շրջակայքը աղտոտում են։ Միայն ազգային հպարտությունից զուրկ մարդը կարող է այդպիսի վերաբերմունք ունենալ ժողովրդի սեփականության, նրա կուլտուրայի ու պատմության հանդեպ։ Ցավոք սրտի մեր դատա-քննչական մարմինները հազվադեպ են միջամտում այդպիսի գործերին։ Թույլ է նաև շրջանային գործադիր կոմիտեների, գյուղսովետների ու միլիցիայի միջամտությունը։ Շատերի կարծիքով հուշարձանների պահպանությունը միայն պետշինի հուշարձանների պահպանության բաժնի և հուշարձանների պահակների գործն է և դա իրենց բնավ չի վերաբերում։ Պետք է ասել, որ հուշարձանների պահպանության պետական օրգանն էլ բավականին մեղավոր է այս հարցում, թուլացրել է հսկողությունը, անհրաժեշտ վճռականություն չի ցուցաբերում սահմանված կանոնները խախտողներին պատասխանատվության ենթարկելու գործում։ Հուշարձանների պահպանության պետական օրգանին չափազանց թույլ են օգնում նաև գիտական ու հասարակական կազմակերպությունները։

Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիայում շատ տարիներ առաջ ստեղծվել է հուշարձանների պահպանության գիտա-մեթոդական խորհուրդ, որի կազմում ընդգրկված են մեր ռեսպուբլիկայի աչքի ընկնող հնագետներ, պատմաբաններ ու հնագետ-ճարտարապետներ։ Այդ խորհուրդը վաղուց է անգործության մատնված։ Գիտությունների ակադեմիան, որ ֆինանսավորում է Դվինի, Կարմիր բլուրի, Գառնիի, Արին-բերդի, Արմավիրի և մյուս հուշարձանների պեղումները, ոչ մի կոպեկ չի տրամադրում պեղված հուշարձանների պահպանությանը։ Մի՞թե ներելի է այն փաստը, որ Կարմիր բլուրում բացված շտեմարանների բազմաթիվ կարասներ ջարդվեցին ու ոչնչացան, իսկ Գառնիում բացված բարձրարվեստ խճապատկերների վրա մի խղճուկ ծածկույթ է կառուցված։

Հնությունների պահպանությունը և հաջորդ սերնդին հասցնելը մեր ամենօրյա գործնական ու գաղափարական աշխատանքի անբաժան մասը պիտի կազմի։

Հուշարձանների, հատկապես եկեղեցական հուշարձանների հանդեպ մեր պետության հոգատար վերաբերմունքը երբեմն կարող է ճիշտ չընկալվել ազգաբնակչության հետամնաց խավերի կողմից ու առանձին դեպքերում կարող է տեղիք տալ կրոնական տրամադրությունների աշխուժացմանը։ Այս կապակցությամբ անհրաժեշտ է, որ մեր միջոցառումները մշտապես զուգակցվեն ազգաբնակչության շրջանում տարվող լայն բացատրական աշխատանքով, այդ գործում ներգրավելով տեղական ինտելիգենցիային, կոմերիտականներին ու պիոներներին, տեղական մամուլն ու ռադիոն։

Պատմական հուշարձանների պահպանությունը կարելի է պատշաճ բարձրության վրա դնել, եթե այդ գործում ներգրավվի մեր ողջ հասարակությունը։ Այստեղ ևս պետք է զարկ տալ աշխատանքի հասարակական ձևերի զարգացմանը, որը մեր պարտիայի կողմից դիտվում է որպես մասսաների ակտիվացման լավագույն միջոցներից մեկը։ Այս առումով, արժանի է ընդօրինակման Վրացական ռեսպուբլիկայի փորձը։ Այնտեղ հասարակական հիմունքներով ստեղծվել է հնությունների պահպանության ընկերություն, որն ընդգրկում է մոտ 300 հազար անդամ։ Այդ կազմակերպությունն իր միջոցներով օգնում է հուշարձանների պահպանության ու ուսումնասիրությանը, պատմական հուշարձանների խանդավառ պրոպագանդիստն է ու հասարակական հսկիչը։ Ընկերությունն ամեն տարի լրացուցիչ միջոցներ է տրամադրում պետական օրգաններին՝ հուշարձանների նորոգման, հանրամատչելի գրքերի և ուղեցույցների հրատարակության համար։

Մեր ռեսպուբլիկայում ևս ստեղծվել է հուշարձանների պահպանության ընկերություն, որն իր առաջին քայլերն է անում։ Յուրաքանչյուր բանվոր ու կոլտնտեսական, մտավորական ու մասնագետ, ուսանող ու դպրոցական, պետք է աչքի լույսի պես պահպանի մեր հուշարձանները, չէ՞ որ դրանք մեր համաժողովրդական ունեցվածքի մի մասն են։



# ԱՆՄԱՀՆԵՐԻՑ ՄԵԿԸ

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

Կապիտալիստական երկրներում մոլեգնող ճգնաժամը բռնկեց նաև Ռուսաստանում, այնտեղից էլ թափանցեց Անդրկովկաս։ Սկսվեցին մասսայական գործադուլները, որոնք արդեն քաղաքական բնույթ ունեին։ Լենինյան Իսկրայի միջոցով մարքսիզմի աշխարհափոխ գաղափարները տարածվում էին ամենուրեք։ Ռուսաստանի՝ Կովկաս աքսորված առաջադեմ մտածողները, իրենց հետ բերելով անլեգալ գրականություն, տարածում էին այն և իրենց գործունեությամբ օգնում Անդրկովկասի ժողովուրդների ռևոլյուցիոն զարթոնքին։

Տեսնելով, որ ինքն այլևս չի կարողանում ապահովել բանվորներին աշխատանքով ու ապրուստով, չի կարողանում սանձել փոթորիկը, որ շուտով պայթելու է, ցարական կառավարությունն ամեն ինչ անում էր՝ մասսաներին ռևոլյուցիայից հեռու պահելու համար։ Հերյուրանքների, զրպարտությունների միջոցով իրար դեմ էր լարում փոքր ազգերին, կազմակերպում ազգամիջյան կոտորածներ։

Իշխան Գոլիցինի օրենքը՝ հայ եկեղեցապատկան հողերն ու գույքը բռնագրավելու մասին, որը փոքր ազգությունների ռուսիֆիկացնելու, ազգային անկախության հաստատությունները ցրելու մի նոր միջոց էր, հուզումների բուռն ալիք բարձրացրեց Ալեքսանդրապոլում, Ղարսում, Երևանում, Ջալալ-Օղլիում (Ստեփանավան), Ղարաքիլիսայում (Կիրովական), Թիֆլիսում, Բաքվում և այլուր։

Ցարիզմի այդ նոր կողոպուտի օրերին, այն ժամանակ, երբ «Անդրկովկասը բռնկված էր ռևոլյուցիոն փոթորկով», մի քանի համագյուղացիների հետ 1903 թվականին Ստարո-Միխայլովկայի շրջանի Ներքին Ճամբարակ գյուղից Կովկասի արդյունաբերական կենտրոն՝ Բաքու եկավ քսանմեկամյա Բագրատը՝ հոգալու իր որբացած ընտանիքի ապրուստը։

Միայն Ելենովկա գյուղի գաստրոնոմիական խանութում և Ելիզավետոպոլի նահանգի Ելենդորֆ (Խանլար) գերմանական գաղութի գաստրոնոմիական խանութում որպես սպասյակ, ապա՝ գործակատար աշխատած երիտասարդ ընկել էր օտար մի քաղաք՝ լի տարբեր ազգությունների մարդկանցով, բանվորներով, ծառայողներով, աքսորյալներով։

Դժվար էր անաշխատանք ու անօթևան մարդու համար, այն էլ երբ ուրիշ լեզու չգիտեր և ուներ միայն չորսդասյա կրթություն։ Գտնվեցին հոգատար հայրենակիցներ՝ բանվորներ, որոնք աշխատանք գտան նրա համար։ Բագրատն ապրում և գիշերում էր նրանց հետ, բանվորական կացարաններում։ Երեկոյան, աշխատանքից հետո, հավաքվում էին բանվորները, զրուցում, վիճում. մտքեր էին ծնվում ու բախվում...

Կես գիշեր է. Եգոր Հարությունյանի տանը հավաքվել են ռուս, հայ, վրացի, ադրբեջանցի բանվորներ։ Խոսում է Եգորը. ասես թե ջուր է խմել ամենքի սրտից, այնպես պարզ ու-

թյան կյանքին ու իր հոգու խորքում փայփայում այն հույսը, որ կգա մի օր, երբ աշխատավոր պանդուխտները կօթևանեն սովետական ապահով տանիքի տակ։

Նրան անսահման հրճվանք էր պատճառում հայ գրականության, կուլտուրայի ծաղկումը.

— Ահա Չարենցը. և՛ շատ երիտասարդ, և՛ խիստ այժմեական, դարերի խորքից հառնող մեր պոեզիայի փառքերից մեկը։

Իսկ երբ Նշանավոր մարդկանց կյանքը սերիայով Մոսկվայում լույս տեսավ Խաչատուր Աբովյան գիրքը, նրա միշտ զուսպ խառնվածքը տեղի տվեց։ Այդ օրերին նրան հանդիպող ամեն ոք կզգար, թե որքան է ուրախացել նա այդ առթիվ։

Իր ողջ գործունեության ընթացքում հարազատ մնալով բանվորի, ռամիկի տենչերին, ծառայելով նրանց ազատագրության, ապահովության գործին, նա չի խորթացել ինտելիգենցիայից, մշտական կապեր է պահպանել մտավորականների, գրական գործիչների հետ։



Երիտասարդ տարիներից հաղթահարելով ազգային նեղ շրջանակները, Բորյանը դարձավ համառուսական սոցիալ-դեմոկրատական շարժման քաղաքական խոշոր գործիչներից մեկը։

Որպես լենինյան տիպի գործիչ, Բորյանը ո՛չ միայն գործով, այլև գրչով մարտիկ էր։ Կասյանի հետ մեկտեղ նա ակտիվ մասնակցել է Մեր խոսքը բոլշևիկյան շաբաթաթերթի հրատարակմանը, թղթակցել Պրավդա, Խոսք թերթերին, գրել է թռուցիկներ, արել ամեն ինչ, դրանք ժամանակին տպագրելու և աշխատավորների շրջանում տարածելու համար։

Նվիրվելով համառուսական ռևոլյուցիոն շարժմանը, լայն մտահորիզոնի տեր գործիչը կարողանում էր իր ժողովրդի բախտը արծարծել միջազգային մասշտաբով։ Երկար տարիների համառ և անդուլ գիտական աշխատանքի արգասիքն է նրա Հայաստան, միջազգային դիվանագիտություն և ՍՍՌՄ երկհատոր աշխատությունը. չնայած իր որոշ սխալներին ու միակողմանիությանը, այն հանդիսանում է հայ ժողովրդի պատմության մարքսիստական շարադրման լուրջ և կարևոր ավանդը մեր պատմագիտության մեջ։

Գրքում նկատվում է մի առաջավոր տենդենց. Բորյանը ձգտում է վեր հանել իր ժողովրդի ազատագրական պայքարը միջազգային ռևոլյուցիոն շարժման առնչությամբ, հայ ազատատենչ շարժումները քննարկել դասակարգային պայքարի ասպեկտով։ Երկու ստվար հատորներում նա ամբողջ աշխարհին ցույց տվեց Արևմտյան իմպերիալիստական տերությունների մարդակեր քաղաքականությունը հայ ժողովրդի բախտի նկատմամբ։ Նա պատմագիտական ահաբեկ փաստերով և կուռ տրամաբանական հետևողությունններով հիմնավորեց սովետական կարգերի հաղթանակը Հայաստանում, որպես լենինյան կուրսի փայլուն իրագործումը Արևելքի շեմին։

Դժբախտաբար ժամանակին ռեսպուբլիկայի մամուլում ձախլիկության մարմաջով լի անհիմն լուտանքներ տեղացին այդ լուրջ աշխատության հասցեին։

Բացի այդ ուշագրավ աշխատությունից, ՍՍՌՄ էքսպերտիզայի պետ եղած ժամանակ նա գրել է նաև «Պետական վերահսկողությունը ՍՍՌՄ-ում և Արևմտյան Եվրոպայում» աշխատությունը, բրոշյուրներ և շատ այլ հոդվածներ։

1935 թվական։ Թոշակառու Բորյանը զբաղվում էր գիտական ու գրական աշխատանքով։ Հաճախ նա լինում էր ընկերների մոտ, զրուցում մինչև ուշ երեկո։

— Որտեղի՞ց այսպես ուշ,— դուռը բանալով հարցրեց նրա կինը՝ Դորա Գրիգորևնան։

— Գայի մոտ էինք։ Հայրենիքից ուղարկված գրքերն էինք ընթերցում։ Բայց, երևի, ես մրսել եմ. վատ եմ զգում։

Մի բաժակ տաք թեյ խմեց ու պառկեց։ Մրսել էր։

— Թոքերի բորբոքում,— ախտորոշեց բժիշկը։

Եվ այդպես հիվանդ, հունիսի 29-ին, նրան տարան…

Ամենամոտ մարդիկ իսկ՝ կինը, մտերիմ ընկերները, բոլոր ճանաչողները, որ այնպես սիրում ու հարգում էին նրան չգիտեին, թե ինչ է պատահել նրա հետ։ Մեռե՞լ է արդեն, թե՞ բանտում է դեռ։

Բորյանն ընկավ որպես անձի պաշտամունքի դաժան կամայականությունների զոհ։ Բայց նա գիտեր, որ այն գործը, որին նա նվիրել է իր ողջ կյանքը, անմահ է։



# ԷՋԵՐ ԱՆՑՅԱԼԻՑ

Հ. ՄԵԼԻՔ-ԱՂԱՄԻՐՅԱՆ

1908 թվականի սկզբներին էմիգրանտական Ժնևը կողմնակի դիտողին կարող էր մեղվափեթակ հիշեցնել. ամենուրեք զեկուցումներ, վիճաբանություններ, դիսկուսիաներ բազմազան թեմաների շուրջ, բայց բոլորն էլ, այս կամ այն չափով, առնչվում էին Ռուսաստանի անցած ռևոլյուցիոն իրադարձությունների հետ: 1905—1907 թվականների ռևոլյուցիայի անհաջողությունը խիստ ազդեց ինտելիգենցիայի տրամադրության վրա ինչպես մայր ցամաքում (Ռուսաստանում), այնպես էլ էմիգրացիայում: Երիտասարդության շրջանում անկայուն տարրերը հրապուրվեցին «արցիբաշևշչինայով», հրոչակվեց լոզունգ՝ «ապրել իր համար, կյանքից օգտվել անձնական երջանկության համար», «որպես մի անպետք հնոտի մի կողմ նետել ժողովրդին ծառայելու իդեալները» և այլն:

Շուտով ինձ հայտնի դարձավ, որ Ժնևում ապրում է Սեմաշկո ազգանունով մի ռուս բժիշկ, քաղաքական վտարանդի, որը ձրի բժշկական օգնություն է ցույց տալիս ռուս վտարանդիներին և ուսանողներին:

Ն. Ա. Սեմաշկոն 1907 թ. ընտանիքով գաղթել էր արտասահման և բնակություն հաստատել Ժնևում: Բայց Շվեյցարիայի պետական դիպլոմ չունենալով, նա զուրկ էր բժշկական պրակտիկայով զբաղվելու իրավունքից, որի հետևանքով էլ ապրում էր շատ սուղ նյութական պայմաններում:

Հիշում եմ, մարտ ամսի կեսերին էր, երբ գնացի նրա մոտ: Նիկոլայ Ալեքսանդրովիչը ապրում էր «Կարուժ» թաղամասում, մի կողմ ընկած փողոցում: Մոմբլանի սառցարաններից հոսող Արվե պղտոր գետակի ափից ոչ հեռու:

Դուռը բացեց զինվորական կեցվածքով, բարձրահասակ, վայելչակազմ մի երիտասարդ: Դա Նիկոլայ Ալեքսանդրովիչի ընտանիքի մոտիկ բարեկամն էր, նույնպես վտարանդի՝ «պոռուչիկ» մականունով, նրա իսկական ազգանունն էր Ալեքսեյ Նիկոլաևիչ Բոբրով: «Պոռուչիկը» բոլշևիկների Ժնևի ֆրակցիայի տեխնիկական քարտուղարն էր: Նիկոլայ Ալեքսանդրովիչը միջահասակ էր, 35—36 տարեկան, շիկահեր, հաճելի ռուսական դեմքով, որն արտահայտում էր ներքին մեծ կուլտուրա: Խորաթափանց աչքերի մեղմ և բարի արտահայտությունը շատ շուտ իր կողմն էր գրավում զրուցակցին:

Հարցուփորձ անելով, թե ով եմ և ինչպես եմ Ժնև ընկել, Նիկոլայ Ալեքսանդրովիչը քննեց իմ հիվանդ ձեռքը և կոմպրեսներ նշանակեց, ընդ որում խորհուրդ տվեց ամառն անցկացնել որևէ գյուղում, լճի մոտ, ամեն օր լողանալ և օրգանիզմը կոփել լճափին:

Կոնսուլտացիան տեղի ունեցավ առաջին սենյակում, որը շատ պարզ էր կահավորված: Այնտեղ կային մի փոքրիկ ճաշասեղան, տարբեր ոճի մի քանի աթոռներ, երկու մանկական մահճակալ և ամանեղենի մի փոքրիկ պահարան: Երեխաները 8 և 10 տարեկան էին: Նրանք աչքի չէին ընկնում հետաքրքրասիրությամբ, և երբ Նիկոլայ Ալեքսանդրովիչը քննում էր ինձ, գնացին մյուս սենյակը՝ առանց հոր հիշեցման:

Շուտով դուրս եկավ Նիկոլայ Ալեքսանդրովիչի կինը երեխաների հետ և նրանց ուղարկեց մոտակա խանութը ինչ-որ գնումների: Անկասկած նա այժմ կենդանի չէ և թեպետ հին ասացվածքը խորհուրդ է տալիս մեռածների մասին կամ լավը խոսել կամ ոչինչ չխոսել, բայց նա ինձ վրա լավ տպավորություն չթողեց իր անհյուրասիրությամբ:

Բայց կարելի էր հասկանալ նրան: Նրանց մոտ բուժվող հիվանդներից ոչ մեկը ի վիճակի չէր վարձատրելու Նիկոլայ Ալեքսանդրովիչի աշխատանքը, մինչդեռ նրա ընտանիքը տառապում էր հայրենիքից հեռու, ամենատարրական բաների սուր պակասության ու կարիքի ճիրաններում: Իսկ «կենցաղի» ամբողջ ծանրությունն ընկած էր նրա ուսերին:

Ես շնորհակալություն հայտնեցի Նիկոլայ Ալեքսանդրովիչին և ուզեցի գնալ. գնալու պատրաստվեց նաև Բոբրովը, բայց Սեմաշկոն նրան կանգնեցրեց, հիշեցնելով Փարիզի կոմունայի հիշատակին նվիրված մարտի 18-ին նախապատրաստվող ինտերնացիոնալ միտինգի մասին, որտեղ նախատեսվում էր նաև Վ. Ի. Լենինի ելույթը: Ահա այդպիսով ես նախապես իմացա, որ Ժնևում ելույթ է ունենալու Վ. Ի. Լենինը, որի անունն այն ժամանակ Ռուսաստանի ռևոլյուցիոն շարժման մեջ հոլովվում էր ՌՍԴԲԿ

Լենինի ուսերին. 1908 թ. վերջերին լույս տեսավ նրա «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» փիլիսոփայական աշխատությունը, ուր ոչնչացնող քննադատության ենթարկվեցին ռևիզիոնիստների գաղափարական դիրքերը:

1908 թ. գարնանը Վ. Ի. Լենինը Ժնևում ռեֆերատ կարդաց ռուսական ռևոլյուցիայի նակատագրի մասին: Այդ մասին Բոբրովն ինձ նախօրոք տեղեկացրել էր: Դասախոսությունը տեղի ունեցավ Լանդոլտի սրճարանի դահլիճում: Լենինին ես առաջին անգամ էի տեսնում, որովհետև մարտ ամսին տեղի ունեցած ինտերնացիոնալ միտինգում, որտեղ նա ելույթ էր ունեցել, ես չեմ եղել:

Դահլիճը լեփ-լեցուն էր. բոլորին էլ հետաքրքրում էր դասախոսության թեման, քանի որ այն վերաբերում էր ռևոլյուցիոն շարժման մերձակա հեռանկարներին. այդ հետաքրքրում էր էմիգրանտներին ինչպես հասարակական, այնպես էլ անհատական տեսակետից: Նրանք մտադիր չէին իրենց կյանքն անցկացնել օտարության մեջ, էմիգրացիան համարում էին մի ժամանակավոր կանգառ, որից հետո նորից կմեկնեն Ռուսաստան՝ շարունակելու ռևոլյուցիոն պայքարը:

Ես չգիտեմ, Վ. Ի. Լենինի արխիվում այդ ռեֆերատի բովանդակության որևէ գրանցում կա՞ արդյոք, բայց հիշում եմ, որ խոսքը 1905—1906 թթ. ռևոլյուցիայի անհաջողությունների և դրա դասերը ռևոլյուցիոն շարժման նոր էտապում օգտագործելու անհրաժեշտության մասին էր: Վլադիմիր Իլյիչը խոսում էր Ռուսաստանում այնպիսի ռևոլյուցիոն սիտուացիա ստեղծելու հնարավորության մասին, որի առկայությամբ կավարտվի այն սոցիալական խնդրի լուծումը, որը չհաջողվեց կենսագործել նախորդ ռևոլյուցիայում:

Էրմանսում 1908 թ. հուլիս-օգոստոս ամիսներին անցկացրած իմ ամառանոցային կյանքի իրադարձություններից ես պետք է նշեմ իմ անձնական ծանոթությունը Վ. Ի. Լենինի հետ:

Վ. Ի. Լենինի հետ ծանոթությունը տեղի ունեցավ այսպես. Սեմաշկոն և Բոբրովը երբեմն մեկնում էին Ժնև՝ պարտիական գործերով: Սովորաբար Նիկոլայ Ալեքսանդրովիչը վերադառնում էր նույն օրը, իսկ Բոբրովը, երբեմն գործի համար մնում էր Ժնևում և վերադառնում էր հաջորդ օրվա վերջին: Այդ ժամանակ Բոբրովը մենակ էր ապրում, նրա կինը մնացել էր Ռուսաստանում և Բոբրովի մոտ եկավ շատ ավելի ուշ, երբ ես արդեն Ժնևում չէի:

Մի անգամ, հակառակ սովորականի, Բոբրովը քաղաքում էր մնացել երկու-երեք օր: Կարոտել էի ընկերոջս, որոշեցի անցնել Նիկոլայ Ալեքսանդրովիչի մոտ՝ իմանալու, թե երբ կգա նա:

Երբ սենյակ մտա, նկատեցի, որ Նիկոլայ Ալեքսանդրովիչը մենակ չէ. երկրորդ անձը կանգնած էր մեջքը դեպի ինձ, մի ձեռքը սեղանին դրած, իսկ մյուսում գլխարկը: Երևում էր, որ նա պատրաստվում էր գնալու: Ինքը, Նիկոլայ Ալեքսանդրովիչը ավարտում էր իր գրելիքը: Կանգնած մարդուն ես իսկույն ճանաչեցի. Վ. Ի. Լենինն էր:

Երբ ներս մտա, Վ. Ի. Լենինն զգաց կողմնակի անձի ներկայությունը և շրջվեց իմ կողմը. Ն. Ա. Սեմաշկոն, տեսնելով ինձ, աթոռից վեր կացավ: Ես անհարմար զգացի, գիտակցելով, որ անխոհեմություն եմ թույլ տվել և ներողություն խնդրելով պատրաստվում էի դուրս գալ, երբ Նիկոլայ Ալեքսանդրովիչը Լենինին դիմելով, բացականչեց՝ «Իսկ սա մեր կովկասցի երիտասարդ բարեկամն է»: Ես մոտեցա նրանց. Վ. Ի. Լենինը ուշադիր նայեց ինձ, պարզեց իր ձեռքը, որը ես սեղմեցի:

Այդպես տեղի ունեցավ իմ ծանոթությունը Լենինի հետ, որն իր գործունեությամբ ստեղծեց մարդկության պատմության ջրբաժան գիծը:

Երբ մարդն աչքիդ առաջ է, ստացած տպավորությունը խիստ կոնկրետ է և մնում է հիշողության մեջ: Լենինի գունավոր դիմանկարներ շատ եմ տեսել և, իհարկե, դրանք նկարագրելու հարկ չկա: Սովետական շրջանում ես Վ. Ի. Լենինին չեմ տեսել: Բայց 1908 թ. նա առույգ մարդ էր. մեզնից հեռանալիս առանց ջանք գործադրելու նա ցատկեց իր հեծանիվին և ոտքերի ուժեղ շարժումներով տեղից պոկվեց: Միակ բանը, որ չի համընկնում գունավոր դիմանկարներին, դա նրա աչքերի գույնն է: Հիշում եմ, նրա աչքերը շականակագույն էին, մինչդեռ ժամանակակից շատ դիմանկարներում Վլադիմիր Իլյիչի աչքերը կապույտ են պատկերվում: Այն ժամանակ էլ նա ճաղատ էր, մորուքը՝ շեկ:

Ես արդեն մտածում էի դուրս գալ, երբ Վ. Ի. Լենինն ինձ հարցրեց, թե ում գիտեմ Թաֆվից: Ես մի քանիսի անունները տվի. խոսակցությունը չշարունակվեց, բոլորս դուրս եկանք սենյակից: Հրաժեշտ տալով Նիկոլայ Ալեքսանդրովիչի կնոջը, Վ. Ի. Լենինը մեզ հետ ուղղվեց դեպի խճուղի: Ես քայլում էի նրանց հետևից: Գյուղի ծայրին Վլադիմիր Իլյիչը հրաժեշտ տվեց Սեմաշկոյին և ինձ, թռավ իր հեծանիվն ու բռնեց Ժնևի ճանապարհը:

Իհարկե, անձնական ծանոթությունը Լենինի նման մեծ գործչի հետ նշանակալից իրադարձություն էր իմ կյանքում, որի մասին ես հաճախ եմ հիշել հետագայում:

Հետագայում, նույն թվականին Ժնևի փողոցներում ես հաճախ հանդիպել եմ Վ. Ի. Լենինին և, նա իմ բարևներին ուշադիր պատասխանում էր, այսինքն՝ հիշում էր ինձ՝ իբրև ծանոթի:



# ՌՈՒՍ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊՈԵԶԻԱՅԻ ԸՆՏԻՐ ԷՋԵՐԸ ՀԱՅԵՐԵՆ

ԹԱՄԱՐԱ ՊԱՊՅԱՆ

*Սովետական պոեզիան օրեցօր ավելի ու ավելի է նվաճում սովետական մարդկանց սերն ու ճանաչումը։ Այդ են վկայում ընթերցողների աշխույժ ու աղմկալի կոնֆերանսները, գրական երեկոները, պոեզիայի օրերը։ Ընթերցողն անհամբեր սպասում է իր սիրած պոետների նոր գրքերին, դրանց մեջ նա փնտրում է նվիրական խոհերի պատասխանը։*

*Պոեզիայի սիրահարներին մեծ ուրախություն պատճառեց 1963 թվականին լույս տեսած Ընտիր էջեր ռուս սովետական պոեզիայի անթոլոգիան 1, որը ռուս սովետական պոետների լավագույն ստեղծագործությունները հայերեն թարգմանությամբ մեկ գրքում ամփոփելու լուրջ փորձ է։*

*Ժողովածու կազմողները ցուցաբերել են մեծ սեր, գիտելիքներ ու ճաշակ (և դա բնական է, քանի որ ժողովածուն կազմել և բանաստեղծությունները թարգմանել են մեր լավագույն պոետները)։ Նրանք արել են ամեն ինչ, որպեսզի հայ ընթերցողին առավելագույն հնարավորություններ ընձեռեն ծանոթանալու սովետական պոեզիայի ոսկե ֆոնդին։*

*Կազմողների առջև ծառացած են եղել մեծ դժվարություններ։ Բավական է նշել, որ ավելի քան երկու հարյուր պոետներից, որոնց ստեղծագործությամբ նրանք հետաքրքրվել են, ժողովածուի մեջ տեղ են գտել միայն 86-ը։ Այդպիսի ընտրության դեպքում դժվար էր խուսափել սխալներից։ Եթե մենք հանգամանորեն կանգ ենք առնում դրանց վրա, ապա միայն այն պատճառով, որ մտադիր ենք օգնելու կազմողներին, որոնք, հավանորեն, չեն սահմանափակվի այդ հիանալի ժողովածուի առաջին հրատարակությամբ և կշարունակեն աշխատել նրա վրա։*

*Եկեք թերթենք ժողովածուի էջերը և առաջին հերթին կանգ առնենք այն պոետների անուններ վրա որոնց ստեղծագործությունները, մեր կարծիքով, պետք է որ ավելի լայնորեն ներկայացվեին։*

*Վալերի Բրյուսով... Բանալով հայ ժողովրդի այդ մեծ բարեկամի բանաստեղծությունները պարունակող էջերը, ակամայից հիշում ես հենց իր՝ բանաստեղծի խոսքերը ուղղված իր բանաստեղծությունների ժողովածուն կազմողներին։ Վալերի Յակովլևիչի ցանկությունն էր «...ըստ հնարավորին օրինակներով ներկայացնել իմ գործունեության բոլոր տարբեր շրջանները որպես բանաստեղծի, ձգտելով, իհարկե, դրանցից տալ միայն առավել բնորոշ ու հաջող գործերը»։ Արդյոք կատարվա՞ծ է պոետի այդ ցանկությունը։*

*Վ. Բրյուսովը ներկայացված է յոթ բանաստեղծություններով։ Դրանց մեջ են Բրյուսովի «ներբողական» ժանրի լավագույն և ամեն Հայաստանին բանաբնորոշ գործերից մեկը՝ Հայաստանին բանաստեղծությունը, այնուհետև Ռուսական ռևոլյուցիային բանաստեղծությունը՝ սոցիալիստական ռևոլյուցիային նվիրված քաղաքական լիրիկայի ցիկլից, Լենին բանաստեղծությունը, որը հանճարեղ առաջնորդի կերպարը պոեզիայի մեջ մարմնավորելու ամենավաղ փորձերից մեկն է։ ժողովածուի մեջ զետեղված յոթ բանաստեղծություններից չորսը նվիրված են Հայաստանին և նրա պանծալի որդիներ Հովհ. Թումանյանին ու Հովհ. Հովհաննիսյանին։ Դա կրկին անգամ*

1 «Ընտիր էջեր ռուս սովետական պոեզիայի», *խմբագրությամբ Գ. Բորյանի, Գ. Էմինի, Խ. Հրաչյանի, Հայպետհրատ, Երևան, 1963, 543 էջ։*

նակ է, որ ժողովածուում չի զետեղվել Կիռովը մեզ նետ է պոեմը, որն անշուշտ, երևույթ է ոչ միայն Տիխոնովի ստեղծագործության, այլև ամբողջ սովետական գրականության համար։ Կիռովը մեզ հետ է ռևոլյուցիոն հերոսապոեմը Ն. Տիխոնովի պատերազմական տարիների պոեզիայի գագաթնակետն է։ 1941 թվականի նոյեմբերի վերջերին այն ռադիոյով հաղորդվեց պաշարված Լենինգրադից։ Ահա թե ինչ է գրել այդ մասին Ալեքսեյ Տոլստոյը. «Այդ հիասքանչ պոեմն ունի խստաշունչ և վսեմ ներշնչում, ինչպես խստաշունչ և բարոյապես վսեմ է Լենինի մեծ քաղաքը...»։

Ընդհանրապես պետք է նշել, որ Հայրենական պատերազմի ժամանակաշրջանի պոեզիան կարելի էր ավելի լայնորեն ներկայացնել։ Գրքում թեկուզ և համառոտաբար տեղ չեն գտել Վերա Ինբերի Պուլկովյան միջօրեականը (1941—1943), Ա. Պրոկոֆևի՝ Ռուսաստան (1943—1944) պոեմները, որոնք իրենց ժամանակին գրական մեծ իրադարձություններ էին։ Եվ մի՞թե կարելի էր ժողովածուից դուրս թողնել Վ. Լեբեդև-Կումաչի Սրբազան պատերազմը բանաստեղծությունը, որը երգի վերածած հնչում էր որպես ազատագրական պայքարի հիմն։

Այդ ժամանակաշրջանի ամենահանրահայտ գործերից են նաև Պ. Անտոկոլսկու Որդի պոեմը, որից ընտրած հատվածը շատ քիչ բան է ասում ընթերցողներին։ Պոեմի ուժն ամենից առաջ այն է, որ պոետը «իր» և «ուրիշի» վիշտը համակցում է և իրեն իրավունք չի վերապահում «ինչ-որ առանձնահատուկ, անջատ վշտի»։ Նրա անձնական վիշտը միաձուլվում է ժողովրդի ողբերգությանը և նա կյանքի բարձրագույն ճշմարտությունը գտնում է պայքարի մեջ, հանուն իր և ուրիշների խաղաղ ու լուսավոր ապագայի։ Ցանկալի կլիներ ժողովածուում զետեղել բացառիկ ներշնչանքով կերտված այն պատկերը, որտեղ սովետական մարտիկի հայր-բանաստեղծը խստագույն հաշիվ է ներկայացնում ֆաշիստ հորը, որն իր որդուն դաստիարակել է որպես բռնադատիչ ու կողոպտիչ։

Չի կարելի ասել, թե ժողովածուում իր արժանի արտացոլումն է գտել նաև հետպատերազմյան առաջին տարիների պոեզիան։ Գրքում քիչ են ռուս-սովետական պոետների այն գործերը, որոնք պատկերել են հաղթանակի բերկրանքը և փորձել են բացահայտել նոր ժամանակի գծերը։ Այդ գործերից հատկապես աչքի են ընկնում Միխայիլ Իսակովսկու հանրահայտ Թռչում են չվող թռչունները բանաստեղծությունը։ Նիկոլայ Գրիբաչյովի Գարունը «Հաղթանակում» (1948 թ.) պոեմը։ Հետպատերազմյան առաջին տարիների նկարագիրը շատ լավ է տրված Ալեքսեյ Նեդոգոնովի՝ Դրոշակը գյուղսովետի վրա տաղանդավոր պոեմում։

Ժողովածուի լուրջ թերություններից մեկն էլ այն է, որ այն լիովին չի համապատասխանում առաջադրված խնդրին։ Եթե գրքի վերնագիրն է Ընտիր էջեր, ապա մենք իրավունք ունեինք սպասելու, որ ժողովածուի մեջ կընդգրկվեն միայն ռուսական սովետական պոեզիայի զարգացման համար շատ բան արած և մեծ ժողովրդայնություն վայելող հեղինակների ստեղծագործությունները։ Մինչդեռ ժողովածուում կան նաև այնպիսի պոետներ, որոնք ինչպես ասում են, «ծանոթությամբ» են տեղ գտել այնտեղ։ Մենք նկատի ունենք այն մի քանի բանաստեղծ-թարգմանիչներին, որոնց գործերի հրապարակումը ժողովածուում ցանկալի կլիներ, եթե մոռացության չտրվեին ռուս սովետական պոեզիայի համար մի շարք կարևոր անունները։ Ցավալի է, որ ժողովածուում չեն ներկայացվել պոետներ Եգոր Իսաևը, Բորիս Ռուչյովը, Բելլա Ախմադուլինան և, իհարկե, Վասիլի Ֆեոդորովը։ Այժմ դժվար է սովետական պոեզիան պատկերացնել առանց Վ. Ֆեոդորովի լիարյուն և հարուստ լիրիկայի։

Թեպետև որոշ պոետների գործեր բավական լայնորեն են ներկայացված գրքում, այնուամենայնիվ, պետք է նշել, որ անփույթ ընտրության հետևանքով նրանց որոշ բանաստեղծությունների բացակայությունը խիստ զգալի է։ Այս վերաբերում է, առաջին հերթին, միջին սերնդի պոետներին՝ Ալեքսանդր Ժարովին, Իոսիֆ Ուտկինին, Միխայիլ Սվետլովին, Միխայիլ Իսակովսկուն, Լեբեդև Կումաչին, Եվգենի Դոլմատովսկուն։ Այսպես, օրինակ, Իոսիֆ Ուտկինի գործերն ընտրելիս չէր կարելի բաց թողնել նրա՝ Տղային վերցրին Իրկուտսկի մոտակայքում լավագույն բանաստեղծությունը։ Իսկ որտե՞ղ է Միխայիլ Սվետլովի Երգ Կախովկայի մասին՝ սովետական մարդկանց ամենասիրված երգերից մեկը։ Շատ աղքատ ու անհետաքրքրական է ներկայացված մեր լավագույն երգերի հեղինակ, պոետ Վ. Լեբեդև-Կումաչը։ Կազմողները նույն կերպ են վարվել նաև Ալեքսանդր Ժարովի և Եվգենի Դոլմատովսկու հետ։

Թերթելով ժողովածուի վերջին էջերը, մենք հասկանալի հետաքրքրությամբ կանգ ենք առնում մեր երիտասարդ և տաղանդավոր բանաստեղծների անունների վրա։ Պետք է ցավել, որ ժողովածուն արտադրության է հանձնվել 1962 թվականի սեպտեմբերին և բնականաբար, այնտեղ չեն զետեղվել մեր երիտասարդ պոետների ավելի հասուն գործերը. ինչպես, օրինակ, Ե. Եվտուշենկոյի՝ Ստալինի ժառանգները, Վախերը, Ռ. Ռոժդեստվենսկու՝ Ռեկվիեմը, Ա. Վոզնեսենսկու՝ Լոնժյումո պոեմը։ Բայց և այնպես այդ բանաստեղծների ստեղծագործությունները կարելի էր ժողովածուում ներկայացնել ավելի հստակ կերպով։ Օրինակ, Ե. Եվտուշենկոյից ժողովածուում զետեղված են վեց բանաստեղծություն, բայց դրանց մեջ չկա արտասահմանյան թեմաներով ոչ մի գործ։ Հիշենք պոետի փարիզյան, լոնդոնյան, կուբայական և այլ բանաստեղծությունները։

Կցանկանայինք կազմողների ուշադրությունը հրավիրել նաև այն կարևոր հարցի վրա, թե որքանով է հաջողվել արտացոլել ՍՄԿՊ XX և XXII համագումարներին հաջորդած պոետական շրջանը, որը շրջադարձային էր մեր գրականության համար։ Ինչպես հայտնի է, անհատի պաշտամունքի տարիներին պոեզիայի մեջ ստեղծվել էին հռետորական դեկլամացիոն ստանդարտներ։ 50-ական թվականների առաջին կեսին, Ստալինի անձի պաշտամունքի մերկացումից հետո, խիստ աճեց ինտիմ լիրիկայի կշիռը, որը բավականին լայնորեն արտացոլված է ժողովածուում։ Սակայն պարտիայի XXII համագումարից հետո կրկին բուռն թափով ծավալվում է հրապարակախոսական պոեզիան։ Հենց այդ ժամանակ են գրվել Ա. Տվարդովսկու Հեռաստանից հեռաստան պոեմի լավագույն գլուխները։ Այդ ժամանակից սկսած բուռն, քաղաքացիական ներշնչանքով համակվեցին. Վ. Լուգովսկոյի, Ն. Զաբոլոցկու, Լ. Մարտինովի, Յա. Սմելյակովի, Վ. Ֆյոդորովի և շատ ուրիշ պոետների ստեղծագործությունները։

Խորհել կյանքի մասին, գրել միայն գլխավորի վերաբերյալ, պայքարել չարիքի դեմ՝ այս գաղափարներով են տոգորված ժամանակակից պոետների բազմաթիվ գործեր։ Դժբախտաբար, ժողովածուն հնարավորություն չի տալիս լիովին զգալու հրապարակախոսական պոեզիայի ուժը։

Մեր հիշատակած թերություններից բացի ժողովածուում կան նաև մի շարք գրական-պատմական, ինչպես նաև այլ կարգի սխալներ, որոնք կազմողների և խմբագիրների անուշադրության հետևանք են։

Այս դեպքում մենք նպատակ չենք դրել վերլուծելու բանաստեղծությունների թարգմանությունը։ Այդ մասին արդեն գրվել է մեր մամուլում (տե՛ս Գրական թերթ, 1964 թ. փետրվարի 21, Ա. Վարդանյանի հոդվածը՝ Մի քանի դիտողություններ Ընտիր էջեր ռուս սովետական պոեզիայի անթոլոգիայի վերաբերյալ»)։ Սակայն պետք է շեշտել, որ թարգմանությունները մեծ մասամբ կատարված են վարպետորեն։ Կան այնպիսի թարգմանություններ, որոնք ստիպում են մոռանալ բնագիրը, այնքան նրբորեն են հաղորդում բանաստեղծության ոգին։ Ավելորդ չի լինի նշել, որ ավելի խոհուն և լուրջ վերաբերմունք պետք է ցուցաբերեին Վ. Կազինի, Մ. Ցվետաևայի, Մ. Սվետլովի, Ի. Սելվինսկու, Ս. Օրբադովիչի, Պ. Վասիլևի, Դ. Կեդրինի, Ե. Դոլմատովսկու, Ն. Ռիլենկովի, Լ. Օշանինի, Մ. Մատուսովսկու, Մ. Լուկոնինի, Մ. Դուդինի, Ա. Մարկովի գործերի թարգմանիչ-բանաստեղծները։

Ժողովածուում արժանի տեղ են գրավում պրոլետարական պոետների գործերը։ Բայց ժողովածու կազմողները հաշվի չեն առել մի հանգամանք։ Մեր ընթերցողների կրտսեր և անգամ միջին սերունդը շատ հեռավոր պատկերացում ունի պրոլետարական պոետների մասին։ Բնական է, որ այս դեպքում անհրաժեշտ էր կենսագրական համառոտ տեղեկանք, որն ընթերցողին կօգներ ավելի խոր ընկալելու 20-ական թվականների ժողովրդական պրոլետարական պոետներ՝ Նիկոլայ Պոլետաևի, Վասիլի Ալեքսանդրովսկու, Վլադիմիր Կիրիլովի, Վասիլի Կազինի, Սերգեյ Օբրադովիչի և մյուսների ստեղծագործությունները։ Առաջին հայացքից կարող է աննշան մանրուք թվալ բանաստեղծությունների թվագրության բացակայությունը։ Մինչդեռ այդ ամենևին էլ մանրուք չէ։ Իմանալով թվագրությունը, ընթերցողը հնարավորություն կունենար բանաստեղծությունն արժեքավորել ժամանակի տեսանկյունից և հետևել հեղինակի ստեղծագործական աճին։

Ժողովածուում տեղ են գտել 86 բանաստեղծների գործեր։ Արդյոք սա շատ չէ՞ առաջին ժողովածուի համար։ Իհարկե, ժողովածուն ռուս սովետական պոետների հետ ծանոթանալու միակ միջոցը չէ։ Մեզանում շատ պոետների գործեր հրատարակվում են առանձին։ Բայց և այնպես, մի քանի անուն կրճատելով կարելի կլիներ ավելի բարելավել ժողովածուի որակը։

Չնայած վերոհիշյալ թերություններին, Ընտիր էջեր ռուս-սովետական պոեզիայի ժողովածուն բավական հետաքրքրական և արժեքավոր նախաձեռնություն է։ Մնում է ցավել, որ այդ գիրքը դեռևս վատ է պրոպագանդվում։ Ռեսպուբլիկական մամուլը մինչև օրս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրել նրան։ Հարկավոր է անել ամեն ինչ, որպեսզի ժողովածուն լայնորեն տարածվի ընթերցողների հոծ շրջաններում և ըստ արժանվույն գնահատվի նրանց կողմից։

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԼԵՀԱՍՏԱՆԻ ՔՍԱՆ ՏԱՐԻՆ

● Ժողովրդական իշխանության տարիներին Լեհաստանի էկոնոմիկան զարգացել է ինդուստրացման ուղիով: Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկումը 1963 թվականին 1938 թվականի մակարդակը գերազանցել է մոտ 9 անգամ: 1946—1963 թվականներին արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը կազմել է 15,8 տոկոս: Աշխարհում չկա որևէ կապիտալիստական երկիր, որի արդյունաբերությունը զարգանար այդպիսի տեմպերով:

● Մեկ մարդուն ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Լեհաստանը մոտեցել է Իտալիայի մակարդակին (1962 թ.՝ 1297 կիլովատ-ժամ), քարածխի հանույթով գերազանցել է ԳՖՌ-ի և Անգլիայի մակարդակը, երկաթի՝ Իտալիայի մակարդակը (1962 թ.՝ 190 կիլոգրամ), ցեմենտի արտադրությամբ հասել է համարյա Անգլիայի մակարդակին (1963 թ.՝ 263 կիլոգրամ):

● Գյուղատնտեսության համախառն արտադրանքով ժողովրդական Լեհաստանը 1954 թվականին հասել էր 1934—1938 թվականների միջին ծավալին: Նախապատերազմյանի համեմատությամբ 1963 թվականին 100 հեկտար վարելահողին ընկնող անասունների գլխաքանակը գերազանցվել է—խոշոր եղջերավոր անասուններինը՝ 18, ոչխարներինը՝ 14 տոկոսով, խոզերինը՝ մոտ երկու անգամ:

● Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 1950—1955 թվականների 12,7 ցենտներից 1961—1963 թվականներին հեկտարից միջին հաշվով հասել է 17,2 ցենտների:

● Սոցիալիստական Լեհաստանում զգալի չափով աճել է ազգային եկամուտը: 1963 թվականին այն երեք անգամ գերազանցում էր նախապատերազմյան մակարդակը: Բարձրացել է ժողովրդի բարեկեցությունը: Եթե 1933—1937 թվականներին ամեն մի բնակիչ տարեկան սպառում էր 19,6 կիլոգրամ միս և կենդանական յուղ, 9,6 կիլոգրամ շաքար, 9,5 մետր բամբակյա գործվածքներ, ապա 1962 թվականին սպառում էր 52,9 կիլոգրամ միս և կենդանական յուղ, 30,2 կիլոգրամ շաքար և 18,9 մետր բամբակյա գործվածքներ:

● Վիթխարի հաջողություններ են ձեռք բերվել լուսավորության, առողջապահության բնագավառում: Օրինակ. 1931 թվականին յուրաքանչյուր տասը դպրոցահասակ երեխաներից մեկը չէր սովորում, իսկ գյուղական երեխաների 73 տոկոսը սովորում էր միայն չորսդասյա դպրոցներում: Տասը տարեկանից բարձր ավելի քան հինգ ու կես միլիոն բնակիչներ անգրագետ էին այն ժամանակ, երբ յուրաքանչյուր յոթերորդ ուսուցիչն անգործ էր: Այժմ դպրոցահասակ բոլոր երեխաները սովորում են: Ժողովրդական իշխանության տարիներին միջնակարգ կրթություն են ստացել 2 միլիոն 645 հազար, իսկ բարձրագույն՝ 327,2 հազար մարդ:


| ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ | |
|---|---|
| ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.: | Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ<br>Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ<br>Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24<br>*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24* |

ՎՖ 05249 Պատվեր 2217 Տիրաժ 8500 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ. մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 26 VII 1964 թ.

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյանի փ. № 51:*




## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ղեկավարի հեղինակության մասին: *Մ. Քաղհրատ, 1964:*
*Այս ժողովածուում զետեղված են Վ. Ի. Լենինի հոդվածները, ճառերը, նամակներն ու ասույթները կոմպարտիայի ղեկավարների հեղինակության, կոմունիստական նոր հասարակության կառուցման և ռևոլյուցիոն պայքարում նրանց դերի մասին:*

*Լ. Ս. ԲԼՅԱԽՄԱՆ*— Աշխատանքի արտադրողականությունը և վարձատրությունը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում: *Լ. Լենհրատ, 1964, 356 էջ:*
*Շարադրված են կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականության և վարձատրության փոխհարաբերությունների հիմնական հարցերը: Արծարծված են նաև բանավեճային բնույթի մի քանի հարցեր՝ կապված աշխատանքի արտադրողականության բարձրացման և ըստ աշխատանքի բաշխման տնտեսական օրենքի գործադրության հետ:*

Կոմունիստական գիտակցության դաստիարակությունը: *Մ., «Միտք» հրատ. 1964:*
*ՍՄԿՊ Կենտկոմին կից Հասարակական գիտությունների ակադեմիայի հրատարակած այս ժողովածուում լուսաբանվում և ընհանրացվում են պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի փորձը, կոմունիզմի ակտիվ և գիտակից կառուցողների աշխատանքային դաստիարակությունը, մարդկանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը և հին մնացուկների վերացումը նրանց գիտակցությունից ու վարքից, աշխատավորության դաստիարակումը սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով:*

Ի. Վ. ԼԵԽԻՆ — Համառոտ քաղաքական բառարան — *Մ. Քաղհրատ, 1964, 352 էջ:*
*Պարունակում է մասսայական գործածության մեջ եղած հասարակական-քաղաքական բառերի համառոտ բացատրությունները:*

Հայ նոր գրականության պատմություն: *Երրորդ հատոր: Ե., ԳԱ հրատ. 1964, 758 էջ:*
*Հինգ հատորանոց ծավալուն աշխատության այս հատորն ընդգրկում է հայ գրականության XIX դարի 70—80-ական թվականների ժամանակաշրջանը: Հեղինակային կոլեկտիվը գրել է այդ ժամանակվա հայ հասարակական, կուլտուրական և գրական կյանքի, Գրիգոր Արծրունու, Մաթևոս Մամուրյանի, Գաբրիել Սունդուկյանի, Պերճ Պռոշյանի, Ղազարոս Աղայանի, Րաֆֆու, Հակոբ Պարոնյանի, Ծերենցի, Սրբուհի Տյուսաբի, Գարեգին Սրվանձտյանի և այլոց կյանքի, գրական ու հրապարակախոսական գործունեության մասին:*

*Բ. Ն. ԱՌԱՔԵԼՅԱՆ*—Քաղաքները և արհեստները Հայաստանում IX—XIII դարերում: *2-րդ գիրք: Ե., ԳԱ հրատ., 1964 թ., 320 էջ, 52 տախտակ:*
*Դոկտոր-պրոֆեսոր Բ. Առաքելյանն ուսումնասիրել է Հայաստանի ապրանքային արտադրության, առևտրի և դրամական շրջանառության զարգացումը IX—XIII դարերում, քաղաքների հետագա վերելքը XII—XIII դարի առաջին կեսում: Հեղինակը վերլուծում է Հայաստանի քաղաքների ներքին կյանքի, սոցիալ-տնտեսական կառուցվածքի, արհեստագործական եղբայրությունների (համքարությունների), քաղաքային վարչությունների և ինքնավարությունների առաջացման, բնակչության կեղեքվածության, սոցիալական պայքարի սրման, ինչպես և մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանի քաղաքների անկման և այլ հարցերը:*

ԳԻՆԸ 25 Կ. ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԲՈՒԺՈՒՄ ՁԱՅՆՈՎ

Տոկիոյի կենտրոնական հիվանդանոցի բժիշկները աճող կարճատեսությունը բուժում են ձայնի օգնությամբ։ Աչքի խրուսակի վրա ազդում են 12 հազար հերց հաճախականության ձայնով։ Տատանումների օգնությամբ առաջացած տաքությունը և աչքի ցանցաթաղանթի վիբրացիան արագացնում են արյան շրջանառությունը և ակտիվացնում նյութափոխանակությունը ցանցաթաղանթում։ Ձայնի ներգործությունը բարենպաստ է անդրադառնում նաև աչքի խրուսակի մյուս ներվային վերջավորությունների վրա։

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԹԱՆԿԱՐԺԵՔ ՔԱՐԵՐ ԿԱՎԱՀՈՂԻՑ

Նոր տեխնոլոգիայի օգնությամբ հաջողվում է կավահողից ստանալ թանկարժեք քարեր, օրինակ՝ կապույտ շափյուղներ և կարմիր սուտակներ։ Արհեստական թանկարժեք քարերի որակը բնականից ցածր չէ։ Փորձնական նմուշները օգտագործվում են ժամացույցների արտադրության մեջ։ Այս տարի կսկսվի այդ քարերի գործարանային թողարկումը (Հունգարիա)։

## ՈՒԼՏՐԱՁԱՅՆԸ ԿԱՀՈՒՅՔԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Փայտանյութի մեխանիկական մշակման Ուկրաինայի գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցներն ստեղծել են օրիգինալ ուլտրաձայնային վիբրատոր՝ լաքը լուծելու համար։ Այն օգտագործելու դեպքում 50—70 տոկոսով պակաս են լուծիչ ծախսում, քան սովորաբար։ Իսկ ինքը լաքը կահույքի մակերեսին չորանում է խիստ արագ։ Առաջին այդպիսի վիբրատորը մոնտաժվում է Ժիտոմիրի կահույքի կոմբինատում։

Ինստիտուտի գիտաշխատողները ստեղծել են ուլտրաձայնային սարք՝ փայտաշինվածքները սոսնձելու համար։ Տեխնոլոգիական օպերացիան կատարվում է 5—60 վայրկյանի ընթացքում։ Դա շատ ավելի արագ է բարձր հաճախականության հոսանքով սոսնձելու արգի մեթոդից։

## ՖԻԲՐՈՊԼԱՍՏ

Արդյունաբերական շինարարության Դոնեցկի նախագծային և գիտահետազոտական ինստիտուտում ստեղծել են նոր ծածկանյութ՝ ֆիբրոպլաստ։ Այդ նոր նյութը ստացվում է բիտումով ներծծված մամլած խարամից 6 միլիմետր հաստությամբ թերթերի ձևով։ Այն չի վախենում խոնավությունից, թթուններից և ալկալիներից։ Այն կարելի է օգտագործել որպես հիդրոմեկուսիչ ոռոգման ջրանցքները երեսպատելու համար։ Դոնբասում և Տուլայում կառուցվում են մամլող ագրեգատներ՝ ֆիբրոպլաստի արտադրության **համար։**

## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՀԱՅԵԼԻ

Անգլիայում ստեղծել են նոր տեսակի հայելի, որի վրա արտաշնչելիս չի քրտնում, բացի դրանից այն կարելի է թղթի պես ճմրթել և այնուհետև ուղղել ու նորից նայել։ Այդ հայելին շատ բարակ պլաստիկ թիթեղ է՝ ծածկված ալյումինով։

## ՊՈԼԻՎԻՆԻԼԱՅԻՆ ԾԱԾԿՈՑՈՎ ՄԵՏԱՂ

Թիթեղագլանման գործարանում սկսել են թողարկել պողպատե և ալյումինե թերթեր պոլիվինիլային ծածկույթով։ Այդպիսի թերթերը կարելի է օգտագործել հավաքովի տների, հավաքովի ցուցահանդեսային դահլիճների, փողոցային կրպակների և այլն պատերն ու առաստաղները երեսպատելու համար (Չեխոսլովակիա)։